ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1958 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## СОДЕРЖАНИЕ



### Письма и корреспонденции



# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԱՆՊԱՐՏԵԼԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

*Սոցիալիզմի և խաղաղության հզոր երկիրը՝ Սովետական Միությունը, մեկ աստիճան ևս բարձրացավ։ Մեր ժողովուրդը բերկրանքով նշեց այն վիթխարի հաջողությունները, որոնք նա ձեռք է բերել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձին։ Սովետական հերոսական բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ինտելիգենցիան ընթանում են լենինյան ուղիով։ Նրանց ոգեշնչում, կոմունիստական շինարարության նորանոր հաղթանակների է տանում սովետական ժողովրդի՝ մարտերում կոփված ավանգարդը՝ Լենինի մեծ պարտիան։*

*Միլիոնների ստեղծարար աշխատանքով, սխրագործություններով ու խիզախումներով է նշանավորված մեր լայնածավալ Հայրենիքի յուրաքանչյուր օրը։ Սովետական մարդկանց՝ կոմունիզմ կառուցողների կամքով, Հյուսիսի տայգաներից մինչև Արաքսի ափերը, Կարպատյան նախալեռներից մինչև Հեռավոր Արևելք, որպես կոմունիզմի անմար փարոսներ վառվում են ինդուստրիալ նոր կենտրոնների պայծառ լույսերը, երկինք են խոյանում նոր դոմնաների ու մարտենյան հնոցների հրացոլքերը, տասնյակ հազարավոր կիլոմետրերով երկիրը ցանցում են բարձր լարման հաղորդալարերը, իրար հետևից շարք են մտնում վիթխարի նոր հիդրո-ջերմա-էլեկտրակայաններ։ Պարտիայի կոչով սովետական մարդիկ հերկում են անծայրածիր տափաստանների խոպանը, միլիոնավոր փթերով հացահատիկ հոսում է դեպի պետական շտեմարանները։ Գրեթե ամեն օր ռեսպուբլիկաների, մարզերի և երկրամասերի կոլտնտեսականներն ու գյուղատնտեսության աշխատողները զեկուցում են պարտիային ու կառավարությանը հացահատիկի, գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու և պետությանը վաճառելու համար իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու և գերակատարելու մասին։*

*Իսկ ինչպիսի՜ վերելք են ապրում սովետական գիտությունն ու տեխնիկան, սոցիալիստական կուլտուրան։ Երկրի սովետական արհեստական արբանյակներն առաջինը ուղի բացեցին դեպի տիեզերական անհուն տարածությունները և ցույց տվին, որ ՍՍՌՄ-ը ընթանում է համաշխարհային գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդում։*

*Սովետական ժողովուրդը Մեծ Հոկտեմբերի բերկրալի տոնը նշեց իր կյանքի նշանակալից օրերին, երբ ամբողջ երկիրը պատրաստվում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարին։*

*«Այդ համագումարը,— ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— ամբողջ աշխարհի առջև կցուցադրի սոցիալիզմի պատմական հաղթանակները, սովետական կարգերի մեծ առավելությունները կապիտալիստական կարգերի հանդեպ։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի վիթխարի թվերը առաջ կբերեն բոլոր աշխատավորների օրինական հպարտությունը սո-*

վետական կարգերի նկատմամբ և նոր հաղթանակների կոգեշնչեն ժողովրդին»։

Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան, որը ցնցեց աշխարհը, մարդկության պատմության նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթանակի դարագլխի սկիզբը դրեց։ Մեծ Հոկտեմբերից մինչև կոմունիզմ կառուցողների պատմական համագումարը — ահա այն հոյակապ ուղին, որ անցել է Սովետական Միությունն իր գոյության 41 տարիների ընթացքում։

1917 թվականի հոկտեմբերին մեր երկրի հերոսական բանվոր դասակարգը, դաշնակցած աշխատավոր գյուղացիության հետ, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեց կապիտալիստների և կալվածատերերի տիրապետությունը, հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ոչնչացրեց բուրժուական պետական մեքենան ու ստեղծեց բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը — Սովետների ռեսպուբլիկան։

Քաղաքացիական կռիվների և իմպերիալիստական ինտերվենցիայի ահեղ տարիներին, աներևակայելի դժվարին պայմաններում, մեր երկրի աշխատավորները անլուր զրկանքների ու զոհողությունների, իրենց լավագույն զավակների արյան գնով պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները, ամրապնդեցին Սովետների ռեսպուբլիկան։

Բանվորների և գյուղացիների պետությունը կապիտալիստներից ու կալվածատերերից որպես ժառանգություն ստացավ տնտեսապես հետամնաց ու ավերված մի երկիր, որը արդյունաբերական արտադրանքի ծավալով գրավում էր հինգերորդ տեղը աշխարհում, ընդ որում իմպերիալիստական պատերազմի և քաղաքացիական կռիվների հետևանքով արդյունաբերական արտադրանքի ծավալը, նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ, նվազել էր յոթ անգամ։ Քայքայումը հսկայական չափերի էր հասել գյուղատնտեսության մեջ, որը խարսխված էր մանր ապրանքային տնտեսության վրա։

Երկրի վիճակը և միջազգային իրադրությունը հրամայաբար պահանջում էին գործադրել բոլոր ջանքերը ո՛չ միայն վերականգնելու Սովետական ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը և հասցնելու հին Ռուսաստանի աղքատիկ մակարդակին։ Բանվոր դասակարգը դրա համար չէր կատարել իր ռևոլյուցիան։ Անհրաժեշտ էր փոխել հասարակության տնտեսական հիմքերը, անհապաղ կառուցել սոցիալիստական էկոնոմիկայի ամրակուռ հիմքը և հաղթահարել երկրի տնտեսական հետամնացությունը, որպեսզի Սովետների ռեսպուբլիկան անվերադարձ կերպով հզոր ու լիառատ դառնար։ Մեծ Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիզմի նյութական հիմքը կարող է լինել միայն ծանր ինդուստրիան, որը կապահովի ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը, կապահովի թեթև արդյունաբերության և գյուղատնտեսության այնպիսի զարգացում, որ լիովին կբավարարի բնակչության հարաճուն պահանջմունքները։

Կոմունիստական պարտիան առաջ քաշեց և հաջողությամբ լուծեց այդ պատմական դժվարին խնդիրը։ Լենինը մեր պարտիային ու բոլոր աշխատավորներին զինեց սոցիալիզմի կառուցման հանճարեղ պլանով։ Լենինյան պլանով նախատեսվում էր ծանր արդյունաբերության ստեղծում, գյուղատնտեսության կոլեկտիվացում, կուլտուրական ռևոլյուցիայի իրագործում։



Դիմելով համաշխարհային-պատմական այդ խնդրի լուծմանը, պարտիան խորապես հավատում էր աշխատավոր մասսաներին՝ պատմության իսկական կերտողներին։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան արթնացրել, պատմական ստեղծագործության էր կոչել նախկինում տրորված, հարստահարված ու ճնշված մարդկային հսկայական զանգվածների, որոնք սովետական դեմոկրատիայի պայմաններում դրսևորեցին իրենց ստեղծարար ուժերը, իրենց շարքերից առաջ քաշեցին իսկական կազմակերպիչներ ու ղեկավարներ, հանդես բերեցին նախաձեռնություն, տոկունություն ու վճռականություն և դիմելով մեծամեծ զոհողությունների՝ հաղթահարեցին ամեն մի արգելք իրենց առաջընթացի մեծ ճանապարհին։

Պարտիան ղեկավարվելով սոցիալիզմի կառուցման լենինյան պլանով, վճռականորեն կիրառեց երկրի ինդուստրացման կուրսը։ Եթե ժամանակակից արդյունաբերություն ստեղծելու համար կապիտալիստական երկրներին անհրաժեշտ եղավ 100—150 տարի, ապա սովետական ժողովուրդն այդ խընդիրն իրագործեց 15—20 տարում։ Պատմական այդ խնդրի լուծումը այդպիսի կարճ ժամանակամիջոցում հաջողվեց այն բանի շնորհիվ, որ մեր երկրի աշխատավորները հենվում էին այն մեծ առավելությունների վրա, որ ունի տնտեսության սոցիալիստական սիստեմը։

Երբ խոսք է լինում սոցիալիստական շինարարության ասպարեզում ՍՍՌ Միության մեծ նվաճումների մասին, չպետք է մոռանալ, որ Սովետական պետությունն իր գոյության 41 տարուց ոչ պակաս քան 18 տարի. ստիպված է եղել պատերազմական վիճակում լինել, վերականգնել ավերված տնտեսությունը։ Ուրեմն մեր վիթխարի նվաճումները փաստորեն արդյունք են սովետական ժողովրդի 22—23 տարվա համառ, հերոսական աշխատանքի։ Սրանք այնպիսի փաստեր են, որոնք մարդկությանը ակնառու կերպով համոզում են, որ տնտեսական խաղաղ մրցության մեջ առաջնությունը պատկանում է ոչ թե զառամյալ կապիտալիզմին, այլ՝ սոցիալիզմին, կոմունիզմին։ Կապիտալիստական աշխարհը երբեք չի տեսել տնտեսական զարգացման այնպիսի տեմպեր, որ հատուկ են սոցիալիստական կարգերին։ Անցած չորս տասնամյակում արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը ՍՍՌՄ-ում կազմել է 10,1 տոկոս, այն ժամանակ, երբ կապիտալիզմի ամենազարգացած երկրում՝ ԱՄՆ-ում, կազմել է միայն 3,2 տոկոս, Անգլիայում՝ 1,9 տոկոս։ Տնտեսական զարգացման տեմպերի այս գերազանցությունը հնարավորություն տվեց մեր երկրին վճռական հաղթանակ տանել կապիտալիզմի նկատմամբ և արդյունաբերության արտադրանքի ծավալով գրավել երկրորդ տեղը աշխարհում։ Սովետական Միությունը ետ թողեց Ամերիկայի Միացյալ Նահանգներին երկաթաքարի, ածխի, նավթի, չուգունի, պողպատի, ցեմենտի, բրդե գործվածքների արտադրության ո՛չ միայն աճման տեմպերով, այլև արտադրանքի այդ տեսակների ամենամյա բացարձակ աճմամբ։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ, գազի հանույթով և կոշիկի արտադրությամբ ՍՍՌՄ-ն ԱՄՆ-ից անցել է աճման տեմպերով, բայց նրան դեռ զիջում է արտադրանքի այդ տեսակների ամենամյա բացարձակ աճի տեսակետից։

Մենք առաջ ենք շարժվում շատ ավելի արագ, քան կապիտալիստական երկրները։ Այս տարի պողպատի արտադրությունը ՍՍՌՄ-ում կհասնի մոտ 55 միլիոն տոննայի, իսկ գլանվածքինը՝ 41,7 միլիոն տոննայի։ Մեր երկրում մոտավորապես այդքան պողպատ և գլանվածք է արտադրվել

Սովետական իշխանության գոյության առաջին տասնյոթ տարում: Այս տարի մեզ մոտ կարդյունահանվի 489,3 միլիոն տոննա ածուխ, այսինքն՝ այնքան, որքան Սովետական պետության առաջին տասնվեց տարվա ընթացքում: Նավթի արդյունահանությունն այս տարի կհասնի 113 միլիոն տոննայի, գերազանցելով նավթի այն քանակը, որ ստացել է մեր պետությունը իր գոյության առաջին տասներեք տարում:

Կապիտալիստական երկրների հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ կարևոր նշանակություն ունի ժամանակի գործոնը: Ելնելով դրանից՝ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասել է, որ մեզ հարկավոր է շահել 10—15 տարի: ՍՄԿՊ առաջիկա XXI համագումարը, որը քննարկելու է Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, մեր երկրի աշխատավորներին կզինի կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրով, կնշի այն վիթխարի խնդիրները, որոնց լուծման համար պայքարելու է սովետական ժողովուրդը առաջիկա յոթնամյակում:

Երկրի ինդուստրացման հետ միաժամանակ ու նրա հիման վրա, պարտիան նախապատրաստեց և անցկացրեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը: Պարտիան համոզեց միլիոնավոր աշխատավոր գյուղացիների, որ աղքատությունից դուրս գալու, կուլակային շահագործումից ազատվելու միակ ելքը՝ փոշիացած գյուղացիական տնտեսությունների փոխադրումն է սոցիալիզմի ռելսերի վրա: Աշխատավոր գյուղացիները հետևեցին պարտիայի կոչին: Կարճ ժամանակում գյուղացիները կամավորության սկզբունքի հիման վրա միավորվեցին կոլեկտիվ տնտեսություններում: Կոլտնտեսային կարգերը ո՛չ միայն վերափոխեցին գյուղատնտեսական արտադրության բնույթը, վերազինեցին այն առաջավոր տեխնիկայով, այլև խոր կերպով հեղաշրջեցին մանր հողակտորներին կառչած գյուղացու մասնավոր սեփականատիրական հոգեբանությունը:

Սովետական ժողովուրդը հաղթահարելով մեծ դժվարություններ՝ կառուցել է նոր, սոցիալիստական հասարակարգ, ստեղծել է սոցիալիստական, ինդուստրիալ-կոլտնտեսային իր մեծ տերությունը:

Պարտիային այդ հաջողվեց, որովհետև նա միասնական էր ու միաբան: Պարտիան մերկացրեց, գաղափարապես ջախջախեց ու իր շարքերից դուրս շպրտեց թշնամու անարգ գործակալներին՝ տրոցկիստներին ու աջ օպորտունիստներին, որոնք վայնասուն էին բարձրացրել ու պայքարում էին պարտիայի գլխավոր գծի դեմ, խանգարում լենինյան պատգամների իրագործմանը:

Վերջին հինգ տարում պարտիան կարևորագույն միջոցառումներ իրականացրեց կոլտնտեսային կարգերի հետագա ամրապնդման, մեր երկրի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի համար: Հացահատիկի պաշարներն ավելացնելու նպատակով վերջին երեք-չորս տարում Ղազախստանում, Սիբիրում և Պովոլժիեում յուրացվեցին խամ ու խոպան հողերի հսկայական զանգվածներ, հերկվեց 36 միլիոն հեկտար հողատարածություն: 1958 թվականին երկրում ցանքատարածությունները կազմեցին ավելի քան 195 միլիոն հեկտար: Կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների դաշտերում աշխատում են 1 միլիոն 700 հազար տրակտոր, ավելի քան 480 հազար հացահատիկային կոմբայն, 660 հազար բեռնատար ավտոմեքենա և միլիոնավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ:



Մեր ամբողջ ժողովուրդը բերկրանքով հետևում է կոլտնտեսային գյուղացիության հաջողություններին, հպարտանում կոլտնտեսային գյուղի վերելքով: Պետությանը վաճառված է 3 միլիարդ 491 միլիոն փութ հացահատիկ, Հոկտեմբերի 10-ի տվյալներով երկրի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները պետությանը վաճառել են հացահատիկ 1 միլիարդ 487 միլիոն փութ կամ 86 տոկոսով ավելի, քան 1953 թվականի համապատասխան ժամանակամիջոցում: Համապատասխանաբար ավելի է վաճառված շաքարի ճակնդեղ՝ 17 միլիոն 762 հազար տոննա (156 տոկոսով), կարտոֆիլ՝ 2 միլիոն 6 հազար տոննա (76 տոկոսով):

Ակնառու են նաև այն հաջողությունները, որոնք ձեռք են բերված սոցիալիստական անասնաբուծության զարգացման, բնակչության մեկ շնչին հասնող մսի, յուղի և կաթի արտադրությամբ մոտակա տարիներս ԱՄՆ-ին հասնելու համաժողովրդական խնդրի լուծման գործում: 1958 թվականի հունվարի 1-ի տվյալներով, 1954 թվականի հունվարի 1-ի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 11 միլիոնով, խոզերինը՝ նույնպես 11 միլիոնով, ոչխարներինը՝ ավելի քան 20 միլիոնով: Մինչև ընթացիկ տարվա հոկտեմբերի 10-ը, 1953 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, մթերված է. միս (կենդանի քաշով) 1 միլիոն 475 հազար տոննայով ավելի, կաթ՝ երկու անգամ ավելի: Մթերված է մեկ միլիարդ 807 միլիոն ձու, կամ 75 տոկոսով ավելի, քան 1953 թվականին:

Գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրությամբ ՍՍՌ Միությունն ընդհուպ մոտեցել է ԱՄՆ-ին, կամ նույնիսկ գերազանցել: Ցորեն մեզ մոտ արտադրվում է երկու անգամից քիչ ավելի, բուրդ՝ երկու և կես անգամ ավելի, շաքարի ճակնդեղ, մոտավորապես, երեք անգամ ավելի, քան ԱՄՆ-ում: Մեզ մոտ ավելի շատ կենդանական յուղ է արտադրվում, քան ԱՄՆ-ում: Կաթի արտադրությամբ մեր երկիրը ընդհուպ մոտենում է ԱՄՆ-ին:

Այս բոլորը վկայում են, որ պարտիայի առաջադրած՝ ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդիրը՝ յուրաքանչյուր շնչին հասնող արտադրանքի արտադրությամբ հասնել և անցնել կապիտալիստական առաջավոր երկրներին, հաջողությամբ լուծվում է:

Անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը, նրա կուլտուրական մակարդակը:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը բազմազգ պետություն է, որի մեջ կամավոր կերպով միավորված են 15 Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաներ: Նրանք կապված են սերտ եղբայրական բարեկամությամբ և կոմունիզմի կառուցման մեծ նպատակի միասնությամբ:

Սովետական Միությունը Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի կենդանի մարմնացումն է: Հոկտեմբերյան ռևոլյուցիան փշրեց ազգային ճնշման դարավոր կապանքները, հռչակեց բոլոր ժողովուրդների ազատության, սերտ բարեկամության և իրավահավասարության սկզբունքները: Պրոլետարական դիկտատուրան և սոցիալիստական կարգերի հաղթանակը ընդմիշտ վերացրին նախկինում ցարիզմի կողմից ճնշված ազգերի տնտեսական և կուլտուրական հետամնացությունը: Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ ՍՍՌՄ-ում բուռն կերպով ծաղկեցին սովետական ազգային ռեսպուբլիկաները: Սովետա-

կան Միությունում չկան տնտեսապես հետամնաց, քաղաքականապես իրավազուրկ ազգային ծայրամասեր, ինչպես հին Ռուսաստանում։ Միութենական և ավտոնոմ իրավահավասար ռեսպուբլիկաները, ազգային մարզերը, օկրուգներն ու շրջանները Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների օգնությամբ ու համագործակցությամբ ստեղծել են զարգացած արդյունաբերություն, սոցիալիստական խոշոր կոլեկտիվ գյուղատնտեսություն։ Վաղուց անցյալի գիրկն է անցել մեր երկրի ժողովուրդների երբեմնի կուլտուրական հետամնացությունը։ Բուռն կերպով զարգանում է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Սովետական ժողովուրդների բարեկամությունը՝ սոցիալիստական կարգերի կարևորագույն հիմքն է, նրա զարգացման շարժիչ ուժերից մեկը։

Մեր Հայրենիքի սոցիալիստական ազգերի զարգացման, միութենական ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական աննախընթաց վերելքի վառ արտահայտություններից մեկը հենց Սովետական Հայաստանն է, որի աշխատավորներն այս օրերին, բերկրանքով լեցուն, նշում են Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 38-րդ տարեդարձը։

Ի՞նչ էր իրենից ներկայացնում Հայաստանը նախասովետական շրջանում։ Ինդուստրիայից զուրկ ագրարային հետամնաց մի երկրամաս, իր մի երկու գավառական խուլ քաղաքներով, ուր կային մի քանի մանր ձեռնարկություններ և օտարերկրյա կապիտալիստների կողմից շահագործվում էին Ալավերդու և Ղափանի պղնձահանքերը։ Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականի սկզբին, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 49,1 անգամ, արդյունաբերության տարբեր ճյուղերում զբաղված բանվորների թիվը վերջին 18 տարում ավելացել է համարյա երեք անգամ։ Այժմ ռեսպուբլիկայի ժողտնտխորհը միավորում է մոտ 200 արդյունաբերական ձեռնարկություն։ Հայաստանում թողարկվում է ավելի քան 400 տեսակ արտադրանք՝ շարժական էլեկտրակայաններ, գեներատորներ, կոմպրեսորներ, զանազան քիմիկատներ։ Հայաստանի գունավոր մետալուրգիան ամբողջ սովետական երկրին մատակարարում է պղինձ, ալյումին, մոլիբդեն, և արժեքավոր այլ մետաղներ։ Հայաստանը մետաղների արտադրությամբ գրավում է երրորդ տեղը ՍՍՌՄ-ում։ Հայաստանում բնակչության մեկ շնչին ընկնում է 21 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան Թուրքիայում։

Ռեսպուբլիկայի ինդուստրիան է՛լ ավելի կզարգանա 1959—1965 թվականներին։ Եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազի լայն կիրառումը հնարավորություն կտա զարգացնել քիմիական արդյունաբերության նոր ճյուղերը, օգտագործելով ռեսպուբլիկայի բնական անսպառ հարստությունները։ Առաջիկա յոթամյակում ռեսպուբլիկայում կզարգանա ճշգրիտ մեքենաշինությունը և սարքաշինությունը։ Կապիտալ ներդրումները կկազմեն 12 միլիարդ ռուբլի, 2,2 անգամ ավելի, քան 1952—1958 թվականներին։ Արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա մոտավորապես 2,2 անգամ։ Հաջողությունները խոշոր են նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Կենսագործելով Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության որոշումները և ստանալով նրանց ամենօրյա օգնությունը, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները տարեցտարի ավելացնում են գյուղատնտեսական մթերքների, խա-



ղողի, բամբակի, ծխախոտի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը։ Նրանք իրենց լուման են մտցնում երկրում գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծման և յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի ու մսի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու խնդրի լուծման գործում։ Մեր ռեսպուբլիկան այս տարի բոլոր գծերով ապահովեց պետական մթերումների պլանների կատարումը. դա մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների մեծ հաղթանակն է։

Ժողովրդական տնտեսության բուռն զարգացման հիման վրա Հայկական ՍՍՌ-ում ծաղկել, աննախընթաց զարգացում է ստացել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, որի հասուն պտուղներից օգտվում է մեր ամեն մի քաղաքացին։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 38-րդ տարեդարձը նշանավորվում է տնտեսական և կուլտուրական նոր նվաճումներով։

Մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդները, միավորված եղբայրական մեծ ընտանիքում, հաջողությամբ լուծում են կոմունիստական շինարարության խնդիրները և նորանոր հաջողություններով գնում են հարազատ պարտիայի՝ ՍՄԿՊ-ի XXI արտահերթ համագումարը։

Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումների հիման վրա երկրում կենսագործվեցին այնպիսի խոշոր միջոցառումներ, որոնք պայմաններ ստեղծեցին դիմելու վիթխարի վերափոխումների և մեր երկրին հնարավորություն են տալիս թևակոխելու իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը ցույց են տալիս սովետական ժողովրդի խիզախ թռիչքը դեպի կոմունիզմ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան վճռական ազդեցություն ունեցավ համաշխարհային պատմության ընթացքի վրա։ Մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որը սկսվել է 41 տարի առաջ, Մեծ Հոկտեմբերի օրերին։ Մարդկության հետհոկտեմբերյան պատմությունը, որը լի է համաշխարհային նշանակություն ունեցող մեծ իրադարձություններով, վկայում է մի բան՝ սոցիալիզմի ուժերի անշեղ աճ և իմպերիալիզմի թուլացում։ Մի ժամանակ Սովետական Միությունը միակ սոցիալիստական երկիրն էր։ Այժմ Էլբայից մինչև Խաղաղ օվկիանոսի ափերը տարածվել են սոցիալիստական համաշխարհային հզոր լագերի երկրները, որոնք գրավում են երկրագնդի տերիտորիայի 26 տոկոսը։ Օգտագործելով Սովետական Միության փորձը, սոցիալիզմ են կառուցում չին մեծ ժողովուրդը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո գնալով խորանում է իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը, ուժեղանում է գաղութային երկրների ազգային-ազատագրական պայքարը։ Գաղութների մեծ մասը դեն է շպրտել իմպերիալիզմի անարգ լուծը։

Գաղութականության դեմ մղվող պայքարում ժողովուրդները հենվում են Սովետական Միության, Ժողովրդական Չինաստանի, սոցիալիստական ամբողջ լագերի աջակցության վրա։ Սոցիալիստական համաշխարհային սիստեմի

*հզորացումը ամրապնդում և նոր թափ է հաղորդում կոմունիստական և բանվորական շարժմանը կապիտալիստական երկրներում։*

*Մեծ Հոկտեմբերն իր հաղթական երթն սկսեց՝ բարձր պարզելով խաղաղության, ժողովուրդների բարեկամության ու սոցիալիզմի դրոշը։ Սովետական պետությունը, ինչպես իր գոյության առաջին տարիներին, այնպես էլ այժմ, հաստատակամորեն պայքարում է ժողովուրդների խաղաղության համար, մերկացնում իմպերիալիստների չարանենգ ագրեսիվ պլանները։*

*Սովետական Միության գլխավորած սոցիալիստական լագերի հետ միասին խաղաղության գործը պաշտպանում են Եվրոպայի և Ասիայի խաղաղասեր ժողովուրդները, ամբողջ աշխարհում և կապիտալիստական երկրներում ուժեղացող խաղաղության կողմնակիցները։*

*Մարդկությունը դեպի կոմունիզմ է ընթանում լենինիզմի անպարտ դրոշի ներքո։ Նրա ուղին պայծառ լուսավորում է Լենինի կոփած Կոմունիստական պարտիայի 41 տարի առաջ վառած սոցիալիստական ռևոլյուցիայի անմար ջահը։*

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀՈՅԱԿԱՊ ԾՐԱԳԻՐԸ

*1958 թվականի նոյեմբերի 12-ին տեղի ունեցած Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը քըննարկեց և հավանություն տվեց ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը» զեկուցման թեզիսների նախագծին և «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կըրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսների նախագծին։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշմամբ մեր անծայրածիր Հայրենիքում սկսվել է վերոհիշյալ կարևորագույն փաստաթղթերի համաժողովրդական քննարկումը։*

*Պարտիայի XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները սովետական ամբողջ ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ ընդունեց։ Հանդիսանալով մեր երկրում ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանի փառահեղ ծրագիրը, այդ պատմական վավերագիրը խոր արձագանք գտավ սոցիալիզմի լագերի միլիոնավոր աշխատավորների սրտում և իր վրա բևեռեց ամբողջ աշխարհի հասարակայնության ուշադրությունը։ Նույնիսկ բուրժուական «Նյու-Յորք Թայմս»-ը գրում է, թե Սովետական Միության տնտեսական զարգացման նոր պլանը ամենահամարձակ տնտեսական մրցահրավերն է այն բոլոր մրցահրավերներից, որ Ռուսաստանը երբևէ ուղղել է Միացյալ Նահանգներին և Արևմուտքին։ Կասկածից վեր է թվում, որ Արևմուտքի համեմատությամբ կշարունակվի Սովետական Միության տնտեսական աճը, խոստովանում է նույն թերթը։*

*Կոմունիստական հասարակարգի կառուցման գործում սովետական ժողովըրդի ձեռք բերած պատմական հաջողությունները, նրա արագ առաջընթացը դեպի կոմունիզմ, աշխարհի միլիոնավոր առաջադեմ մարդկանց բուռն հիացմունքն են հարուցում, նման վառ օրինակով նրանց ցույց են տալիս կապիտալիզմի և թշվառության մագիլներից ազատագրվելու միակ ուղին։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, որոնք խորապես շարադրված ու վերլուծված են ՍՄԿՊ XXI համագումարին տրվելիք ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում՝ մի վառ ապացույց են այն իսկության, որ մեր մեծ Հայրենիքն իր ստեղծագործական անսպառ ուժերի լիակատար ծաղկումն է ապրում։*

Սովետական ժողովուրդը, համախմբված իր Կոմունիստական պարտիայի շուրջը,— *ասված է զեկուցման թեզիսներում,*— հասել է այնպիսի բարձունքների, կատարել այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր, կարևորագույն ժամանակաշրջանը, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրները

կլինեն կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի համակողմանի ստեղծման, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման և միաժամանակ սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր հարանուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման խնդիրները: Դա վճռական էտապ կլինի կապիտալիստական աշխարհի հետ մրցության մեջ, երբ գործնականում պետք է կատարվի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և նրանցից անցնելու պատմական խնդիրը: Կոմունիստական պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը լի են վստահությամբ, որ այդ խնդիրը հաջողությամբ կլուծվի:

*Զարգացման այս բարձր աստիճանին մեր ժողովուրդը հասել է նախ և առաջ այն բանի շնորհիվ, որ սոցիալիզմի շինարարության բոլոր էտապներում նրան ղեկավարել է ՍՄԿՊ-ն, որն անշեղորեն կենսագործել է մեր երկրում կոմունիզմի կառուցման օրինաչափությունների վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները, միշտ գլխավորել է մասսաների ստեղծագործական ակտիվությունը ու ճշտորեն սահմանել կոմունիզմի երթուղին:*

*Սովետական Միության ժողովուրդները ջերմ գոհունակությամբ և հպարտությամբ են նշում, որ ՍՍՌՄ տնտեսական զարգացման առաջիկա 15-ամյա հեռանկարային պլանի կատարումը իրոք կստեղծի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա: Այդ պլանի համաձայն, 1957 թվականի համեմատությամբ, երկաթաքարի հանույթը կաճի 3,5 անգամ, նավթի հանույթը՝ 4 անգամ, գազի հանույթն ու արտադրությունը՝ 13—15 անգամ, չուգունի և պողպատի արտադրությունը՝ 2,3 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 4,3 անգամ, ցեմենտի արտադրությունը՝ 4 անգամ և այլն: ՍՍՌՄ առաջիկա տասնհինգամյա հոյակապ զարգացման այդ պլանը ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում բնորոշված է որպես մեր երկրում կոմունիզմի կառուցման տնտեսական ծրագիր:*

*Առաջիկա յոթնամյակի արմատական պրոբլեմը, ասված է ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում, կոմունիզմի ուղիով ժողովրդական տնտեսության ավելի արագ զարգացման պրոբլեմն է, կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական խաղաղ մրցության մեջ առավելագույն ժամանակ շահելու պրոբլեմը: Մեր երկիրը, որն իր դարավոր հետամնացությունը հաղթահարեց ընդամենը 12 տարվա ընթացքում և դարձավ սոցիալիստական հզոր տերություն, առաջիկա յոթ տարիներում առավել հզոր թռիչքով կընթանա դեպի կոմունիզմ, պահպանելով և զարգացնելով իր վճռական առավելությունները կապիտալիզմի հանդեպ: Առաջիկա տարիներին ևս մեր ծանր ինդուստրիայի տեմպերն անհամեմատ ավելի բարձր են լինելու, քան ԱՄՆ-ում և մյուս կապիտալիստական առաջավոր երկրներում:*

*ՍՍՌՄ տնտեսական զարգացման յոթնամյա պլանը, որի մեծագույն նպատակը աշխատավոր մասսաների աճող պահանջմունքների առավել բավարարումն է, հիմնվում է որակական խոր փոփոխությունների վրա, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ոչ միայն զարգացման տեմպերի, այլև արտադրանքի կարևոր տեսակների բացարձակ աճ՝ առաջավոր կապիտալիստական երկրների առնչությամբ: Եվ դա հնարավորություններ կընձեռի նշանակալի չափով բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը ու ստեղծելու բարիքների առատության հաստատուն նախադրյալներ: Նման աննախընթաց զարգացման արդյունքը կլինի այն, որ մոտակա 15 տարում ՍՍՌՄ-ն աշխարհում կգրավի առաջին տեղը ոչ միայն արտադրության ընդհանուր ծավալով, այլև շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ: Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմամբ Սովետական Միությունը անկասկած հաղթանակ կտանի կապիտալիզմի հետ մղվող խաղաղ տնտեսական պայքարում:*



*Իր առջև դնելով կոմունիստական հասարակարգի կառուցման նոր վիթխարի խնդիրներ, ասված է ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում, մեր պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը հենվում են համաշխարհային պատմական այն նվաճումների վրա, որոնք ձեռք են բերվել մարքս-լենինյան տեսության, գիտական կոմունիզմի հիմնական սկզբունքների կենսագործման շնորհիվ:*

*Ժողովրդի ստեղծագործ ջանքերի ամենագլխավոր արգասիքը սոցիալիզմի կառուցումն է, նրա պետության հզորացումը, ՍՍՌՄ ազգային եկամտի չտեսնված աճը: Բավական է նշել, որ ազգային եկամուտը (յուրաքանչյուր շնչի հաշվով) Սովետական իշխանության տարիներին ավելացել է 15 անգամ: Նոր հասարակարգն իր հետ բերեց նոր հասարակական հարաբերություններ և տնտեսական օրինաչափություններ, որոնք նրան նորանոր հաղթանակներ են ապահովում: Այսօր ՍՍՌՄ-ն արտադրության արտադրանքի ծավալով Եվրոպայում գրավում է առաջին տեղը, իսկ աշխարհում՝ երկրորդ տեղը: Ընթացիկ տարում մեր Հայրենիքն արտադրում է՝ պողպատ 55 միլիոն տոննա, նավթ 113 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա 233 միլիարդ կիլովատ-ժամ: Այժմ երեք օրում արտադրված էլեկտրաէներգիան հավասար է ցարական Ռուսաստանի մեկ տարվա արտադրած էլեկտրաէներգիային: Ստեղծվել է քիմիական հզոր արդյունաբերություն: 1940 թվականի համեմատությամբ արտադրամիջոցների արտադրությունը մեր երկրում (1958 թվականին) աճել է 5 անգամ: 1913 թվականի համեմատությամբ 14 անգամ աճել է սպառման առարկաների արտադրանքը: Միայն ՍՄԿՊ XX համագումարից հետո յուրացվել են 4500 նոր տիպի մեքենաներ, մեխանիզմներ և այլն:*

*ՍՍՌՄ-ն աշխարհի ամենահզոր և առաջավոր գյուղատնտեսական երկիրն է: Սոցիալիստական սկզբունքներով զոդված 70 հազար կոլեկտիվ տնտեսություններ և 6 հազար սովետական տնտեսություններ կազմում են մեկ միասնական սոցիալիստական պլանային տնտեսության անբաժանելի մասը: 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի փայլուն յուրացումը և միայն վերջին 5 տարում հացահատիկային կուլտուրաների տարեկան 38 տոկոսի միջին աճը մեր սիստեմի առավելության պերճախոս ապացույցներ են: Այս տարի, 1953 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճելու է 14 միլիոնով, որից կովերինը՝ 7 միլիոնով, խոզերինը՝ 14 միլիոնով, ոչխարինը՝ 29 միլիոն գլխով: Ոգեշնչող հաջողություններ ունենք մսի, կաթի, ձվի և բրդի արտադրության բնագավառում: Վերջին չորս տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան աճման միջին տեմպը ՍՍՌՄ-ում կազմում է 7,1 տոկոս, ԱՄՆ-ում՝ 1,1 տոկոս:*

*Գյուղատնտեսության շեշտակի վերելքի հիման վրա ձեռք բերված այս լուրջ հաջողությունները հետևանք են ՍՄԿՊ լենինյան Կենտկոմի կիրառած մի շարք արմատական միջոցառումների:*

*Սովետական ժողովուրդը լուրջ նվաճումներ ունի տրանսպորտի, շինա-*

*բարության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Մեր երկրում այժմ սո-
վորում են ավելի քան 56 միլիոն մարդ։ ՍՍՌՄ-ը տարեկան 3 անգամ ավելի
ինժեներներ է պատրաստում, քան ԱՄՆ-ը։ Սովետական գիտությունը և տեխ-
նիկան կանգնեցին առաջավոր գծի վրա՝ նոր դարագլուխ բացելով կոսմիկա-
կան անհուն տարածությունները նվաճելու գործում։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր նվաճումնե-
րից է աշխատավոր զանգվածների նյութական բարօրության բարձրացումը։
1940 թվականի համեմատությամբ այս տարի գրեթե երկու անգամ աճել է
բանվորների ու ծառայողների աշխատավարձը, ավելի քան երկու անգամ
ավելացել են գյուղացիների եկամուտները (մեկ աշխատողի հաշվով)։ Միայն
այս տարի կենսաթոշակների, նպաստների, սոցիալական ապահովագրության
և աշխատավորների բարօրության մյուս նպատակներին պետությունը հատ-
կացրել է 215 միլիարդ ռուբլի։*

*Պատմության մեջ աննախընթաց ծաղկում են ապրում ցարիզմի կողմից
երբեմնի ճնշված ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի բոլոր ճյու-
ղերը։ Միջին Ասիայի և Ղազախստանի ռեսպուբլիկաներում խոշոր արդյու-
նաբերության արտադրանքը աճել է 50 անգամ, Անդրկովկասի ռեսպուբլիկա-
ներում՝ 30 անգամ, Մերձբալթյան ռեսպուբլիկաներում (1940 թ. համեմա-
տությամբ)՝ 9,5 անգամ։ Եղբայրական ռեսպուբլիկաների իրավունքների ընդ-
լայնումը նոր խթան հանդիսացավ երկրի տնտեսական ու կուլտուրական վե-
րելքին։*

*ՍՍՌՄ-ում տեխնիկական անկանգ պրոգրեսի և համաժողովրդական սո-
ցիալիստական մրցման հիման վրա արդյունաբերության մեջ, 1958 թվակա-
նին (1913 թվականի համեմատությամբ) աշխատանքի արտադրողականու-
թյունը աճել է 10 անգամ, իսկ կոլտնտեսություններում՝ 36 տոկոսով և սո-
վետական տնտեսություններում՝ 35 տոկոսով (1953—1958 թվականների
ընթացքում)։*

*ՍՍՌՄ-ը ո՛չ միայն իր աճման տեմպերով, այլ վերջին տարիներին մի
շարք արտադրանքների՝ երկաթաքարի, չուգունի, պողպատի, նավթի, քա-
րածխի, ցեմենտի տարեկան բացարձակ աճմամբ անցել է ԱՄՆ-ից։ ՍՍՌՄ-ն
արտադրանքի մի քանի կարևոր տեսակների՝ բրդե գործվածքների, շինափայ-
տի ու սղոցանյութերի, կենդանական յուղի արտադրությամբ, ցորենի, շա-
քարի ճակնդեղի ու կարտոֆիլի բերքով գերազանցել է ԱՄՆ-ի մակարդակը։*

*Մեծ վերելք են ապրում սոցիալիստական երկրները, որոնք այս տարի,
(1937 թվականի համեմատությամբ), իրենց արդյունաբերական արտադրու-
թյան ծավալը կմեծացնեն 4,9 անգամ։ Մինչդեռ կապիտալիստական երկր-
ների արդյունաբերական արտադրանքն այդ նույն ժամանակ մեծացել է 2
անգամից էլ պակաս։*

*Սովետական Միությունն իր զարգացման արդի մակարդակով հնարա-
վորություններ է ընձեռում լուծելու կոմունիզմի կառուցման վիթխարի խըն-
դիրները։*

*Ո՞րն է ՍՍՌՄ յոթնամյա պլանի գլխավոր խնդիրը։ Ժողովրդական տըն-
տեսության բոլոր ճյուղերի հզոր վերելք ծանր ինդուստրիայի առավել արագ
աճման հիմքի վրա, երկրի տնտեսական պոտենցիալի զգալի ուժեղացում՝
աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացումն ապահովելու
համար։ Այս հոյակապ պլանի կենսագործումով մեր երկիրը պատմական*



*ամենակարճ ժամանակամիջոցում մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով
կանցնի առավել զարգացած կապիտալիստական երկրներից։*

*Արդյունաբերական ապրանքների և կենսամթերքների աննախընթաց ավե-
լացման հետ մեկտեղ, յոթնամյա պլանը նախատեսում է բնակարանային
շինարարության վիթխարի ծավալում, սոցիալիստական կուլտուրայի նոր
ծաղկում, մեր աշխատավորների գիտակցականության մակարդակի բարձ-
րացում։*

*Յոթնամյա պլանի իրագործմամբ տեղի կունենան որակական լուրջ փո-
փոխություններ ժողովրդական տնտեսության ստրուկտուրայի բնագավառում։*

*Կոմունիզմի վեհ շինության սիմֆոնիայի հրապուրիչ հիմնն է հնչում յոթ-
նամյակի թվերի հարուստ գամմայից։ Այսպես, օրինակ, 1965 թվականին
ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը այս տարվա համեմա-
տությամբ կավելանա 80 տոկոսով, արտադրամիջոցների արտադրությունը՝
85—88 տոկոսով, սպառման առարկաների արտադրությունը՝ 62—65 տոկո-
սով։ Յոթնամյակի վերջին տարում ՍՍՌՄ-ը կարտադրի՝ չուգուն՝ 65—70 մի-
լիոն տոննա (65—77 տոկոսով ավելի քան այս տարի), պողպատ՝ 86—91
միլիոն տոննա (56—65 տոկոսով ավելի), գլանվածք՝ 65—70 միլիոն տոննա,
(52—64 տոկոսով ավելի), երկաթաքար՝ 150—160 միլիոն տոննա։ Ոչ միայն
3 անգամ կավելանա քիմիական արդյունաբերության արտադրանքը, այլև
մեծ չափերով կմեծանա գունավոր մետաղների արտադրությունը։ 1965 թվա-
կանին մեզ մոտ կարտադրվի նավթ՝ 230—240 միլիոն տոննա (աճ ավելի
քան 2 անգամ 1958 թ. համեմատությամբ), գազ՝ 150 միլիարդ խորանարդ
մետր (1958 թվակնի 30 միլիարդ խ. մ.-ի դիմաց), քարածուխ՝ 609 միլիոն
տոննա (աճ 23 տոկոս)։*

*Կոմունիզմի կառուցման յոթնամյակը լինելու է մեր երկրի համատարած
էլեկտրիֆիկացման նոր էտապ. 1965 թվականին, 1958 թվականի համեմա-
տությամբ, կարտադրվի 520 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա (2—2,2
անգամ ավելի), մեքենաշինության արտադրանքը կաճի 1,5 անգամ, միսը՝
217 տոկոսով, կենդանական յուղինը՝ 160 տոկոսով, կաթինը՝ 225 տոկոսով,
շաքարավազինը՝ 194 տոկոսով, բուսայուղինը՝ 162 տոկոսով, ձուկը՝ 162 տո-
կոսով և այլն։ Կանցնեն ընդամենը մի քանի տարիներ, և յոթնամյակի վեր-
ջին տարում մեր ժողովուրդը կարտադրի 10—11 միլիարդ փութ հացահատիկ,
6,1 միլիոն տոննա բամբակի հումք, 78 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ և
147 միլիոն տոննա կարտոֆիլ և այլն։*

*Յոթնամյակը հանդիսանում է կոմունիստական շինարարության ծավալ-
ման մի վիթխարի ծրագիր։ Բավական է ասել, որ ժողովրդական տնտեսու-
թյան մեջ կատարվող կապիտալ ներդրումները կաճեն 184 տոկոսով՝ 1958
թվականի համեմատությամբ։ Եթե արտադրական շինարարության մեջ ներ-
դրվելու է 1,513 միլիարդ ռուբլի, ապա բնակարանային և կոմունալ շինա-
րարության մեջ ներդրվելու է 380 միլիարդ ռուբլի, լուսավորության, կուլտու-
րայի և առողջապահության շինարարության օբյեկտների վրա ծախսվելու է
77 միլիարդ ռուբլի։ Գյուղատնտեսության զարգացման նպատակով ներդրվելու
է շուրջ 500 միլիարդ ռուբլի, տրանսպորտի զարգացման՝ 115 միլիարդ
ռուբլի։*

*ՍՍՌՄ նոր յոթնամյա պլանը մի վառ ապացույց է մեր երկրում կիրառ-
վող լենինյան ազգային քաղաքականության։ Բոլոր ռեսպուբլիկաների զար-*

գացման շահերը լիովին իրենց արտացոլումն են գտել այդ պլանի կոնտրոլ թվերում։ Այսպես, օրինակ, յոթնամյակում Հայաստանի կապիտալ ներդրումները կազմելու են 12 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 2,2 անգամ ավելի, քան 1952—1958 թվականներին։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 2,2 անգամ։ Նոր հզոր էլեկտրակայանների կառուցումն ու գործարկումը մեծ չափով կնպաստի տնտեսության հզոր վերելքին։ 1965 թվականին ռեսպուբլիկայում խաղողի արտադրությունը կաճի 2,9 անգամ (1957 թվականի համեմատությամբ) պտուղներինը՝ 3 անգամ, ծխախոտինը՝ 1,4 անգամ, շերամի բոժոժինը՝ 1,7 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 1,8 անգամ։ Հայաստանում առաջիկա յոթ տարում 44 հազար հեկտար նոր այգիներ են տնկվելու, մեծ թափով աճելու են մեքենաշինությունը, սարքաշինությունը, լեռնային արդյունաբերությունը և այլն։

Յոթնամյա պլանում առանձնապես աչքի են զարնում ժողովրդի կենսամակարդակի բարձրացումն արտահայտող կոնտրոլ թվերը։ 1965 թվականին ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը աճելու է 62—65 տոկոսով (1958 թվականի համեմատությամբ)։ 11,5 միլիոնով աճելու է բանվորների և ծառայողների թիվը։ Բանվորների և ծառայողների ռեալ եկամուտը յոթ տարում (մեկ աշխատողի հաշվով), կաճի 40 տոկոսով։ Նույն չափով կավելանա և կոլտնտեսականների ռեալ եկամուտը։ Շարունակվելու է ցածր և միջին աշխատավարձի կարգավորումը այն հաշվով, որպեսզի 1963—1965 թվականներին նվազագույն աշխատավարձը հասնի մինչև 500—600 ռուբլու։ Բարձրանալու են նաև կենսաթոշակները։ Աշխատավորության բարօրության նպատակով (ձրի ուսում, ձրի բուժօգնություն, սանատորիաներ և հանգստի տներ, կենսաթոշակներ, նպաստներ և այլն) 1965 թվականին պետությունը ծախսելու է 345 միլիարդ ռուբլի։

Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերը, որոնք իրենց մեջ մարմնացնում են ժողովրդի նկատմամբ ունեցած պարտիայի ու կառավարության անսահման հոգատարությունը, հանդիսանալու են ոգևորության և ստեղծագործական ախրանքների մի կենսաբուխ աղբյուր, ժողովրդի բարօրության նոր վերելքի ապացույց։ 1960 թվականին կավարտվի բանվորների և ծառայողների փոխադրումը յոթժամյա աշխատանքային օրվա, իսկ ածխի ու լեռնահանքային արդյունաբերության և ստորերկրյա աշխատանքներում զբաղված բանվորների փոխադրումը վեցժամյա բանվորական օրվա։ Նախատեսվում է 1964 թվականից ձեռնամուխ լինել 35—40 ժամյա աշխատանքային շաբաթի անցնելուն՝ շաբաթական երկու հանգստի օրով։ ՍՍՌՄ-ում բանվորական շաբաթը և բանվորական օրը կլինի աշխարհում ամենակարճը։

Կոմունիզմին անցնելու համար, ասված է ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում, անհրաժեշտ է ոչ միայն նյութատեխնիկական հզոր բազա. այլև սոցիալիստական հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցականության բարձր մակարդակ։ Մեր առջև այժմ գործնականորեն ծառանում է կոմունիստական հասարակության բազմակողմանիորեն զարգացած ու պատրաստված մարդկանց հետագա դաստիարակման խնդիրը։

Պարտիան գտնում է խիստ անհրաժեշտ, որպեսզի հատուկ ուշադրություն դարձվի աճող սերնդին կոմունիզմի ոգով դաստիարակելու, դպրոցը կյանքին մոտեցնելու, ուսուցումը աշխատանքի հետ միացնելու և բուրժուական գաղափարախոսության դեմ անհաշտ պայքար ծավալելու վրա։



Այս նպատակով էլ յոթնամյա պլանում խոշոր միջոցառումներ են նախատեսվում ժողովրդական կրթության, գիտության և կուլտուրայի զարգացման ուղղությամբ։ Զգալիորեն զարգանալու է ընդհանուր միջնակարգ կրթությունը քաղաքներում և գյուղական վայրերում, ծավալվելու է երեկոյան, հեռակա բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությունը։ 1965 թվականին գիշերօթիկ դպրոցներում կսովորեն 2,5 միլիոն պատանիներ (աճ 14 անգամ)։

Ժողովրդական կրթության արմատական բարելավման՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսները դպրոցի զարգացման գործում նշանավորում են մի նոր էտապ, որն արտացոլում է հասարակության կյանքի հասունացած պահանջմունքները սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Դպրոցի առջև դրված գլխավոր խնդիրն է՝ աճող սերնդին նախապատրաստել կյանքի համար, օգտակար աշխատանքի համար, մեր երիտասարդության մեջ դաստիարակել խոր հարգանք դեպի սոցիալիստական հասարակարգի սկզբունքները։ Գիտության հիմունքներին լավ տիրապետող, սիստեմատիկ ֆիզիկական աշխատանքի ընդունակ, բազմակողմանիորեն կրթված և հասարակության համար նյութական արժեքներ արտադրելու ցանկությամբ տոգորված պետք է լինի սովետական դպրոցն ավարտած յուրաքանչյուր պատանի։ Այս է պահանջում կյանքը դպրոցից, և նա անպայման կբավարարի այդ պահանջը։

Յոթնամյա պլանի համաձայն 1959—1965 թվականներին մեր երկրում կիրառվելու են մի շարք արմատական միջոցառումներ, որոնք անպայման կամրապնդեն դպրոցի կապը կյանքի հետ և ժողովրդական կրթության գործը կբարձրացնեն մի նոր աստիճանի։ Առաջիկայում 7-ամյա ընդհանուր պարտադիր ուսուցումից երկիրն անցնելու է 8-ամյա ընդհանուր և պարտադիր ուսուցման։ Ութամյա դպրոցները կապահովվեն պոլիտեխնիկական կրթության անհրաժեշտ հարմարանքներով, ուսուցումը սերտորեն կզուգակցվի հանրօգուտ աշխատանքի հետ։ Տասնամյա դպրոցների ցանցը վերակազմվում է միջնակարգ աշխատանքային դպրոցների, որոնց սովորողները ուսումը զուգորդելու են արտադրական աշխատանքների հետ։ Մոտակա տարիներում կծավալվի այն դպրոցների ցանցը, որոնք միջնակարգ կրթություն են տալիս առանց արտադրությունից կտրվելու։

Բարձրագույն դպրոցն է՛լ ավելի պետք է մոտեցվի կյանքին, արտադրությանը և ինչպես հարկն է կապվի նրա հետ, ասված է ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսներում։ Պարտիայի և կառավարության մշակած այդ խոշորագույն միջոցառումները կոչված են մեծ չափով առաջ մղելու կրթության և դաստիարակության գործը մեր երկրում։

Սովետական հասարակայնությունը ջերմ գոհունակությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» թեզիսները։

ՍՍՌՄ յոթնամյա պլանի միջազգային նշանակությունն այն է, որ նրա կատարումը նշանակում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության հետագա ամրապնդում,— ասված է Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսներում։ ՍՍՌՄ-ի այդ նոր հզորացումը մեծագույն չափով կխթանի սոցիալիստական բոլոր երկրների զարգացմանը, նրանց եղբայրական համագործակցու-

թյանը։ Վեր է ամեն կասկածից, որ յոթնամյա պլանի հաջող կենսագործումը է՛լ ավելի կամրապնդի աշխարհի խաղաղության ուժերի դիրքերը, կործանիչ հարված կհանդիսանա բուրժուական գաղափարախոսությանը, միջազգային ռեֆորմիզմին և ռևիզիոնիզմին։

Սովետական ժողովրդի նվաճումները կոմունիզմի կառուցման ճանապարհին ամենից առաջ հետևանք են նրա ստեղծարար պայքարին ընթացք տվող ՍՄԿՊ վարած լենինյան գծի, նրա քաղաքական ու կազմակերպական վիթխարի գործունեության։ Պարտիան այսօր ավելի միասնական է ու համախմբված, նա ավելի է հարազատ դարձել ժողովրդին։ Պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն վերականգնեց ու զարգացրեց լենինյան նորմերը, մեծ հաջողությամբ կիրառում է դրանք պարտիական, պետական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, որի հետևանքով էլ մեր Հայրենիքն այսօր առաջ է ընթանում յոթ մղոնանոց քայլերով։

Ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմը, նշված է ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում, պարտիան վճռական պայքար է մղում նրանց դեմ, ովքեր կառչել են աշխատանքի հին, իրենց դարն ապրած ձևերից ու մեթոդներից, ովքեր տառապում են պահպանողականությամբ և դիմադրում են պարտիայի լենինյան գլխավոր գծի կենսագործմանը։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը մերկացրեց և ջախջախեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբին, որը պայքարում էր պարտիայի լենինյան գլխավոր գծի դեմ, ՍՄԿՊ XX համագումարի ընդունած քաղաքական կուրսի դեմ, պարտիայի ղեկավար դերի դեմ, գլորվել էր ֆրակցիոն պառակտողական գործունեության ուղին։

Պարտիան գնում է իր XXI արտահերթ համագումարը, կոմունիստական շինարարության մեծ պլանի մշակմամբ, հենվելով ժողովրդի ստեղծագործ և անհատնում եռանդի վրա՝ որպես այդ պլանի իրագործման վճռական պայմանի։ Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ առաջիկայում ևս ավելի ընդլայնել մասսաների հետ ունեցած իրենց կապերը, ավելի հաջող կազմակերպել ու լուսավորել նրանց, սովորել մասսաներից, ընդհանրացնել և տարածել նրանց փորձը։

Յոթնամյա պլանի վեհ խնդիրների կենսագործումը պահանջում է ավելի լավ կազմակերպել ու վարել աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, առավել բարձրացնել նրանց գիտակցականությունը։ Պարտիայի գաղափարական աշխատանքի բոլոր միջոցներն ու ձևերը պետք է ծառայեն այս մեծ նպատակի իրականացմանը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## ԳԼՈՒԽ III

## ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ 1905—1907 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԺԱՄԱՆԱԿ

### 1. ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ 1905 ԹՎԱԿԱՆԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ։ ՌՈՒՍ-ՃԱՊՈՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ։ ՀՈՒՆՎԱՐԻ ԻՆՆԸ։ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՍԿԻԶԲԸ։

Ռևոլյուցիան Ռուսաստանում հասունանում էր շատ տարիների ընթացքում։ XX դարի սկզբներին Ռուսաստանում ստեղծվեցին այնպիսի տնտեսական ու քաղաքական պայմաններ, որոնք բացահայտորեն վկայում էին ռևոլյուցիոն պայթյունի աճումը երկրում։ Մոտավորապես այդ ժամանակ կապիտալիզմը Ռուսաստանում, ինչպես և ամբողջ աշխարհում, թևակոխեց իր զարգացման բարձրագույն ու վերջին փուլը՝ իմպերիալիզմի փուլը, որի համար բնորոշ է կապիտալիստական սիստեմի սոցիալական ու քաղաքական բոլոր հակասությունների ծայրահեղ սրումը։

Իմպերիալիզմը Ռուսաստանում ուներ իր առանձնահատկությունները։ Կար բարձր համակենտրոնացման հասած խոշոր արդյունաբերություն, որի մեջ ավելի ու ավելի մեծ չափով էին զարգանում կապիտալիստական մոնոպոլիաները։ Կապիտալիստների մի փոքրիկ խումբ տեր ու տնօրինություն էր անում երկրի ամբողջ արդյունաբերական ու ֆինանսական կյանքում։ Այդ կապիտալիստական իմպերիալիզմը միահյուսվում էր էկոնոմիկայում ու քաղաքական կարգում եղած ճորտատիրական շատ ուժեղ մնացուկների հետ։ Այդ մնացուկներից գլխավորը ցարիզմն էր և կալվածատիրական հողատիրությունը։ Ֆեոդալական (ճորտատիրական) մնացուկները իրենց կնիքն էին դնում երկրի ամբողջ հասարակարգի վրա։ Դրանք առաջ էին բերում պրոլետարիատի շահագործման առանձնապես դաժան ձևեր, գյուղացիության ծայրահեղ աղքատություն, ոչ-ռուս ազգությունների կոպիտ ճնշում։

Ռուսաստանի պրոլետարիատը կրում էր կապիտալիստական շահագործման բոլոր սարսափները։ 1900—1903 թվականների տնտեսական ճգնաժամն է՛լ ավելի վատացրեց աշխատավորների դրությունը։ Երևան եկավ գործազուրկների բազմահազար բանակը։ Գործազուրկների ընդհանուր թիվը գերազանցում էր 200 հազարից։ Ճգնաժամի տարիներին կապիտալիստներն է՛լ ավելի էին իջեցնում բանվորների աշխատավարձը, երկարացնում աշխատանքային օրը։ Թեև 1897 թվականի օրենքով աշխատաժամանակը սահմանա-

*փակվում էր 11,5 ժամով, իրականում ձեռնարկությունների մեծ մասում աշխատանքային օրը տևում էր 12—14 ժամ:*

*Ճգնաժամի տարիներին խիստ վատացան բանվորների սնունդը, նրանց բնակարանային-կենցաղային պայմանները: Բանվորների մեծ մասը շարունակում էր պատսպարվել նկուղներում, բարաքներում ու ֆաբրիկաներին կից հանրակացարաններում: Նույնիսկ բուրժուական մամուլի օրգանները պետք է խոստովանեին, որ «դրանցում կյանքը քիչ բանով է տարբերվում տաժանակիրների կյանքից»* («Պրոմիշլեննոստ ի տորգովլյա» № 21, 1909 թվական):

*Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի դրության մասին գրում էր.*

*«Հազարավոր և տասնյակ հազարավոր մարդիկ, որոնք ամբողջ կյանքում աշխատում են օտարի հարստությունը ստեղծելու վրա, ոչընչանում են սովահարություններից ու մշտական թերասնումից, վաղաժամ մեռնում են այն հիվանդություններից, որոնք առաջանում են աշխատանքի զզվելի պայմաններից, բնակարանների մուրացկանային կահավորումից, հանգստի պակասությունից»* (Երկեր, հատ. 5, էջ 26):

*Բացառիկ ծանր էր աշխատավոր գյուղացիության դրությունը: Մեծ քանակությամբ հողեր, և այն էլ լավագույն հողեր, 1905 թվականին կենտրոնացած էին կալվածատերերի, արտոնյալ ազնվականական դասի ձեռքում: Ճորտատիրական շահագործումից քայքայված ու ճզմված 10,5 միլիոն գյուղացիական տնտեսություններ ունեին 75 միլիոն դեսյատին և գրեթե այդքան էլ՝ 70 միլիոն դեսյատին ունեին 30 հազար խոշորագույն կալվածատերեր: Հողի պակասը գյուղացիներին ստիպում էր ստրկական պայմաններով վարձակալել կալվածատերերի հողը: Գյուղացիները հողի համար ամեն տարի վճարում էին ընդամենը մոտ կես միլիարդ ռուբլի ոսկով:*

*Կալվածատիրական ստրկությանը ավելացավ կուլակային ստրկությունը: Կուլակներն իրենց ձեռքում էին կենտրոնացրել ամբողջ գյուղացիական հողի կեսը և քաշող ուժի կեսից ավելին: Կուլակությունը հարստանում էր, իսկ գյուղացիների մասսան՝ աղքատանում: Միայն 19-րդ դարի վերջին տասնամյակում ձիազուրկ և մեկ ձի ունեցող տնտեսությունների թիվը 5,6 միլիոնից ավելացավ և հասավ 6,6 միլիոնի: Վատ բերքն ու սովը գյուղացիների ճնշող մեծամասնության կյանքի մշտական ուղեկիցներն էին: Ամեն տարի ութ-ինն միլիոն գյուղացիական բնակչություն վաստակի էր գնում ֆաբրիկաները, երկաթուղիները կառուցելու, փայտ կտրելու և լաստառաքելու, քաղաքներում ու նավահանգիստներում որպես սևագործ բանվորներ, կուլակների մոտ որպես բատրակներ և օրամշակներ աշխատելու:*

*Իշխանությունների հանդեպ կատարած ամենաչնչին «զանցանքի» և հարկերը ժամանակին չվճարելու համար գյուղացիներին ճիպոտահարում էին և վաճառում նրանց գույքը: Պաշտոնապես ընդհուպ մինչև 1903 թվականը, իսկ փաստորեն ավելի ուշ էլ գյուղացիներին ենթարկում էին մարմնական պատիժների:*

*Խոսելով գյուղացիների կյանքի մասին 1905 թվականի նախօրյակին, Վ. Ի. Լենինը մատնանշում էր.*

*«Հետռեֆորմյան ամբողջ քառասնամյակ է կազմում այդ ապագյուղացիացման համատարած պրոցեսը, դանդաղ, տանջալի մահացման պրոցեսը: Գյուղացին հասցված էր կյանքի մուրացկանային մակարդակի. նա իր անասունների հետ էր ապրում, ցնցոտի հագնում,*



*թելուկով կերակրվում... Գյուղացիները խրոնիկական սով էին ապրում ու տասնյակ հազարներով մեռնում սովից և ավելի ու ավելի հաճախ կրկնվող անբերքությունների ժամանակ ծագող համաճարակներից»* (Երկեր, հատ. 4, էջ 545):

*Կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումը Ռուսաստանում կրկնապատկվում էր ցարական ինքնակալության կամայականությամբ, որը ճզմում էր այն ամենը, ինչ կենդանի էր ու պրոգրեսիվ: Շահագործողների շահերին պահապան էին կանգնած բանակը, ոստիկանությունը, դատարանը, ցարիզմի ողջ պետական սիստեմը:*

*Ճնշման բոլոր՝ կալվածատիրական, կապիտալիստական, ազգային ձևերի զուգակցումը ինքնակալության ոստիկանական բռնակալության հետ անտանելի էր դարձնում ժողովրդական մասսաների դրությունը և առանձնապես սուր ու խոր բնույթ էր հաղորդում դասակարգային հակասություններին: Հասարակական զարգացման արմատական պահանջմունքները, բանվորների և գյուղացիների կենսական շահերը հրամայաբար պահանջում էին ամենից առաջ ոչընչացնել կալվածատերերի, ցարական միապետության տիրապետությունը: Այդ խնդիրները լուծել կարող էր միայն ռևոլյուցիան:*

*Ռևոլյուցիային անմիջականորեն նախորդած տարիներին բանվոր դասակարգի և գյուղացիության քաղաքական ակտիվությունն ու ռևոլյուցիոն տրամադրությունն արագորեն ուժեղանում էին: Պրոլետարիատն այդ տարիներին բացեիբաց իրեն հակադրում է բոլոր շահագործող դասակարգերին և ցարական կառավարությանը, առաջ է քաշում երկրի բոլոր դեմոկրատական ուժերին համախմբող պահանջներ: 1904 թվականին մի շարք արդյունաբերական քաղաքներում տեղի էին ունենում քաղաքական գործադուլներ ու ցույցեր: Դեկտեմբերին բռնկվեց Բաքվի պրոլետարների հզոր գործադուլը, որը ղեկավարում էր բոլշևիկյան կոմիտեն: Գործադուլն ավարտվեց բանվորների հաղթանակով: Բաքվի բանվորների ելույթը համերաշխության գործադուլներ առաջ բերեց Պետերբուրգում և Ռուսաստանի մյուս քաղաքներում:*

*Իր ռևոլյուցիոն ակտիվությամբ բանվոր դասակարգն օրինակ էր ցույց տալիս գյուղացիությանը: Ռուսաստանի տարբեր շրջանների գյուղացիներն ավելի ու ավելի հաճախ էին պայքարի ելնում: Բանվոր դասակարգի և գյուղացիության ելույթները քաղաքական ազդեցություն էին գործում հասարակության մյուս խավերի վրա: 1901—1904 թվականներին ծավալվեց ուսանողական շարժումը՝ քաղաքական ազատությունների պահանջով:*

*Բոլշևիկները պրոլետարիատին սովորեցնում էին ռևոլյուցիայի համար օգտագործել ցարիզմի նկատմամբ օպոզիցիոն կերպով տրամադրված բոլոր տարրերին և միևնույն ժամանակ անշեղորեն մերկացնում էին լիբերալ բուրժուազիայի քաղաքականությունը, ցարական կառավարության հետ համաձայնության գալու նրա ձգտումը:*

*Լեհաստանի, Մերձբալթիկայի, Ֆինլանդիայի, Անդրկովկասի և մյուս շրջանների ազգային բուրժուազիան ցարիզմի նկատմամբ ավելի օպոզիցիոն կերպով էր տրամադրված, քան ռուսական բուրժուազիան, որովհետև ցարական միապետությունը ոչ միայն քաղաքական, ճորտատիրական, այլև ազգային ճնշման կրողն էր: Ճնշված ազգությունների բուրժուազիան կուզենար ազատվել ռուսական ցարիզմից, որպեսզի դրության տեր դառնա և ազատություն տա իր ձեռքերին աշխատավորներին շահագործելու գործում: Բայց կապիտալիզմի*

զարգացման հետևանքով այդ ազգերի ներսում աճում էր բանվոր դասակարգը,
որը դասակարգային պայքար էր մղում ոչ միայն ցարիզմի, այլև «իր» ազ-
գային բուրժուազիայի դեմ: Ուստի Ռուսաստանի ազգային շրջանների բուր-
ժուազիան ծայր աստիճան անհետևողական էր օպոզիցիոնության մեջ և
համաձայնության էր գալիս ցարիզմի հետ: Լեհական խոշոր բուրժուազիան,
ազնվականությունն ու հոգևորականությունը, ձգտելով մանր ռեֆորմներ ձեռք
բերել Լեհաստանի համար, հաշտվում էին ռուսական ցարիզմի հետ, քանի որ
վերջինս պաշտպանում էր նրանց դասակարգային շահերը: Ֆինլանդիայում
բուրժուազիան ու կալվածատերերը, չնայած ֆինն ժողովուրդը ճնշված էր, ընդ-
գծում էին իրենց լոյալությունը ցարիզմի նկատմամբ: Լատվիայում, Լիտվա-
յում, Էստոնիայում ցարական կառավարությունը հենարան ուներ հանձինս
գերմանական կալվածատեր-բարոնների: Նրանցից շատերը, ինչպես և Վրաս-
տանի, Ֆինլանդիայի, Լեհաստանի բուրժուա-կալվածատիրական վերնախավի
ներկայացուցիչները, խոշոր պաշտոններ էին գրավում ցարական կառավարու-
թյան ապարատում:

Միայն բանվոր դասակարգն էր հետևողականորեն պայքարում ամեն տե-
սակ ազգային ճնշման դեմ, ցարիզմի կողմից ճնշված ազգերի լիակատար
ինքնորոշման համար: Ճնշված ազգությունների պրոլետարիատը, հետևելով
ռուս բանվորների օրինակին, ավելի ու ավելի հաճախ էր պայքարի ելնում
ցարիզմի դեմ և հանդես գալիս ճորտատիրական, դասակարգային ու ազգա-
յին ճնշման դեմ:

Ռևոլյուցիոն շարժման աճումը ցարական կառավարությանը հարկադրում
էր փորձեր անել փոքրիկ զիջումներով իր կողմը գրավելու լիբերալ բուրժուա-
զիային: 1904 թվականի վերջին, ինչպես այն ժամանակ էին ասում, «լիբերալ
գարուն» սկսվեց: Կառավարությունը բուրժուազիային ու զեմստվոյի օրգան-
ներին թույլատրեց համագումարներ ու բանկետներ կազմակերպել: Այդ հա-
մագումարներում ու բանկետներում լիբերալ բուրժուազիայի ու կալվածատե-
րերի ներկայացուցիչները ճառեր էին արտասանում կոնստիտուցիայի անհրա-
ժեշտության մասին, այն մասին, թե չէր խանգարի բուրժուազիայի ներկա-
յացուցիչներին մոտեցնել իշխանությանը:

Մենշևիկները հանդես եկան «զեմստվային կամպանիայի» պլանով:
Նրանք բանվորներին կոչ էին անում հաճախել բանկետները, որպեսզի դրդեն
բուրժուազիային ժողովրդի անունից հանդես գալու ցարական կառավարու-
թյան առջև: Դրանով իսկ թողնում էին, որ բանվորները քարշ գան լիբերալ
բուրժուազիայի պոչից:

Ի հակակշիռ դրան, բոլշևիկները բանվորներին կոչ էին անում ոչ թե
գնալ լիբերալների բանկետները, այլ՝ փողոցները, պայքարող բոլոր ռևոլյու-
ցիոն ուժերի գլուխն անցած դուրս գալ ցույցերի ընդդեմ ինքնակալության:
Այսպիսով, 1905 թվականի նախօրյակին խիստ խորացան բոլշևիկների և մեն-
շևիկների միջև եղած տարաձայնությունները: Կազմակերպական հարցերի վե-
րաբերյալ տարաձայնություններին, որ ծագել էին II համագումարում և շա-
րունակում էին սրվել, ավելացան տակտիկայի բնագավառում, աճած ռևո-
լյուցիոն շարժման մեջ պարտիայի գիծը որոշելու հարցում եղած տարաձայ-
նությունները:

1904 թվականի հունվարին Ճապոնիայի դեմ բռնկված պատերազմը սրեց
հասարակական կյանքի բոլոր հակասությունները Ռուսաստանում և արա-



գցրեց ռևոլյուցիոն իրադարձությունները: Ռուս-ճապոնական պատերազմը
իմպերիալիզմի սկսված դարաշրջանի առաջին պատերազմներից մեկն էր:
Նրա հիմնական պատճառը ճապոնական և ռուսական իմպերիալիզմի շահերի
բախումն էր: Ճապոնիայի կառավարող դասակարգերը տարիներ շարունակ
կողոպտում էին Չինաստանը: Ճապոնիան ձգտում էր զավթել Կորեան ու Ման-
ջուրիան, ամրանալ ասիական մայր ցամաքում: Ցարիզմը, որը Լենինը բնու-
թագրել է որպես «ռազմա-ֆեոդալական իմպերիալիզմ», իր հերթին զավթո-
ղական քաղաքականություն էր իրականացնում Հեռավոր Արևելքում: Պատե-
րազմից քիչ առաջ գրավվեց Լյաոդունի թերակղզին, ուժեղացավ ճնշումը Կո-
րեայի վրա: Կորեայի սահմանի մոտ կոնցեսիաներ էին ստեղծվում հանուն
ցարի ու նրա մերձավոր մարդկանց շահամոլական ձգտումների: Ռուսաստա-
նի բուրժուազիան նոր շուկաներ էր որոնում:

Կանխատեսելով ընդհարումը իմպերիալիստական մյուս պետությունների
հետ, Ճապոնիան ուժգին թափով պատրաստվում էր պատերազմի: Ռուսաս-
տանը պատերազմի համար պատրաստ չէր, բայց ցարիզմը շտապում էր սան-
ձազերծել այն՝ վերահաս ռևոլյուցիան կասեցնելու համար: Ցարիզմի հաշիվ-
ներով Ճապոնիայի դեմ տարած «հեշտ» հաղթանակը պետք է բերեր նոր գա-
ղութներ, վաճառահանության նոր շուկաներ, բարձրացներ ինքնակալության
վարկը և օգներ ճնշելու ռևոլյուցիոն շարժումը երկրում:

Բայց ցարիզմի հաշիվները չարդարացան: Ճապոնական իմպերիալիստ-
ները, իրենց հմուտ հետախուզության շնորհիվ գիտենալով, որ ցարական բա-
նակն ու նավատորմն անպատրաստ են, հանկարծակի հարձակվեցին ռուսա-
կան խաղաղօվկիանոսյան էսկադրայի և Պորտ-Արտուր բերդի վրա: Նրանք
Ռուսաստանի ռազմական ուժերին ծանր հարված հասցրին Հեռավոր Արե-
վելքում:

Ռուսական զորքերը խիզախորեն էին կռվում: Բայց ցարական բանակը,
անպատրաստ լինելով պատերազմին, ղեկավարվելով բթամիտ ու տգետ գե-
ներալների (Կուրոպատկինի նման) և ծովակալների (Ռոժեստվենսկու նման)
կողմից, մեկ պարտություն մյուսի հետևից էր կրում: Խաղաղօվկիանոսյան
առաջին և երկրորդ էսկադրաների ջախջախումը, ցամաքային բանակի պար-
տությունը Մուկդենի մոտ, Պորտ-Արտուրի անկումը վկայում էին, որ պատե-
րազմը տանուլ է տրված: Ցարական ինքնակալությունը խայտառակ պարտու-
թյուն կրեց:

Պատերազմի կապակցությամբ ՌՍԴԲՊ-ի առջև առաջին անգամ ծառացավ
այն հարցը, թե ինչ վերաբերմունք պետք է ունենա բանվոր դասակարգը դե-
պի սեփական երկրի կառավարության վարած իմպերիալիստական պատերազ-
մը: Լենինը, բոլշևիկները այդ մասին տվեցին պարզորոշ պատասխան: Պա-
տերազմը մղվում է ոչ թե Ռուսաստանի և Ճապոնիայի ժողովուրդների օգտին,
այլ մի կողմից՝ ցարական ինքնակալության ու ռուսական իմպերիալիզմի և
մյուս կողմից՝ ճապոնական իմպերիալիզմի ու Ճապոնիայի կառավարող դա-
սակարգերի օգտին: Ուստի բոլշևիկները հանդես էին գալիս պատերազմի
դեմ, ժողովրդին պարզաբանում էին նրա անարդարացի բնույթը, կոչ էին
անում պայքարել պատերազմը վարող ինքնակալության դեմ:

Սոցիալ-դեմոկրատական բոլոր պարտիաներից միայն բոլշևիկներն էին,
որ հանդես եկան իմպերիալիստական պատերազմում սեփական երկրի կա-
ռավարության պարտության լոզունգով: Բոլշևիկներն ապացուցում էին, որ

*պատերազմում ցարիզմի պարտությունը ժողովրդի պարտություն չի նշանակում, այլ, ընդհակառակը, կծառայի ժողովրդի օգտին: Ցարիզմի պարտությունը ռևոլյուցիայի վերելք առաջ կբերի Ռուսաստանում, կօգնի ցարիզմի տապալմանը և ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակին:*

> *«Ռուսական ազատության և սոցիալիզմի համար ռուսական (ու համաշխարհային) պրոլետարիատի մղած պայքարի գործը,— գրում էր Լենինը,— շատ մեծ չափով կախված է ինքնակալության ռազմական պարտություններից»* (Երկեր, հատ. 8, էջ 48—49):

*Տեղական բոլշևիկյան կազմակերպությունները լենինյան այդ գծին համապատասխան՝ աշխատանք էին տանում բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի, բանակ կանչված զինվորների շրջանում: Նրանք լույս էին ընծայում պրոկլամացիաներ ու թռուցիկներ, որոնց մեջ պարզաբանվում էին պատերազմի իսկական նպատակները, մերկացվում էր ցարական ինքնակալությունը: Բոլշևիկները կոչ էին անում պայքար մղել պատերազմի և ցարիզմի դեմ: Ռուս-ճապոնական պատերազմում բոլշևիկների բռնած ռևոլյուցիոն-մարքսիստական դիրքը նախապատրաստեց այն, որ նրանք ճիշտ գիծ մշակեցին 1914—1918 թվականների իմպերիալիստական պատերազմում:*

*Այլ դիրք էին գրավում մենշևիկները: Նրանք հանդես էին գալիս «հաշտություն ինչ գնով էլ լինի» լոզունգով, դա չկապելով ինքնակալության դեմ մղվող պայքարի հետ: Դրանով իսկ մենշևիկներն իրենց համար բացահայտ պաշտպանողական պլատֆորմա նախապատրաստեցին 1914—1918 թվականների պատերազմում:*

*Սկզբից ևեթ պատերազմը ժողովրդականություն չէր վայելում Ռուսաստանում: Ռևոլյուցիոն և դեմոկրատական բոլոր խավերը հասկանում էին, որ ռուսական բանակի պարտությունը ոչ միայն ռազմական կազմակերպության, այլև ամբողջ ինքնակալական կարգի փտածության արդյունք է: Ճապոնիայի դեմ մղած պատերազմում կրած պարտությունը ուժգին հարված հասցրեց ցարական կառավարության հեղինակությանը:*

*Ռուս-ճապոնական պատերազմը նոր թշվառություններ բերեց աշխատավոր ժողովրդին: Պատերազմն արագորեն քայքայեց տնտեսությունը, կաթվածեց տրանսպորտը, դատարկեց պետական գանձարկղը:*

*Պատերազմի հետևանքով երկրում աճեց թանկությունը: Բանվորների ռեալ աշխատավարձը իջավ գրեթե 25 տոկոսով: Միևնույն ժամանակ բուրժուական վերնախավն ու ինտենդանտական պաշտոնյաները շլված շահույթներ էին կորզում: Գյուղում զորահավաքը գյուղացիական ընտանիքներին զրկում էր աշխատողներից, հարուցում գյուղացիների տրտունջն ու դժգոհությունը: Պատերազմը այն վերջին կաթիլն էր, որը լցրեց ժողովրդի համբերության բաժակը: Երկրում հասունացել էր ռևոլյուցիոն խոր ճգնաժամ:*

*Ցարական կառավարությունը ջանում էր բոլոր միջոցներով կասեցնել աճող ռևոլյուցիոն շարժումը: Այդ նպատակով նա փորձում էր օգտագործել բոլոր, այդ թվում նաև ամենաստոր միջոցները: 1904 թվականին Գապոն քահանան Պետերբուրգի բանվորների մեջ ստեղծեց զուբատովյան կազմակերպության նման մի կազմակերպություն: 1905 թվականի հունվարի սկզբին, երբ սկսվեց Պուտիլովի գործարանի բանվորների գործադուլը, որին աջակցում էին մյուս գործարանների բանվորները, Գապոնը պահնորդական բաժանմուն-*



*քի առաջադրանքով առաջարկեց բանվորների երթ կազմակերպել դեպի Ձմեռային պալատը՝ ցարին խնդրագիր հանձնելու համար:*

*Բոլշևիկները չկարողացան արգելք հանդիսանալ դրան: ՌՍԴԲՊ II համագումարից հետո մենշևիկների պառակտիչ գործունեության հետևանքով Պետերբուրգում գոյություն ուներ երեք սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն՝ Պետերբուրգի բոլշևիկյան կոմիտեն, մենշևիկների Պետերբուրգի խումբը և հաշտվողականների խումբը: Սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների այդպիսի վիճակը բացասաբար էր անդրադառնում մայրաքաղաքի բանվորական շարժման վրա:*

*Բոլշևիկները մերկացնում էին գապոնյան պրովոկացիոն դիտավորությունը և նախազգուշացնում էին, որ ցարը կարող է արյունալի դատաստան տեսնել բանվորների հետ: Պետերբուրգի կոմիտեի թռուցիկում ասված էր.*

> *«Ազատությունը գնվում է արյունով, ազատությունը նվաճվում է զենքը ձեռքին, դաժան մարտերում: Ոչ թե խնդրել ցարին, և նույնիսկ ոչ թե պահանջել նրանից, ոչ թե ստորանալ մեր երդվյալ թշնամու առաջ, այլ գահընկեց անել նրան... Բանվորների ազատագրումը կարող է լինել միայն իրենց՝ բանվորների գործը, ո՛չ տերտերներից, ո՛չ էլ ցարերից դուք ազատություն չեք ստանա... Կորչի՛ պատերազմը: Կորչի՛ ինքնակալությունը: Կեցցե՛ ժողովրդի զինված ապստամբությունը: Կեցցե՛ ռևոլյուցիան»:*

*Բոլշևիկների ազդեցության տակ, որոնք մասնակցում էին բանվորական ժողովներին, պետիցիայում մտցվեցին քաղաքական ամնիստիայի, քաղաքական ազատության, ժողովրդի առաջ մինիստրների պատասխանատվության, օրենքի առաջ բոլորի հավասարության, կապիտալի դեմ աշխատանքի պայքարի ազատության, պետությունից եկեղեցու անջատման, ութժամյա աշխատանքային օրվա և մի շարք այլ պահանջներ, որոնք համընկնում էին սոցիալ-դեմոկրատական ծրագրի հետ: Պետիցիան վերջանում էր աշխատավորների դրության ամբողջ ծանրությունն արտահայտող հետևյալ խոսքերով. «Հասել է համբերության սահմանը: Մեզ համար հասել է այն սարսափելի մոմենտը, երբ ավելի լավ է մեռնել, քան շարունակել անտանելի տանջանքները... Մենք ունենք միայն երկու ուղի՝ կա՛մ դեպի ազատություն ու երջանկություն, կա՛մ դեպի գերեզման...»:*

*Բայց այն ժամանակ բանվորների մեծ մասը դեռ հավատում էր ցարին: Կիրակի, հունվարի 9-ին, Պետերբուրգի ավելի քան 140 հազար բանվորներ խաչվառներով, սրբապատկերներով և ցարի պատկերներով խաղաղ երթով գնացին դեպի Ձմեռային պալատ:*

*Բոլշևիկների նախազգուշացումներն արդարացան: Անզեն բանվորներին, նրանց կանանց ու երեխաներին զորքերը ցարի հրամանով դիմավորեցին հրացանային համազարկերով, թրերով ու մտրակներով: Հազարից ավելի մարդ սպանվեց, մոտ հինգ հազար մարդ վիրավորվեց:*

*Զայրույթի փոթորիկը համակեց մայրաքաղաքի աշխատավոր բնակչությանը: «Մենք այլևս ցար չունենք»—գոչում էին գազանային դատաստանից ցնցված հազարավոր մարդիկ: Բանվորներն սկսեցին զինվել: Հենց այդտեղ էլ՝ Պետերբուրգի փողոցներում, նրանք հերոսաբար ետ էին մղում զինվորների և կազակների գրոհները:*

*Հունվարի 9-ի օրն այդ ժամանակվանից կոչվում է «Արյունոտ կիրակի»:*

Այդ օրը մեծ նշանակություն ունեցավ Ռուսաստանի բանվորների քաղաքական զարթոնքի համար: Նրանք հասկացան, թե ո՛ւմ շահերն են պաշտպանում ցարն ու ցարական կառավարությունը: Ցարի նկատմամբ բանվորների հավատը գնդակահարվեց: Լ պատասխան Ձմեռային պալատի մոտ տեղի ունեցած գնդակոծության ամբողջ երկրով մեկ բողոքի գործադուլների ալիք անցավ: Հունվարի 10-ին Պետերբուրգում շարունակվում էին բանվորների զինված ընդհարումները զորքերի հետ: Հունվարի 10-ին Մոսկվայում ընդհանուր գործադուլ սկսվեց: Ռիգայի պրոլետարիատը հունվարի 13-ին գործադուլ հայտարարեց և քաղաքական ցույցի դուրս եկավ: Ոստիկանության հետ տեղի ունեցած ընդհարումների ժամանակ սպանվեց 70 մարդ, վիրավորվեց մոտ 200 մարդ: Հունվարի 14-ին ընդհանուր գործադուլ բռնկեց Վարշավայում: Հունվարի 18-ին Թիֆլիսում սկսված ընդհանուր գործադուլը Անդրկովկասի քաղաքներում տեղի ունեցած քաղաքական գործադուլների ժամանակաշրջանի սկիզբը դրեց:

Ստանալով հունվարի 9-ի իրադարձությունների առաջին լուրերը, Լենինը գրում էր.

> «Բանվոր դասակարգը քաղաքացիական պատերազմի մեծ դաս ստացավ. պրոլետարիատի ռևոլյուցիոն դաստիարակությունը մեկ օրում այնպես առաջ գնաց, ինչպես այն չէր կարողանա գնալ գորշ, առօրյա, խղճուկ կյանքի ամիսների ու տարիների ընթացքում: Պետերբուրգի հերոսական պրոլետարիատի «մահ կամ ազատություն» լոզունգն այժմ արձագանքում է ամբողջ Ռուսաստանով մեկ» (Երկեր, հատ. 8, էջ 106):

1905 թվականի հունվարի 9-ը ամբողջ երկրում բանվորական մասսաներին պայքարի հանեց ցարիզմի դեմ: Միայն 1905 թվականի հունվարի ընթացքում գործադուլ արեցին 440 հազար բանվորներ, այսինքն՝ ավելի շատ, քան նախընթաց ամբողջ 10 տարվա ընթացքում:

Հունվարի 9-ից հետո իրադարձությունները ծավալվում էին բուռն թափով: Երկրում ռևոլյուցիա սկսվեց:

1905 թվականի մայիսի 1-ին «Կորչի՛ ինքնակալությունը» լոզունգով քաղաքական գործադուլներ են տեղի ունենում Ռուսաստանի գրեթե 200 քաղաքներում: Լեհաստանի քաղաքներում մայիսմեկյան գործադուլներն ու ցույցերն ավարտվեցին խոշոր զինված ընդհարումով զորքերի հետ: Բաքվի գործադուլը շարունակվեց երկու շաբաթ:

Պրոլետարական պայքարը ռևոլյուցիոն խմորում առաջ բերեց հարյուր միլիոնանոց գյուղացիական մասսայի խորքերում: Արդեն 1905 թվականի փետրվարին ագրարային հուզումներ են սկսվում Օրյոլի, Վորոնեժի, Կուրսկի նահանգներում: Գյուղացիական ելույթներն ընդգրկում են նահանգ նահանգի հետևից: Գարնանից սկսվեցին կալվածատիրական հողերի ինքնակամ հերկումը, անտառների արածեցումը կալվածատիրական դաշտերում, մարգագետինների գրավումը: Շարժումն առանձնապես ուժեղ էր Պովոլժիեում, Մերձբալթյան երկրամասում, Անդրկովկասում, Լեհաստանում: Գյուղերում կազմակերպվում էին ժողովներ, ցույցեր: 1905 թվականի գարնանը մի շարք վայրերում տեղի ունեցան գյուղատնտեսական բանվորների գործադուլներ, որոնք կազմակերպել էին սոցիալ-դեմոկրատները:



## 2. ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԲՆՈՒՅԹԻ, ՇԱՐԺԻՉ ՈՒԺԵՐԻ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ: ՊԱՐՏԻԱՅԻ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ:

Բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն պայքարը հաջող ղեկավարելու համար վճռական նշանակություն ունեին պարտիայի ամրապնդումն ու նրա գիծը ռևոլյուցիայի մեջ: Բայց այդ ժամանակ մենշևիկների կազմալուծիչ գործունեության հետևանքով ՌՍԴԲՊ-ն պառակտված էր: II համագումարից հետո պարտիան խոր ճգնաժամ էր ապրում, որի հիմքը, ինչպես մատնանշում էր Լենինը, այն էր, որ «II համագումարի փոքրամասնությունը համառորեն չէր ուզում ենթարկվել նրա մեծամասնությանը» (Երկեր, հատ. 8, էջ 562):

Լենինը ձգտում էր շուտափույթ կերպով հրավիրել III համագումար, որտեղ պետք էր մշակել պարտիայի տակտիկան սկսված ռևոլյուցիայի մեջ և համախմբել պարտիային ՌՍԴԲՊ ծրագրի հիման վրա:

Համագումար էին հրավիրվել ՌՍԴԲՊ բոլոր կազմակերպությունները, բայց մենշևիկները հրաժարվեցին համագումարի աշխատանքներին մասնակցելուց և առանձին հավաքվեցին Ժնևում: Մասնակիցների փոքրաթիվ լինելու պատճառով (ներկա էին ընդամենը 9 կոմիտեների պատգամավորներ) նրանք չհամարձակվեցին իրենց ժողովը համագումար անվանել և այն անվանեցին պարտիական աշխատողների կոնֆերենցիա:

III համագումարը տեղի ունեցավ Լոնդոնում, 1905 թվականի ապրիլի 12-ից մինչև 27-ը: Այնտեղ ներկա էին 38 պատգամավորներ՝ բոլշևիկյան 20 կոմիտեների ներկայացուցիչները, գլխավորապես խոշոր արդյունաբերական կենտրոններից: Համագումարը տեղի ունեցավ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ: Մասնակիցների թվում էին՝ Մ. Գ. Ցխակայան, Վ. Վ. Վորովսկին, Մ. Մ. Լիտվինովը, Ա. Վ. Լունաչարսկին, Ա. Ա. Բոգդանովը, Ն. Կ. Կրուպսկայան, Ռ. Ս. Զեմլյաչկան և ուրիշներ:

Համագումարը քննության առավ ծավալվող ռևոլյուցիայի արմատական խնդիրհարցերը և որոշեց պրոլետարիատի՝ որպես ռևոլյուցիայի առաջնորդի, խնդիրները: Քննարկվեցին զինված ապստամբության, հեղաշրջման նախօրյակին ժամակառավարության քաղաքականությանը ցույց տալիք վերաբերմունքի, ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությանը, գյուղացիական շարժմանը ցույց տալիք վերաբերմունքի, պարտիայի պառակտված մասի (մենշևիկների), ՌՍԴԲՊ քաղաքական բացահայտ ելույթի և այլ հարցեր:

> «Ռուսաստանում պրոլետարիատը,— ասված էր ՌՍԴԲՊ III համագումարի՝ Լենինի գրած ծանուցման մեջ,— կկարողանա իր պարտքը մինչև վերջը կատարել:Նա կկարողանա ժողովրդական զինված ապստամբության գլուխ կանգնել: Նա չի վախենա ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությանը մասնակցելու դժվարին խնդրից, եթե այդ խնդիրը նրան վիճակվի: Նա կկարողանա ետ մղել հակառևոլյուցիոն բոլոր փորձերը, անխնա կերպով ճզմել ազատության բոլոր թշնամիներին, կրծքով պաշտպանել դեմոկրատական ռեսպուբլիկան, ռևոլյուցիոն ուղիով հասնել մեր ամբողջ մինիմում-ծրագրի իրագործման: Ոչ թե պետք է սարսափեն, այլ պետք է կրքոտ կերպով ցանկանան այս ելքը Ռուսաստանի պրոլետարները: Հաղթելով առաջիկա դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ, մենք դրանով մի հսկայական առաջընթաց քայլ կանենք դեպի մեր սոցիալիստական նպատակը, ամբողջ Եվրոպայի վրայից

*մենք դեն կշպրտենք ռեակցիոն զինվորական տերության լուծը և մեր եղբայրներին, ամբողջ աշխարհի գիտակից բանվորներին... մենք կօգնենք ավելի արագ, ավելի վճռական և ավելի համարձակ կերպով գնալու դեպի սոցիալիզմ»* (նույն տեղը, էջ 557):

*III համագումարի նշած ստրատեգիական պլանն այն էր, որ ռևոլյուցիայի առաջին էտապում պրոլետարիատը, դաշնակցելով ամբողջ գյուղացիության հետ, մեկուսացնելով բուրժուազիային, պետք է պայքարի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի* հաղթանակի՝ *ինքնակալությունը տապալելու և դեմոկրատական ռեսպուբլիկա հաստատելու, ճորտատիրության բոլոր մնացորդները լիկվիդացնելու համար։ Ընդ որում բանվոր դասակարգը պետք է ոչ միայն ամենաանմիջական մասնակցություն ցույց տա նրան, ոչ միայն անձնվիրաբար պայքարի նրա հաղթանակի համար, այլև գլխավորի ռևոլյուցիան, իսկ հաջորդ էտապում պայքարի, որ այդ ռևոլյուցիան անհապաղ վերաճի սոցիալիստական ռևոլյուցիայի։*

*Ռուսաստանի բուրժուազիան անընդունակ էր գլխավորելու ռևոլյուցիան և մինչև վերջ հասցնելու այն, քանի որ նա շահագրգռված չէր ինքնակալության տապալումով, այլ ձգտում էր միայն սահմանափակել նրա իշխանությունը և պատրաստ էր գործարք կնքել ցարիզմի հետ։ Նրան ձեռնտու էր պահպանել միապետությունը, ճորտատիրության մնացորդները, որպեսզի հենվի նրանց վրա ընդդեմ պրոլետարիատի։ Բանվոր դասակարգի դաշնակիցը կարող էր լինել միայն գյուղացիությունը, որը ձգտում էր վերջ տալ ճորտատիրության մնացորդներին գյուղում, ստանալ կալվածատիրական հողը և ազատվել ցարական ու կալվածատիրական ստրկությունից։ Գյուղացիությունը դրան կարող էր հասնել միայն ռևոլյուցիայի լիակատար հաղթանակի հետևանքով։*

*Այդ ստրատեգիական պլանին համապատասխան՝ համագումարը մշակեց նաև պարտիայի տակտիկական գիծը, պարտիայի և բանվոր դասակարգի գլխավոր ու անհետաձգելի խնդիրը համարելով* զինված ապստամբության *կազմակերպումը։ Ելնելով համադեմոկրատական ռևոլյուցիոն շարժման մեջ պրոլետարիատի ղեկավար դերից, համագումարը մատնանշեց, որ «զինված ապստամբության միջոցով ինքնակալության դեմ անմիջական պայքար մղելու համար պրոլետարիատին կազմակերպելու խնդիրը պարտիայի ամենագլխավոր և անհետաձգելի խնդիրներից մեկն է ներկա ռևոլյուցիոն մոմենտում»* («ՍՄԿՊ-ն.... բանաձևերում», I մ., էջ 94): *Պարտիական բոլոր կազմակերպություններին առաջարկվում էր ագիտացիայի ու պրոպագանդայի միջոցով պրոլետարիատին պարզաբանել առաջիկա զինված ապստամբության ոչ միայն քաղաքական նշանակությունը, այլև նրա գործնական-կազմակերպական կողմը։*

*Համագումարը նշեց մասսայական քաղաքական գործադուլների հատուկ դերը ապստամբության նախօրյակին և նրա ընթացքում։ Համագումարը հանձնարարեց ամենաեռանդուն միջոցներ ձեռք առնել պրոլետարիատի մարտական ուժերը կազմակերպելու համար, նախօրոք մշակել զինված ապստամբության պլանը, ինչպես նաև միջոցներ ձեռք առնել ապստամբությունն անմիջականորեն ղեկավարելու համար, դրա համար պարտիական աշխատողներից ստեղծելով հատուկ խմբեր։*

*Համագումարում քննարկված տակտիկական գլխավոր հարցերից մեկը ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության հարցն էր, որը պետք է ստեղծ-*



*վեր ցարիզմի տապալման և ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով։ Բոլշևիկները գտնում էին, որ ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը պետք է լինի հաղթանակած դասակարգերի դիկտատուրայի կառավարություն, այսինքն՝* պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրա:

*Բացառիկ նշանակություն տալով գյուղացիական հարցին, համագումարը*
*որոշեց պարտիայի գիծը գյուղացիական շարժման նկատմամբ՝ ռևոլյուցիոն*
*ալիքի բարձրացման պայմաններում։ «Օտրեզկաները» գյուղացիներին վերա-*
*դարձնելու պահանջի փոխարեն, որ ընդունել էր ՌՍԴԲՊ II համագումարը, III*
*համագումարը առաջ քաշեց կալվածատիրական, պետական, եկեղեցական,*
*վանքապատկան և արքունական հողերի բռնագրավման (այսինքն՝ գյուղա-*
*ցիների օգտին անհատույց օտարելու) պահանջը։ Այդ պահանջի մեջ իր կոնկ-*
*րետ արտահայտությունն էր գտնում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի*
*մեջ բանվոր դասակարգի և ամբողջ գյուղացիության դաշինքի վերաբերյալ*
*բոլշևիկների գիծը։ Եվ դա նպաստում էր այն պայքարի ծավալմանը, որ գյու-*
*ղացիությունը մղում էր ինքնակալական-կալվածատիրական կարգի դեմ։ Հա-*
*մագումարը կոչ արեց ամենուրեք և անհապաղ ռևոլյուցիոն գյուղացիական*
*կոմիտեներ ստեղծել և ռևոլյուցիոն-դեմոկրատական բարեփոխություններ կա-*
*տարել ներքևից։ Պարտիական բոլոր կազմակերպություններին առաջարկվում*
*էր նաև «ձգտել գյուղական պրոլետարիատի ինքնուրույն կազմակերպմանը,*
*նրան քաղաքային պրոլետարիատի հետ միաձուլելուն սոցիալ-դեմոկրատա-*
*կան պարտիայի դրոշի տակ և նրա ներկայացուցիչներին գյուղացիական կո-*
*միտեների մեջ ընտրելուն»* («ՍՄԿՊ-ն... բանաձևերում» I մ., էջ 99):

*Այսպես էին բոլշևիկները շարժման մեջ դնում գյուղացիական հսկայա-*
*կան ռեզերվները, որոնք քաղաքային պրոլետարիատի հետ միասին և նրա ղե-*
*կավարությամբ պետք է պայքարեին ինքնակալության դեմ։*

*«Պարտիայի պառակտված մասի վերաբերյալ» բանաձևում համագումա-*
*րը դատապարտեց մենշևիկների օպորտունիստական հայացքները ոչ միայն*
*կազմակերպական, այլև տակտիկական հարցերում։ Միևնույն ժամանակ, հաշ-*
*վի առնելով ծավալվող ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի ուժերը միավորելու*
*կենսական անհրաժեշտությունը, համագումարը թույլատրելի համարեց, որ*
*պարտիական կազմակերպությունների աշխատանքին մասնակցեն պարտիայի*
*այն անդամները, հատկապես բանվորները, որոնք հարել էին մենշևիկներին,*
*բայց այն պայմանով, որ նրանք ենթարկվեն պարտիական համագումարների*
*որոշումներին ու կանոնադրությանը, ենթարկվեն պարտիական կարգապահու-*
*թյանը։ Համագումարը հանձնարարեց Կենտրոնական Կոմիտեին՝ ցրել մեն-*
*շևիկյան այն կազմակերպությունները, որոնք կհրաժարվեն ճանաչել III հա-*
*մագումարի որոշումները։*

*III համագումարը վերացրեց կանոնադրության առաջին պարագրաֆի այն*
*ձևակերպումը, որ ընդունվել էր II համագումարում, Մարտովի առաջարկու-*
*թյամբ, և կանոնադրության առաջին պարագրաֆն ընդունեց լենինյան ձևա-*
*կերպումով։ Դա չափազանց կարևոր նշանակություն ունեցավ նոր տիպի պար-*
*տիայի ամրապնդման համար մղվող հետագա պայքարում։ Այսպիսով, լենին-*
*յան կազմակերպական կարևորագույն սկզբունքներից մեկը ամրապնդվեց*
*ՌՍԴԲՊ կանոնադրության մեջ։*

*Համագումարը վերացրեց երկկենտրոնության (Կենտօրգան և ԿՕ) սխտեմը*

պարտիայի մեջ և ընտրեց մեկ միասնական ղեկավար կենտրոն՝ ի դեմս Կենտրոնական Կոմիտեի։ Նկատի ունենալով, որ «Իսկրա»-ն ընկել էր մենշևիկների ձեռքը և վարում էր օպորտունիստական գիծ, III համագումարը հանձնարարեց Կենտկոմին ստեղծել նոր կենտրոնական օրգան՝ «Պրոլետարի» անունով։ «Պրոլետարի»-ի խմբագիր ընտրվեց Լենինը։

Ռևոլյուցիայի բնույթի, շարժիչ ուժերի և խնդիրների գնահատականի բոլոր հարցերում միանգամայն այլ դիրք գրավեցին մենշևիկներն իրենց Ժնևի կոնֆերենցիայում։ Նրանց կարծիքով, ռևոլյուցիան Ռուսաստանում, ինչպես և նախկին բուրժուական ռևոլյուցիաները Արևմտյան Եվրոպայում, պետք է տեղի ունենա բուրժուազիայի ղեկավարությամբ և հաղթելու դեպքում հանգեցնի բուրժուազիայի տիրապետությանը։

Մենշևիկները ժխտում էին պրոլետարիատի ինքնուրույն խնդիրները ռևոլյուցիայի մեջ։ Նրանք գտնում էին, թե բանվորների գործն է՝ աջակցել բուրժուազիային, թույլ չտալ, որ նա մասսաների վճռական ռևոլյուցիոն գործողությունների հետևանքով ետ քաշվի ռևոլյուցիայից։ Նրանք պայքարում էին ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի ղեկավար դերի դեմ և ժխտում էին գյուղացիության ռևոլյուցիոն դերը։

Մենշևիկներն առանձնապես եռանդուն կերպով հանդես էին գալիս զինված ապստամբության կազմակերպման դեմ, մի բան, որ լիովին համապատասխանում էր բանվորական շարժման մեջ նրանց օպորտունիստական «տարերայնության տեսությանը» և ռևոլյուցիայի մեջ պարտիայի ակտիվ ռևոլյուցիոն դերի ժխտմանը։ Ապստամբությունը, ասում էին նրանք, տարերային պրոցես է և այն անհնարին է նախապատրաստել։ Պլեխանովը, Աքսելրոդը, Մարտովը և մենշևիկների մյուս լիդերներն ապացուցում էին, թե ապստամբությունը կարող է միայն վախեցնել բուրժուազիային և թե բանվոր դասակարգի պարտիայի գործը չէ զբաղվել դրա նախապատրաստումով։ Այդ տեսակետից, ինչպես և իրենց ամբողջ գծում, մենշևիկները գրավում էին հիմնականում նույն դիրքը, ինչ և II Ինտերնացիոնալի օպորտունիստները։

ՌՍԴԲՊ III համագումարը սկսված ռևոլյուցիայի մեջ պարտիայի դիծը մշակեց առանց մենշևիկների և նրանց դեմ մղած պայքարում։ Բոլշևիկները փաստորեն գոյություն ունեին որպես առանձին պարտիա՝ իրենց ծրագրով, կանոնադրությամբ, տակտիկական գծով, առանձին կազմակերպություններով, իրենց թերթերով ու Կենտրոնական Կոմիտեով։ Երկու համագումար՝ երկու պարտիա—այսպես բնութագրեց Վ. Ի. Լենինը ՌՍԴԲՊ մեջ տիրող դրությունը 1905 թվականին։

III համագումարի որոշումները, պարտիայի ստրատեգիական պլանն ու տակտիկական գիծը բազմակողմանի տեսական հիմնավորում ստացան Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» գրքում։ Այս աշխատությունը, որ խոշոր ավանդ մտցրեց գիտական սոցիալիզմի տեսության մեջ, գրվեց 1905 թվականի հունիս-հուլիսին։

Վ. Ի. Լենինը մարքսիզմի պատմության մեջ առաջին անգամ մշակեց իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի առանձնահատկությունների, նրա շարժիչ ուժերի ու հեռանկարների հարցը։ Դրա հետ մեկտեղ Լենինը ոչնչացնող քննադատության ենթարկեց մենշևիկների՝ մարքսիզմի թշնամի օպորտունիստական դիրքորոշումները ռևոլյուցիայի մեջ պարտիայի տեսության, ստրատեգիայի ու տակտիկայի հարցերում, ինչպես



նաև II Ինտերնացիոնալի լիդերների ռեֆորմիստական դիրքորոշումները, լիդերներ, որոնց աջակցությունն էին վայելում մենշևիկները։

Իր բնույթով ու խնդիրներով Ռուսաստանում սկսված ռևոլյուցիան բուրժուական էր, այսինքն՝ նպատակ էր հետապնդում վերացնել ճորտատիրական կարգերի մնացորդները, լիկվիդացնել ցարական ինքնակալությունը։ Այդ ռևոլյուցիան անմիջականորեն խնդիր չէր դնում լիկվիդացնել կապիտալիստական կարգը։ Սակայն բուրժուական ռևոլյուցիան Ռուսաստանում, մատնանշում էր Լենինը, ուներ մի շարք նոր գծեր ու առանձնահատկություններ, որոնք նրան արմատապես տարբերում էին վեր ելնող կապիտալիզմի դարաշրջանի արևմտաեվրոպական անցյալ բուրժուական ռևոլյուցիաներից։

Ռուսական ռևոլյուցիայի մեջ, ինչպես այդ ցույց տվեց Վ. Ի. Լենինը, ի տարբերություն Արևմուտքի բուրժուական ռևոլյուցիաների, որպես գլխավոր շարժիչ ուժ և առաջնորդ պետք է հանդես գա պրոլետարիատը։ Իր բնույթով լինելով բուրժուա-դեմոկրատական, ռևոլյուցիան պրոլետարական էր՝ նրա մեջ պրոլետարիատի ղեկավար դերի և ինքնակալության դեմ մղվող պայքարի եղանակների տեսակետից (գործադուլներ և զինված ապստամբություն)։

Դրա հետ միասին դա գյուղացիական ռևոլյուցիա էր, որովհետև հիմնական հարցը կալվածատիրական հողատիրության լիկվիդացումն էր։ Գյուղացիությունն այդ ռևոլյուցիայի շարժիչ ուժերից մեկն էր, պրոլետարիատի մերձավոր դաշնակիցը, որովհետև նա միայն բանվոր դասակարգի ղեկավարությամբ կարող էր ստանալ կալվածատիրական հողը, ազատագրվել ինքնակալության և կալվածատերերի ճնշումից։

Ինչ վերաբերում է Ռուսաստանի բուրժուազիային, ապա նրա շահերը սերտորեն միահյուսվում էին ցարիզմի շահերի հետ։ Վախեցած լինելով պրոլետարիատի ռևոլյուցիոնությունից, նա, ի տարբերություն արևմտաեվրոպական բուրժուազիայի, ռևոլյուցիայի շարժիչ ուժը չէր և չէր էլ կարող լինել։ Ռևոլյուցիոն շարժման աճմանը զուգընթաց ռուսական բուրժուազիան ուղղակի համաձայնության մեջ մտավ ցարիզմի հետ, ավելի ու ավելի անցնելով հակառևոլյուցիայի լագերը։ Ցարիզմի հետ համաձայնություն կնքելու միջոցով նա փորձում էր տիրել գյուղացիությանը և լիկվիդացնել ռևոլյուցիան։

> «Բուրժուական ռևոլյուցիայի հաղթանակը մեզանում անհնարին է իբրև բուրժուազիայի հաղթանակ,— գրում էր Լենինը։— Այդ թվում է պարադոքսալ, բայց այդ փաստ է։ Գյուղացիական բնակչության գերակշռությունը, նրա սոսկալի ճնշվածությունը ճորտատիրական (կիսով չափ) խոշոր հողատիրությունից, արդեն սոցիալիստական պարտիայի մեջ կազմակերպված պրոլետարիատի ուժն ու գիտակցությունը — այս բոլոր հանգամանքները մեր բուրժուական ռևոլյուցիային հաղորդում են առանձնահատուկ բնույթ» (Երկեր, հատ. 15, էջ 53—54)։

Ելնելով ռուսական ռևոլյուցիայի բոլոր հիմնական գծերի գիտական, մարքսիստական վերլուծությունից, Լենինը «Երկու տակտիկա»-ում զարգացրեց և մշակեց հետևյալ հարցերը.

պրոլետարիատի հեգեմոնիան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ.

բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ և պրոլետարիատի դաշինքը չքավոր գյուղացիու-

*թյան, քաղաքի ու գյուղի կիսապրոլետարական բոլոր զանգվածների հետ՝ սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ.*

*զինված ապստամբությունը որպես ցարական ինքնակալության տապալման և ռևոլյուցիայի հաղթանակի հիմնական միջոց.*

*բանվոր դասակարգի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան և ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը որպես նրա քաղաքական օրգան.*

*բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի վերաճումը սոցիալիստական ռևոլյուցիայի.*

*պրոլետարիատի քաղաքական պարտիան՝ որպես պրոլետարիատի կողմից ժողովրդական ռևոլյուցիայի առաջնորդի դերն իրականացնելու վճռական պայման:*

*Արդյոք բանվոր դասակարգը ժողովրդական ռևոլյուցիայի ղեկավարի՞, թե բուրժուազիայի աջակցի դեր կխաղա,— դրանից էր կախված ռևոլյուցիայի երկու հնարավոր ելքը. կա՛մ մասսաների պայքարը կհասցնի ռևոլյուցիայի վճռական հաղթանակին ընդդեմ ցարիզմի, կա՛մ վճռական հաղթանակի համար ուժերը չեն բավականացնի, և գործը կվերջանա ցարիզմի ու լիբերալ-միապետական բուրժուազիայի գործարքով:*

*Լենինը մատնանշում էր, որ Ռուսաստանում բանվոր դասակարգը տառապում է ոչ միայն կապիտալիզմից, այլև նրա անբավարար զարգացումից: Ճորտատիրական հարաբերությունների մնացորդների պահպանումը արգելակում էր արտադրողական ուժերի զարգացումը և խոչընդոտ էր հանդիսանում իր վերջնական նպատակի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի ու կոմունիզմի հաղթանակի համար բանվոր դասակարգի պայքարի ծավալմանը: Ուստի բանվոր դասակարգը կենսականորեն շահագրգռված էր, որ երկիրը շուտափույթ կերպով մաքրվի ճորտատիրության բոլոր մնացորդներից:*

*Որպեսզի պրոլետարիատը իրոք դառնար* ռևոլյուցիայի առաջնորդը, *անհրաժեշտ էր, որ նա նախ՝ ունենար ռևոլյուցիայի վճռական հաղթանակով շահագրգռված* դաշնակից. *երկրորդ՝ ետ մղեր և* մեկուսացներ *լիբերալ բուրժուազիային, որը փորձում էր ռևոլյուցիան վերջացնել ի հաշիվ բանվորների ու գյուղացիների ցարիզմի հետ գործարք կնքելով:*

> *«Միայն պրոլետարիատը կարող է դեմոկրատիզմի համար հետևողական մարտիկ լինել,— գրում էր Լենինը:— Նա դեմոկրատիզմի հաղթական մարտիկ կարող է լինել միայն այն պայմանի առկայության դեպքում, եթե նրա ռևոլյուցիոն պայքարին միանա գյուղացիության մասսան»* (Երկեր, հատ. 9, էջ 60—61):

*Հակառակ մենշևիկների այն պնդումներին, թե գյուղացիությունը ռեակցիոն է, Լենինը սովորեցնում էր, որ գյուղացիության արմատական շահերը նրան դարձնում են պրոլետարիատի բնական դաշնակիցը և վճռական դեմոկրատական հեղաշրջման կողմնակիցը: Միայն ռևոլյուցիոն ճանապարհով կարելի է ոչնչացնել կալվածատիրական հողատիրությունը և դեմոկրատական ազատություններ նվաճել: Միայն պրոլետարիատն է ընդունակ այդ պայքարում մինչև վերջը աջակցելու գյուղացիությանը:*

*Գյուղացիությունը միատարր չէր. նա բաղկացած էր չքավորությունից, որ կազմում էր նրա հիմնական մասը, միջակներից և գյուղական բուրժուազիայից (կուլակներից): Դա նրա անկայունության պատճառներից մեկն էր: Բայց*



*գյուղացիության անկայունությունն արմատապես տարբերվում էր բուրժուազիայի անկայունությունից: Գյուղացիությունը շահագրգռված էր մասնավոր սեփականության գլխավոր տեսակներից մեկի՝ կալվածատիրական հողատիրության լիկվիդացումով, ճորտատիրության մնացորդների լիակատար ոչնչացումով:*

*Վ. Ի. Լենինը ոչնչացնող քննադատության ենթարկեց մենշևիկների օպորտունիստական դիրքորոշումները, որոնք նպատակ ունեին ապահովել լիբերալ բուրժուազիայի հեգեմոնիան ռևոլյուցիայի մեջ և ռևոլյուցիան ենդափոխել մանր ռեֆորմներով: Իրականում դա կհասցներ ոչ միայն այն բանին, որ բուրժուազիան ռևոլյուցիայի հաղթանակի դեպքում կնվաճեր իշխանությունը, այլև կպահպանվեին ինքնակալական-ճորտատիրական կարգի հիմքերը:*

*Բուրժուազիայի համար ավելի ձեռնտու է, գրում էր Լենինը, որ բուրժուա-դեմոկրատական ուղղությամբ անհրաժեշտ վերափոխությունները կատարվեն ոչ թե ռևոլյուցիայի, այլ ռեֆորմների միջոցով, «որ այդ վերափոխությունները որքան կարելի է քիչ զարգացնեն հասարակ ժողովրդի, այսինքն՝ գյուղացիության և հատկապես բանվորների ռևոլյուցիոն ինքնագործունեությունը, նախաձեռնությունը և եռանդը, որովհետև այլապես բանվորների համար ավելի ևս հեշտ կլինի, ինչպես ֆրանսիացիներն են ասում, «հրացանը մի ուսից մյուսը փոխադրել», այսինքն հենց իր՝ բուրժուազիայի դեմ ուղղել այն զենքը, որ կտա նրանց բուրժուական ռևոլյուցիան...»* (Երկեր, հատ. 9, էջ 47—48):

*Լենինի աշխատության մեջ խորապես հիմնավորված է ռևոլյուցիայի հաղթանակն ապահովող միջոցների հարցը: Հակառակ մենշևիկների, որոնք կառչում էին պայքարի ռեֆորմիստական եղանակներին, Լենինը ցարիզմի տապալման վճռական միջոց էր համարում* զինված ապստամբությունը: *Մարքսից և Էնգելսից հետո առաջին անգամ Լենինն առաջ քաշեց զինված ապստամբության կազմակերպման հարցը՝ որպես գործնական մի խնդիր, որի լուծմանը պետք է ենթարկվի պարտիայի ամբողջ գործունեությունը ռևոլյուցիայի ժամանակ:*

*Մասսաների ռևոլյուցիոն եռանդը բարձրացնելու, նրանց ցարիզմի դեմ բացահայտ զինված պայքարի ներգրավելու համար պարտիան պետք է առաջադրի ժողովրդին առանձնապես մոտիկ և հասկանալի քաղաքական լոզունգներ: Բոլշևիկներն այդպիսի լոզունգներ էին համարում՝ ռևոլյուցիոն ճանապարհով ութժամյա աշխատանքային օրվա անհապաղ իրականացումը, ռևոլյուցիոն գյուղացիական կոմիտեների ստեղծումը՝ գյուղում դեմոկրատական վերափոխություններ կատարելու համար, ընդհուպ մինչև կալվածատիրական հողերի բռնագրավումը, մասսայական քաղաքական գործադուլները, բանվորների զինումը և ռևոլյուցիոն բանակի ստեղծումը:*

*Լենինը բացառիկ մեծ նշանակություն էր տալիս ամենուրեք ներքևից* ութժամյա աշխատանքային օր *և գյուղում դեմոկրատական բարեփոխություններ իրականացնելուն: Դա մի նոր տակտիկա էր, որը նպատակ ուներ ազատություն տալ մասսաների ակտիվությանն ու ստեղծագործական նախաձեռնությանը: Այդ տակտիկայի կիրառումը ջլատում էր պետական իշխանության ապարատը, նրան անզոր էր դարձնում պայքարելու ռևոլյուցիայի դեմ:*

*Նոր և կարևոր զենք էր պայքարի հատուկ պրոլետարական միջոցի՝ մաս-*

սայական բաղաձական գործադուլի կիրառումը, որը առաջնակարգ դեր խաղաց մասսաներին ցարիզմի դեմ պայքարի մոբիլիզացնելու գործում։

Վ. Ի. Լենինը նոր ձևով էր լուծում ռևոլյուցիայի հիմնական հարցը՝ պետական իշխանության հարցը։ Լենինն ապացուցեց, որ հաղթական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան, որի մեջ որպես հեգեմոն հանդես է գալիս պրոլետարիատը, պետք է հանգեցնի ոչ թե բուրժուազիայի կողմից իշխանության նվաճելուն, ինչպես դա անցյալի բուրժուական ռևոլյուցիաներում էր, այլ պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրային։

> ««Ցարիզմի դեմ ռևոլյուցիայի վճռական հաղթանակը»,— գրում էր Լենինը,— պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան է...
>
> Եվ այդպիսի հաղթանակն էլ հենց դիկտատուրա կլինի, այսինքն՝ նա անխուսափելիորեն պետք է հենվի զինվորական ուժի վրա, մասսայի զինման, ապստամբության և ոչ թե այս կամ այն, «լեգալ», «խաղաղ» ճանապարհով ստեղծված հաստատությունների վրա» (Երկեր, հատ. 9, էջ 55)։

Պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրայի քաղաքական օրգանը պետք է լինի զինված ժողովրդի վրա հենվող ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը։ Ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը պետք է ամրապնդեր ռևոլյուցիայի նվաճումները, ճնշեր հակառևոլյուցիայի դիմադրությունը և կենսագործեր ՌՍԴԲՊ մինիմում-ծրագիրը, այսինքն՝ հաստատեր դեմոկրատական ռեսպուբլիկա, մտցներ ութժամյա աշխատանքային օր, բռնագրավեր կալվածատիրական հողը։

Սոցիալ-դեմոկրատիայի ներկայացուցիչների մասնակցությունն այդ կառավարությանը Լենինը համարում էր ոչ միայն հնարավոր, այլև նպատակահարմար պայմանների դեպքում՝ անհրաժեշտ։ Դա պետք է հեշտացնի անողոք պայքարը հակառևոլյուցիայի դեմ, բանվոր դասակարգի ինքնուրույն շահերի պաշտպանումը և ռևոլյուցիայի հետագա զարգացումը։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ էր ժամանակավոր կառավարության վրա ճնշում կազմակերպել «ներքևից», բանվոր դասակարգի և աշխատավորության լայն խավերի կողմից։ Թե՛ կառավարությանը մասնակցելը, թե՛ «ներքևից» գործադրվող ճնշումը պետք է նպաստեն ռևոլյուցիայի նվաճումների ամրապնդմանն ու ընդլայնմանը, սոցիալ-դեմոկրատական մինիմում-ծրագրի կենսագործմանը, ինչպես և այն բանին, որ պայմաններ նախապատրաստեն բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու համար։

Բացահայտելով մենշևիկների դիրքավորման վնասը, որոնք հանդես էին գալիս ժամանակավոր կառավարությանը մասնակցելու դեմ, Լենինը մատնանշում էր, որ դա կնշանակեր ռևոլյուցիայի ղեկավարությունը հանձնել բուրժուազիային։

Իր աշխատության մեջ Լենինը մշակեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու տեսությունը։ Անընդհատ (պերմանենտ) ռևոլյուցիայի և պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի՝ որպես այդպիսի ռևոլյուցիայի անհրաժեշտ պայմանի վերաբերյալ Մարքսի գաղափարները II Ինտերնացիոնալի օպորտունիստները մոռացության էին մատնել։ Մարքսի ռևոլյուցիոն գաղափարներին հակադրվեց օպորտունիստա-



կան այն սխեման, որի համաձայն բուրժուական ռևոլյուցիան պրոլետարականից բաժանվում էր 50 կամ 100 տարվա տևական մի ժամանակաշրջանով։ Այդ հակառևոլյուցիոն սխեմայի հիմքը գյուղացիության նկատմամբ պրոլետարիատի ղեկավար դերի ժխտումն էր, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի ժխտումը։

Վ. Ի. Լենինը զարգացրեց անընդհատ ռևոլյուցիայի վերաբերյալ Մարքսի գաղափարը և այն դարձրեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու մի կուռ տեսություն։ Այդ տեսության համաձայն պրոլետարիատի հեգեմոնիան բուրժուական ռևոլյուցիայի մեջ, երբ պրոլետարիատը դաշինք է կնքում գյուղացիության հետ, պետք է վերաճի պրոլետարիատի հեգեմոնիայի սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ, երբ պրոլետարիատը դաշինք է կնքում գյուղացիական չքավորության ու մյուս կիսապրոլետարական տարրերի հետ։ Պրոլետարիատի և գյուղացիության դեմոկրատական դիկտատուրան պետք է հող նախապատրաստեր պրոլետարիատի սոցիալիստական դիկտատուրայի համար։

> «Պրոլետարիատը մինչև վերջը պետք է կենսագործի դեմոկրատական հեղաշրջումը, իրեն միացնելով գյուղացիության մասսան, որպեսզի ուժով ճզմի ինքնակալության դիմադրությունը և չլատի բուրժուազիայի անկայունությունը։ Պրոլետարիատը պետք է սոցիալիստական հեղաշրջում կատարի, իրեն միացնելով բնակչության կիսապրոլետարական տարրերի մասսան, որպեսզի ուժով կոտրի բուրժուազիայի դիմադրությունը և չլատի գյուղացիության ու մանր բուրժուազիայի անկայունությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 9, էջ 114)։

Հիմնավորելով բուրժուական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու ուսմունքը, Լենինը ցույց տվեց դրա համար անհրաժեշտ օբյեկտիվ պայմանների առկայությունը Ռուսաստանի սոցիալ-տնտեսական կարգերում։ Ճորտատիրության բազմաթիվ մնացորդները և կապիտալիզմի համեմատաբար բարձր զարգացումը Ռուսաստանում պայմանավորեցին երկու կարգի հակասություններ։ Արտադրողական ուժերի զարգացման և կիսաճորտատիրական արտադրական հարաբերությունների միջև եղած հակասությունները նախադրյալներ էին ստեղծում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի համար։ Արտադրողական ուժերի աճման և կապիտալիստական արտադրական հարաբերությունների միջև եղած հակասությունները անհրաժեշտ պայմաններ էին ստեղծում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու համար։

Այստեղից էլ առաջանում էր երկու սոցիալական կռիվ. մեկը՝ համաժողովրդական պայքարն էր ընդդեմ ցարիզմի ու կալվածատերերի, հանուն դեմոկրատական ռեսպուբլիկայի, մյուսը՝ պրոլետարիատի պայքարն էր ընդդեմ բուրժուազիայի, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի, հանուն հասարակության սոցիալիստական կառուցվածքի։ 1905—1907 թվականներին առաջին պլանի վրա էր ինքնակալության տապալման համար մղվող համաժողովրդական պայքարը։ Բանվոր դասակարգը կոչված էր հանդես գալու «ամբողջ ժողովրդի և առանձնապես գյուղացիության գլուխ անցած՝ լիակատար ազատությա՛ն համար, դեմոկրատական հետևողական հեղաշրջմա՛ն համար, ռեսպուբլիկայի՛ համար։ Բոլոր աշխատավորների և շահագործվողների գլուխ անցած՝ սոցիալիզմի՛ համար» (Նույն տեղը, էջ 132)։

Լենինը հաստատակամորեն ընդգծում էր ռևոլյուցիայի անընդհատ զարգացման խնդիրը՝ ընդհուպ մինչև սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը առանց երկարատև ընդմիջման։ «Սոցիալ-դեմոկրատիայի վերաբերմունքը դեպի գյուղացիական շարժումը» հոդվածում Լենինը մատնանշում էր.

«... դեմոկրատական ռևոլյուցիայից մենք իսկույն ևեթ կսկսենք անցնել և հենց մեր ուժի, գիտակից ու կազմակերպված պրոլետարիատի ուժի չափով կսկսենք անցնել սոցիալիստական ռևոլյուցիային։ Մենք կողմնակից ենք անընդհատ ռևոլյուցիայի։ Մենք կանգ չենք առնի կիսաճանապարհին» (Երկեր, հատ. 9, էջ 297)։

Արևմտաեվրոպական օպորտունիստների և ռուսական մենշևիկների հայացքների համաձայն, պրոլետարիատը սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ հանդես է գալիս մենակ, առանց դաշնակիցների, ընդդեմ ամբողջ բուրժուազիայի, ընդդեմ բոլոր ոչ-պրոլետարական դասակարգերի ու խավերի։ Նրանք չէին ընդունում քաղաքի ու գյուղի կիսապրոլետարական մասսաների ռևոլյուցիոն հնարավորությունները, մասսաներ, որոնք ճնշվում ու շահագործվում էին կապիտալի կողմից, ուստի և կարող էին դառնալ պրոլետարիատի հավատարիմ դաշնակիցները՝ կապիտալիզմի դեմ մղվող պայքարում։ Այստեղից բխում էր այն սխալ հետևությունը, թե սոցիալիստական ռևոլյուցիայի համար պայմանները չի կարելի հասունացած համարել, քանի դեռ պրոլետարիատը հասարակության տնտեսական զարգացման հետևանքով ազգի մեծամասնությունը չի դարձել։

Սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսությունը տապալում էր այդ ամենավնասակար, պրոլետարիատին անգործության մատնող օպորտունիստական դոգմաները։

Բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի և այն սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու գլխավոր պայմաններից մեկը Լենինը համարում էր ինքնուրույն քաղաքական պարտիայի առկայությունը, որը կոչված է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի ղեկավարի և կազմակերպչի դեր խաղալու։ Այդ ռևոլյուցիայի մեջ, մատնանշում էր Լենինը, պրոլետարիատը կարող է հեգեմոնի դեր խաղալ միայն այն դեպքում, եթե որպես միասնական և ինքնուրույն քաղաքական ուժ համախմբվի ռևոլյուցիոն-մարքսիստական պարտիայի դրոշի ներքո, պարտիա, որը ոչ միայն գաղափարապես, այլև գործնականորեն ղեկավարում է նրա պայքարը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսությունը տապալում էր ոչ միայն ռուսական մենշևիկների ու II Ինտերնացիոնալի ռեֆորմիստների տեսությունները, այլև «պերմանենտ ռևոլյուցիայի» տրոցկիստական տեսությունը։ Կեղծելով պերմանենտ ռևոլյուցիայի մարքսիստական գաղափարը, Տրոցկին ժխտում էր պրոլետարիատի հեգեմոնիան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ և գյուղացիության ռևոլյուցիոն դերը, ժխտում էր պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան։ Նա առաջադրեց ձևով ձախ, բովանդակությամբ օպորտունիստական «առանց ցարի, իսկ կառավարությունը բանվորական» լոզունգը։ Ռևոլյուցիայի բուրժուա-դեմոկրատական էտապի վրայից այդպես ցատկելը միայն այն հետևանքը կունենար, որ պրոլետարիատը կմեկուսանար գյուղացիության բազմամիլիոն մասսաներից և ռևոլյուցիան կպարտվեր։

Ռևոլյուցիայի լենինյան տեսությունը, որ մշակվեց 1905 թվականին, բոլ-



շևիկյան պարտիային զինեց գիտականորեն հիմնավորված ստրատեգիայով ու տակտիկայով։ Այդ տեսության մեջ արդեն կային գրեթե բոլոր հիմնական տարրերը՝ սկզբում մեկ, առանձին վերցրած կապիտալիստական երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին եզրակացություն անելու համար, այն է՝ ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, ռևոլյուցիայի մեջ նոր տիպի պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերի, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու դրույթները։ Լենինը մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության եզրակացությանը հանգեց 1915 թվականին։

Լենինը մարքսիզմը հարստացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի նոր տեսությամբ, որը հզոր գաղափարական զենք դարձավ այդ ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում։

### 3. ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՐԵԼՔԸ։ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԱԴՈՒԼԸ։ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ։ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ։

Ռևոլյուցիոն իրադարձությունների ընթացքը հաստատում էր III համագումարի որոշումների ճշտությունը։ Ռևոլյուցիոն շարժման ալիքը օրեցօր բարձրանում էր։ Գործադուլային պայքարը ստացավ ավելի համառ, հարձակողական բնույթ, աչքի էր ընկնում մեծ կազմակերպվածությամբ։

Մայիսին Իվանովո-Վոզնեսենսկում սկսված գործադուլը տևեց 72 օր։ Այդ գործադուլը բանվորների տոկունության օրինակ ցույց տվեց և մասսաների քաղաքական դաստիարակության լավ դպրոց էր։ Գործադուլը ղեկավարելու համար ընտրվեց բանվորական լիազորների (դեպուտատների) Սովետ։ Ռևոլյուցիոն մարտերի ընթացքում այն դարձավ առաջին Սովետներից մեկը։ Գործադուլը տեղի էր ունենում բոլշևիկ բանվորներ Ա. Ֆ. Աֆանասևի, Ե. Ա. Դունաևի, Ֆ. Ն. Սամոյլովի, պրոֆեսիոնալ-ռևոլյուցիոներ Մ. Վ. Ֆրունզեի անմիջական ղեկավարությամբ։ Բացահայտորեն տեղի էին ունենում բանվորների միտինգներ և ժողովներ, որտեղ մշակում էին գործարանատերերին ներկայացվելիք պահանջները, քննարկում էին նրանց տրվելիք պատասխանները և նշվում հետագա պայքարի պլանները։ Հենց այստեղ էլ զեկուցումներ ու դասախոսություններ էին կարդացվում բանվորական շարժման խնդիրների մասին։ Դա «սոցիալիստական համալսարան» էր բանվորների համար։ Իվանովո-Վոզնեսենսկի բանվորների գործադուլին միացան Շույայի, Օրեխովո-Զուևոյի և մյուս քաղաքների տեքստիլագործները։ Ցարական իշխանությունները արյունոտ դատաստան տեսան բանվորների հետ։

Իվանովոյի բանվորների գնդակահարության դեմ ուղղված բողոքը տարածվեց ամբողջ Ռուսաստանում։ 1905 թվականի մայիսին Լոձի բանվորները երեք օր շարունակ բարիկադային մարտեր էին մղում ոստիկանության ու զորքերի դեմ։ Դրանք, գրում էր Լենինը, «ոչ միայն ռևոլյուցիոն էնտուզիազմի և հերոսության մի օրինակ, այլև պայքարի բարձրագույն ձևեր» էին (Երկեր, հատ. 8, էջ 693)։ Ուրալում գործադուլային պայքարի ավանգարդում էին ընթանում Պերմի ու Եկատերինբուրգի (Սվերդլովսկ) մետաղագործները, Զլատոուստի գործարանների զինագործները, Նադեժդինսկի և Նիժնի Տագիլի մե-

տալուրգները, Չելյաբինսկի, Ուֆայի, Եկատերինբուրգի երկաթուղայինները: Անձնվիրաբար ու հերոսաբար էին պայքարում լատիշ բանվորները: Նիկոլաևում, Եկատերինոսլավում, Խարկովում, Լուգանսկում, Մարիուպոլում, Գորլովկայում և այլ վայրերում քաղաքական գործադուլները փոխարկվում էին ընդհարումների ոստիկանության ու զորքերի հետ: Հունիսին ընդհանուր գործադուլ տեղի ունեցավ Թիֆլիսում, իսկ ապա՝ Քութայիսում, Բաթումիում, Ճիաթուրիում: Հունիս-հուլիսին գործադուլներն ընդգրկել էին Բաքվի բոլոր նավթահանքերի ու մյուս ձեռնարկությունների երեք քառորդը: Օգոստոսին Բաքվի պրոլետարների ընդհանուր գործադուլն ուղեկցվում էր զինված ընդհարումներով զորքերի հետ:

Ռուսաստանի բանվոր դասակարգը գործադուլներից դուրս էր գալիս քաղաքականապես ավելի ու ավելի հասունացած, կոփված, ուժեր կուտակելով ցարիզմի դեմ վճռական պայքարի համար:

1905 թվականի ամռանը ամենուրեք սկսեցին կիսալեգալ արհեստակցական կազմակերպություններ ստեղծվել: Արհեստակցական միությունները արդեն այն ժամանակ, բանվորների տնտեսական շահերը պաշտպանելու հետ մեկտեղ, առաջ էին քաշում մի շարք կարևորագույն քաղաքական պահանջներ: Բոլշևիկներն ակտիվորեն մասնակցում էին արհմիությունների ստեղծմանն ու աշխատանքին, մի բան, որ մեծ նշանակություն ունեցավ Ռուսաստանում արհմիությունների՝ որպես պրոլետարիատի մարտական դասակարգային կազմակերպությունների, ամբողջ հետագա զարգացման համար:

Իր հետևողական ռևոլյուցիոն պայքարով պրոլետարիատը գյուղացիությանը սովորեցնում էր, թե ինչպես պետք է պայքարել ցարական կարգի դեմ: Բանվորական շարժումից հետո բարձրացավ գյուղացիական շարժման ալիքը: 1905 թվականի գարնանն ու ամռանը գյուղացիական շարժումն ընդգրկեց բոլոր գավառների մոտ 20 տոկոսը, իսկ աշնանը՝ ավելի քան 50 տոկոսը: Ուկրաինայում և Մերձբալթիկայում տարածվեց գյուղատնտեսական բանվորների գործադուլների ալիքը: Գյուղացիական շարժումն առանձնապես ուժեղ թափ ընդունեց Պովոլժիեում, Ուկրաինայի մի շարք շրջաններում, Մերձբալթիկայում, Վրաստանում:

Պրոլետարական շարժման և գյուղացիական ապստամբությունների միացումը տատանեց ցարական բանակն ու նավատորմը: Բոլշևիկները 1905 թվականին անձնազոհ գործունեություն ծավալեցին բանակում ու նավատորմում: ՌՍԴԲՊ Կենտկոմը զորքերի մեջ աշխատելու ուղարկեց Ի. Ֆ. Դուբրովինսկուն, Ե. Մ. Յարոսլավսկուն, Ռ. Ս. Զեմլյաչկային, Մ. Վ. Ֆրունզեին և այլ ականավոր գործիչների:

Բոլշևիկներն օգտագործում էին զինվորների ու նավաստիների մեջ տարվող ռևոլյուցիոն աշխատանքի ամենաբազմազան ձևեր ու մեթոդներ՝ մամուլը, հավաքույթները, ցույցերը, խմբակները և այլն: Այդ աշխատանքի շնորհիվ զգալիորեն ուժեղացավ բոլշևիկյան կազմակերպությունների ազդեցությունը զինվորների ու նավաստիների շրջանում, կարգավորվում էր նրանց կապը բանվորների հետ: Ռևոլյուցիոնացնող դեր խաղաց ցարական բանակի պարտությունը Հեռավոր Արևելքում:

Զինվորների ու նավաստիների դժգոհության առաջին մասսայական արտահայտությունը հանդիսացավ 1905 թվականի հունիսին «Պոտյոմկին» զրահանավի վրա ծագած ապստամբությունը: Պատմության մեջ առաջին անգամ



ռազմանավի անձնակազմը բարձրացրեց ռևոլյուցիայի դրոշը և պայքարի ելավ գոյություն ունեցող կարգի դեմ: Ապստամբած նավը եկավ Օդեսա: Բայց բոլշևիկյան կոմիտեում միասնություն չկար, այն թուլացել էր ձերբակալություններից, իսկ մենշևիկները Օդեսայի բանվորների ապստամբությունը չկազմակերպեցին Պոտյոմկինցիներին օգնելու համար:

Ձնալած նավաստիների հերոսությանը, ապստամբությունն անհաջող վերջացավ, քանի որ ճիշտ ղեկավարություն չուներ: Դա ցարական զորքերի մեջ ռևոլյուցիոն պայքարի միայն առաջին փորձն էր: Սակայն ապստամբության բուն փաստը բացառիկ կարևոր նշանակություն ուներ: Բանվորների ու գյուղացիների և հատկապես իրենց՝ զինվորների ու նավաստիների մասսաների համար ավելի հասկանալի ու մոտիկ դարձավ այն միտքը, թե ցարիզմի դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է և հնարավոր բանակի ու նավատորմի միացումը բանվոր դասակարգին: Օրակարգում դրվեց ռևոլյուցիոն բանակ ստեղծելու հարցը:

«Պոտյոմկին»-ի ելույթից հետո բոլշևիկներն ուժեղացրին ռևոլյուցիոն աշխատանքը զորքերի մեջ: 1905 թվականի ամռանն ու աշնանը տեղի ունեցան զինվորների ու նավաստիների տասնյակ ռևոլյուցիոն ելույթներ: Բանվորների, զինվորների ու գյուղացիների առանձին ելույթներ աճում ու վեր էին ածվում համառուսաստանյան ռևոլյուցիոն հրդեհի:

Ցարիզմը փորձում էր զիջումների և խոստումների միջոցով ժողովրդին շեղել ռևոլյուցիոն պայքարից: 1905 թվականի օգոստոսի 6-ին մանիֆեստ հրապարակվեց Պետական դումայի (որը դումայի նախագծի հեղինակի՝ ցարական մինիստրի անունով կոչվեց բուլիգինյան) հրավիրման մասին: Ցարական կառավարությունն շտապեց վերջացնել ռուս-ճապոնական պատերազմը, որն առաջ էր բերել ժողովրդական մասսաների վրդովմունքը: 1905 թվականի օգոստոսի վերջերին Ճապոնիայի հետ հաշտություն ստորագրվեց:

Դուման ցարիզմի փորձն էր՝ վերջ տալու ռևոլյուցիային, այն փոխադրելով միապետական-կոնստիտուցիոն ուղու վրա: Դումայի հրավիրումով ցարիզմն ուզում էր նաև վերջ տալ լիբերալ բուրժուազիայի մեջ եղած օպոզիցիոն խմորմանը, բուրժուազիայի, որն ինքը վախենալով ռևոլյուցիայից, դրա հետ միասին նրանով վախեցնում էր ցարին: Համաձայն նախագծի, բուլիգինյան դուման պետք է լիներ կալվածատերերի, կապիտալիստների և չնչին թվով հարուստ գյուղացիների ժողով: Դուման ուներ սոսկ խորհրդակցական բնույթ, այսինքն՝ կարող էր քննարկել որոշ հարցեր որպես ցարին առընթեր խորհրդակցական օրգան: Դա ժողովրդական ներկայացուցչության կոպիտ կեղծում էր:

Բոլշևիկները բանվորներին ու գյուղացիներին կոչ արեցին ակտիվորեն բոյկոտել հակաժողովրդական դուման, ամբողջ ագիտացիոն կամպանիան կենտրոնացնելով հետևյալ լոզունգների շուրջը՝ զինված ապստամբություն, ռևոլյուցիոն բանակ, ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն: Մենշևիկները ողջունեցին դուման որպես «շրջադարձային կետ ազատագրական շարժման մեջ» և հանդես եկան դումայական ընտրությունների կատակերգության մեջ լիբերալների հետ համագործակցելու օգտին, դրանով իսկ պայքարելով զարգացման պառլամենտական, ռեֆորմիստական ուղու համար: Դումայի նկատմամբ մենշևիկների տակտիկան իրականում ձեռնտու էր լիբերալ բուրժուազիային, օգնում էր նրան՝ խաբելու ժողովրդական մասսաներին և նրանց շեղելու ռևոլյուցիոն պայքարից:

Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների կոնֆերենցիան, որ գումարվել էր Ռիգայում 1905 թվականի սեպտեմբերին Պետական դումայի նկատմամբ տակտիկա մշակելու համար, հավանություն տվեց բուլիգինյան դումայի ակտիվ բոյկոտի բոլշևիկյան գծին և դատապարտեց նրան մասնակցելու մենշևիկյան գիծը։ Դումայի ակտիվ բոյկոտի տակտիկան պաշտպանեցին ոչ միայն բանվորները, այլև գյուղացիությունն ու ինտելիգենցիայի առաջավոր մասը։ Բուլիգինյան դումայի բոյկոտի կամպանիան բոլշևիկներն օգտագործեցին բոլոր ռևոլյուցիոն ուժերը մոբիլիզացնելու, մասսայական քաղաքական գործադուլներ անցկացնելու և զինված ապստամբություն նախապատրաստելու համար։

1905 թվականի ամռանն ու աշնանը տեղի էր ունենում ընդհանուր քաղաքական գործադուլի ուժգին նախապատրաստություն։ Բոլշևիկների կազմակերպական ու ագիտացիոն հսկայական աշխատանքը նպաստում էր ռևոլյուցիայի նոր վերելքի արագ աճմանը։ Մոսկվայի տպագրիչների՝ սեպտեմբերին սկսված գործադուլին աջակցեցին մյուս գործարանների ու ֆաբրիկաների բանվորները։ Գործադուլն ուղեկցվում էր միտինգներով ու ցույցերով։ Մոսկվայի փողոցներում տեղի էին ունենում բանվորների զինված ընդհարումներ ոստիկանության ու զորքերի հետ։

Մոսկվայի բանվորների սեպտեմբերյան գործադուլը լուրջ քաղաքական դպրոց հանդիսացավ պրոլետարիատի համար։ Մասսայական քաղաքական գործադուլը, որ ուղեկցվում էր ռևոլյուցիոն միտինգներով, ցույցերով և ոստիկանության հետ զինված ընդհարումներով, դարձավ բանվոր դասակարգի պայքարի առավել տարածված ձևը։ Պայքարի ընթացքում ստեղծվեց հինգ արհեստների բանվորների՝ տպագրիչների, մետաղագործների, ծխախոտագործների, հյուսների և երկաթուղայինների Սովետ։ Բոլշևիկների ղեկավարությամբ բանվորների նորանոր խավեր էին ներգրավվում քաղաքական պայքարի մեջ։

Հոկտեմբերի 6-ին ՌՍԴԲՊ Մոսկվայի կոմիտեն որոշում ընդունեց Մոսկվայում ընդհանուր քաղաքական գործադուլ սկսելու մասին։ Գործադուլն արագորեն ընդգրկեց արդյունաբերական բոլոր կենտրոնները և դարձավ համառուսաստանյան։ Կանգ առան երկաթուղիները։ Աշխատանքը դադարեցրին ձեռնարկությունները։ Չէին գործում փոստն ու հեռագրատունը։

Հոկտեմբերյան գործադուլը վերածվեց պրոլետարիատի հզոր քաղաքական ելույթի։ Գործադուլն ընթանում էր ինքնակալությունը տապալելու, բուլիգինյան դուման ակտիվորեն բոյկոտելու, Սահմանադիր ժողով հրավիրելու և դեմոկրատական ռեսպուբլիկա հաստատելու լոզունգներով։ Գործադուլավոր բանվորներին միացան մանր ծառայողները, ուսանողները, աշակերտները, փաստաբանները, բժիշկները, ինժեներները և այլն։ Գործադուլի մասնակիցների թիվն անցնում էր երկու միլիոն մարդուց։ Համառուսաստանյան քաղաքական գործադուլը համոզիչ կերպով ցույց տվեց բոլշևիկների պարտիայի կապը ժողովրդական մասսաների հետ և բոլշևիկյան լոզունգների կենսունակությունը։

Հոկտեմբերյան գործադուլում դրսևորվեց Ռուսաստանի տարբեր ազգությունների բանվորների ամրապնդվող կապը, լատիշ, լեհ, ուկրաինացի, ադրբեջանցի, վրացի, բելոռուս բանվորները և մյուս ազգությունների բանվորները ռուս պրոլետարների հետ միասին պայքարում էին իրենց ոխերիմ թշնամու՝ ցարական ինքնակալության դեմ։



Վ. Ի. Լենինը բացահայտեց պրոլետարիատի այնպիսի մասսայական ելույթների աչքի ընկնող նշանակությունը, ինչպիսիք են՝ քաղաքական ու տնտեսական գործադուլները, ցույցերը և այլն։ Այդ ելույթները խոշոր դեր են խաղում բանվոր դասակարգի և ժողովրդական մասսաների կենսական շահերը պաշտպանելու գործում, ինչպես նաև պայքարի ավելի բարձր ձևերին՝ ընդհանուր գործադուլին, զինված ապստամբությանը և դրանով իսկ իշխանության համար մղվող պայքարին նախապատրաստվելու գործում։ Քաղաքական և տնտեսական գործադուլները, գրում էր Լենինը, «փոխադարձաբար օժանդակում են միմյանց, ուժի աղբյուր հանդիսանալով մեկը մյուսի համար։ Առանց գործադուլի այդ տեսակների սերտ կապի անհնարին է իրոք լայն, մասսայական,— և ընդսմին համաժողովրդական նշանակություն ստացող,—շարժումը» (Երկեր, հատ. 18, էջ 92)։

Քաղաքական գործադուլների ընթացքում բանվոր դասակարգը ոչ միայն առաջադրում է իր արմատական շահերն արտահայտող քաղաքական պահանջներ, այլև պաշտպանում է ժողովրդական մասսաների ընդհանուր շահերը։ Բանվոր դասակարգը քաղաքական գործադուլի մեջ հանդես է գալիս որպես ամբողջ ժողովրդի առաջավոր դասակարգ, որպես ժողովրդական շարժման հեգեմոն, այսինքն՝ ղեկավար։

Դրա հետ մեկտեղ բանվորական շարժման մեջ մեծ դեր են խաղում նաև տնտեսական գործադուլները։ Մասնակցելով դրանց, ձգտելով բարելավել իրենց տնտեսական դրությունը, մասսաները ներգրավվում են նաև քաղաքական շարժման մեջ։

Համառուսաստանյան հոկտեմբերյան գործադուլը ցույց տվեց բանվոր դասակարգի հզորությունը որպես ինքնակալության դեմ մղվող համաժողովրդական պայքարի առաջավոր մարտիկի, կազմակերպչի և ղեկավարի։ Գործադուլը ջլատեց կառավարության ուժերը։ Ռևոլյուցիան ավելի ու ավելի մեծ թափ էր ստանում։ Ռևոլյուցիայի աճումից վախեցած ցարական կառավարությունը շտապեց որոշ զիջումներ անել՝ ինքնակալական կարգը փրկելու համար։ Հոկտեմբերի 17-ին ցարը հրատարակեց մի մանիֆեստ, որը շատ կեղծ խոստումներ էր պարունակում։ Հռչակվում էր խոսքի, ժողովների, ընկերությունների ու միությունների ստեղծելու ազատություն, անձի անձեռնմխելիություն։ Մանիֆեստում խոսվում էր օրենսդրական ֆունկցիաներ ունեցող «ռուսաստանյան պառլամենտ»՝ Պետական դումա ստեղծելու մասին։

Ցարական մանիֆեստի երևան գալը, ինչպես մատնանշում էր Վ. Ի. Լենինը, հետևանք էր այն բանի, որ ստեղծվել էր ուժերի որոշ ժամանակավոր հավասարակշռություն. բանվորներն ու գյուղացիները, որոնք ցարից մանիֆեստ էին պոկել, դեռևս չէին կարող տապալել ցարիզմը, իսկ ցարիզմն արդեն չէր կարող կառավարել նախկին միջոցներով։

Բուրժուազիան ուրախությամբ ընդունեց ցարական ողորմությունը։ Խոշոր կապիտալիստները և կապիտալիստական եղանակով տնտեսավարող կալվածատեր մագնատները կանգնած էին ցարական կառավարության կողմը, թեպետև դեռ շարունակում էին նրա հետ վիճել իշխանությունը բաժանելու մասին։ Ցարի մանիֆեստը լիովին բավարարում էր նրանց։ Նրանք միավորվեցին «Հոկտեմբերի 17-ի միության»՝ օկտյաբրիստների, այսինքն՝ ցարի հոկտեմբերյան մանիֆեստի կողմնակիցների պարտիայի մեջ։ Կոնստիտուցիոն-դեմոկրատական պարտիան (կրճատ՝ «կադետները») միավորում էր կապիտա-

*լիստների, կալվածատերերի, զեմստվային ու քաղաքային գործիչների մի մասին, բուրժուական ինտելիգենտներին և լիբերալ-միապետական բուրժուազիայի առաջատար պարտիան էր։ Կադետները ձգտում էին, որ բուրժուազիան իշխանությունը բաժանի ցարի ու կալվածատերերի հետ։ Աշխատավոր մասսաներին խաբելու համար կադետները յուրացրին «Ժողովրդական ազատության պարտիա» կեղծ անունը։ Իրականում կադետների ծրագրում նույնիսկ ռեսպուբլիկայի պահանջ չկար։*

*Բնութագրելով կադետների պարտիան, Լենինը գրում էր.*

> *«Լիբերալ բուրժուաները տատանվում են ժողովրդի և ջարդարարների կառավարության միջև։ Խոսքով նրանք կառավարության դեմ են. գործնականում նրանք ամենից շատ վախենում են ժողովրդի պայքարից. գործնականում նրանք ցանկանում են գործարք միապետության հետ, այսինքն՝ ջարդարարների հետ, ընդդեմ ժողովրդի»* (Երկեր, հատ. 11, էջ 374)։

*Բուրժուական պարտիաները ցարական մանիֆեստում տեսան ռևոլյուցիային խաղաղ, կոնստիտուցիոն ընթացք տալու, ինքնակալությունը, կիսաճորտատիրական կարգը կործանումից փրկելու հնարավորություն։ Նրանք ամեն կերպ փառաբանում էին հոկտեմբերի 17-ի մանիֆեստը։*

*Բոլշևիկները կոչ էին անում բանվորներին ու գյուղացիներին՝ չհավատալ թղթե «կոնստիտուցիային» և շարունակել պայքարը ընդհուպ մինչև ցարիզմի տապալումը։ Բոլշևիկները հայտարարում էին, որ կառավարությունը խաբում է ժողովրդին։ Խոստացած ազատությունների փոխարեն նա ոստիկանության ստեղծած կազմակերպությունների («Ռուս ժողովրդի միություն» և այլն) օգնությամբ, որոնց ժողովուրդը «սև հարյուրյակ» անունը տվեց, կազմակերպեց հրեական արյունոտ ջարդեր, հայ-թուրքական կոտորած, բանվոր ռևոլյուցիոներների սպանություններ։*

*Ընդհանուր քաղաքական գործադուլի միջոցով ձեռք բերած առաջին հաղթանակից հետո հարկավոր էր հետագա պայքար ցարիզմը վերջնականապես տապալելու համար։ Բանվորները, ոգեշնչված բոլշևիկների կողմից, եռանդուն կերպով ձեռնամուխ եղան մարտական դրուժինաների ստեղծմանը։*

*Բանվորական շարժման հոկտեմբերյան վերելքը խթանեց գյուղացիական ռևոլյուցիոն պայքարը։*

*Ռուսաստանում գյուղացիությունը իր պարտիան չստեղծեց։ Ռևոլյուցիայի ընթացքում առաջացած «Համառուսաստանյան գյուղացիական միությունը» և «Աշխատանքային խումբը» իսկական քաղաքական պարտիաներ չէին։ Իրենց գյուղացիության շահերի արտահայտիչներ էին ներկայացնում էսեռները (սոցիալիստ-ռևոլյուցիոներները) և էնեսները (ժողովրդական սոցիալիստները), բայց իրականում նրանք արտահայտում էին գյուղի ունևոր-կուլակային վերնախավի շահերը։ Հարություն տալով գյուղացիական շարժման իբր թե սոցիալիստական բնույթի վերաբերյալ նարոդնիկական հին տեսություններին, էսեռները ժխտում էին բանվոր դասակարգի առաջատար դերը ռևոլյուցիայի մեջ։ Լենինը, բոլշևիկները մերկացնում էին էսեռների ծրագրի կեղծ-սոցիալիստական բնույթը, քննադատում գյուղացիական կազմակերպությունների տատանումներն ու անհետևողականությունը։ Դրա հետ միասին ցարիզմի դեմ մղվող պայքարում բոլշևիկները ժամանակավոր համաձայնությունների մեջ էին մտնում նրանց հետ։*



*Լինելով պրոլետարիատի առաջավոր ջոկատը, բոլշևիկները միևնույն ժամանակ իրենց վրա վերցրին գյուղացիության շահերի պաշտպանությունը։ Դա վերաբերում էր ինչպես նրանց տնտեսական շահերի բնագավառին (կալվածատիրական հողատիրության լիկվիդացում և հողի հանձնում գյուղացիներին), այնպես էլ քաղաքական շահերի բնագավառին (գյուղացիության թշնամին հանդիսացող ինքնակալության և ամբողջ կիսաճորտատիրական կարգի տապալում)։ Այն, որ հենց բոլշևիկներն իրենց վրա վերցրին գյուղացիության հիմնական մասսաների շահերի պաշտպանությունը, հսկայական նշանակություն ունեցավ հանուն ռևոլյուցիայի հաղթանակի մղվող հետագա պայքարի համար։*

*Տեղական բոլշևիկյան կազմակերպությունները եռանդուն աշխատանք էին տանում գյուղացիությանը պրոլետարիատի կողմը գրավելու համար։ 1905 թվականի ամառվանից սկսած ագրարային խմբեր ստեղծվեցին Մոսկվայի, Կազանի, Նիժնի Նովգորոդի, Սիմբիրսկի, Սարատովի, Սամարայի, Պետերբուրգի, Վլադիմիրի, Կոստրոմայի, Իվանովո-Վոզնեսենսկի և Կենտրոնական Ռուսաստանի այլ քաղաքների կոմիտեներին կից, ինչպես նաև Վիտեբսկի, Մինսկի, Վիլնոյի, Պոլտավայի, Լուգանսկի, Օդեսայի և այլ քաղաքների կոմիտեներին կից՝ Բելոռուսիայում, Լիտվայում, Ուկրաինայում և Լատվիայում։*

*Գյուղում բոլշևիկյան կազմակերպությունների քաղաքական աշխատանքի հիմնական ձևերից մեկը պրոկլամացիաների, թռուցիկների տարածումն էր, ինչպես և գյուղացիների մեջ ռևոլյուցիոն խմբակների կազմակերպումը։ Մոսկվայի օկրուգային կազմակերպությունը հատուկ հրահանգ հրատարակեց պարտիայի այն անդամների համար, որոնք աշխատում էին գյուղացիների մեջ։ Գյուղացիների շրջանում հսկայական հաջողություն էր վայելում Վ. Ի. Լենինի «Գյուղական չքավորությանը» բրոշյուրը, որը հաճախակի վերահրատարակվում էր տեղական բոլշևիկյան կազմակերպությունների կողմից։*

*Բոլշևիկներն ուժեղացրին աշխատանքը զորքերի մեջ։ 1905 թվականի աշնան մոտերքը ստեղծվեցին մի շարք զինվորական պարտիական կազմակերպություններ։ Դրանցից առավել խոշորներն էին՝ Պետերբուրգի, Մոսկվայի, Ֆինլանդիայի, Ռիգայի կազմակերպությունները։ Սկսեցին զգալիորեն ավելի շատ հրատարակվել զինվորներին ու նավաստիներին ուղղված թռուցիկներ ու դիմումներ։ 1905 թվականի աշնանը զինվորների ելույթներ տեղի ունեցան Խարկովում, Կիևում, Տաշքենդում, Վարշավայում և այլ քաղաքներում. նավաստիների ապստամբություններ բռնկեցին Կրոնշտադտում, Վլադիվոստոկում, Սևաստոպոլում։*

*Ռևոլյուցիոն ալիքի բուռն վերելքի այդ շրջանում առաջացան* **բանվորների դեպուտատների Սովետները**։ *Նրանք հանդիսացան բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ստեղծագործության ծնունդը։ Սովետները, որոնք որպես զանազան ձեռնարկությունների բանվորների լիազորների կամ ներկայացուցիչների օրգաններ սկզբում երևան եկան տնտեսական ու քաղաքական գործադուլները ղեկավարելու համար, դառնում էին ապստամբության նախապատրաստման օրգաններ, հանդիսանում էին նոր իշխանության սաղմը։ Ի հակակշիռ ցարական իշխանության գոյություն ունեցող օրգանների, Սովետները հրատարակում էին իրենց որոշումները, կարգադրությունները, հրամանները, ինքնակամ կերպով մտցնում էին ութժամյա աշխատանքային օր, դեմոկրատական ազատություններ։*

*Ի դեմս Սովետների Լենինը խորաթափանց կերպով տեսավ ռևոլյուցիայի, սոցիալիզմի համար մղվող պայքարի օրգան, ժողովրդի դիկտատուրայի օրգան: Նա բարձր գնահատեց նրանց նշանակությունը և տեսականորեն մշակեց Սովետների հարցը: Այդպես, Սովետներին ծնունդ տված բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ստեղծագործությունը և Լենինի, պարտիայի կողմից այդ Սովետների տեսական՝ հիմնավորումը գործնականում զուգակցելը տվեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության քաղաքական կազմակերպության հիանալի մի ձև, որը համաշխարհային-պատմական դեր խաղաց ռևոլյուցիայի, սոցիալիզմի հաղթանակի համար մղած պայքարում:*

*Լինելով բանվոր դասակարգի մեծագույն պատմական նվաճումը, 1905 թվականի Սովետները նախատիպ ծառայեցին 1917 թվականին հաստատված Սովետական իշխանության համար:*

*Բոլշևիկներն ամենուրեք մտան Սովետների մեջ և այնտեղ, որտեղ նրանց հաջողվեց ղեկավար ազդեցություն ստանալ, Սովետները դարձան ռևոլյուցիոն ուժերի մոբիլիզացման, զինված ապստամբության նախապատրաստման ու իրականացման մարտական շտաբներ, նոր իշխանության օրգանների սաղմեր: Իսկ մենշևիկները Սովետների վրա նայում էին որպես գործադուլային կոմիտեների կամ որպես տեղական ինքնավարության օրգանների: Պետերբուրգի Սովետը, որին ղեկավարում էին մենշևիկները (Տրոցկի, Խրուստալև), չկատարեց իր գլխավոր դերը՝ չդարձավ զինված ապստամբության և ինքնակալության տապալման համար մղվող պայքարի օրգան: Ռևոլյուցիայի մեջ աչքի ընկնող դեր խաղացին բոլշևիկների ղեկավարած Մոսկվայի Սովետը և Մոսկվայի շրջանային Սովետները:*

*1905 թվականի նոյեմբերի սկզբին էմիգրացիայից անլեգալ կերպով Ռուսաստան վերադարձավ Վ. Ի. Լենինը: Գալով Պետերբուրգ, նա իսկույն եռանդուն գործունեություն ծավալեց: Նա էր ղեկավարում պարտիայի Կենտրոնական Կոմիտեի աշխատանքը, գլխավորում բոլշևիկյան «Նովայա ժիզն» լեգալ թերթի խմբագրությունը, հանդես էր գալիս բանվորների դեպուտատների Պետերբուրգի Սովետի գործկոմի նիստերում, մասնակցում էր պարտիական նիստերին ու ժողովներին:*

*Համառուսաստանյան հոկտեմբերյան քաղաքական գործադուլը բանվոր դասակարգին ընդհուպ մոտեցրեց պայքարի բարձրագույն ձևին՝ զինված ապստամբությանը:*

*Բոլշևիկները, կենսագործելով պարտիայի III համագումարի որոշումները, ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեությունը զուգակցում էին ապստամբության նախապատրաստման գործնական աշխատանքի հետ: Ակտիվ գործունեություն ծավալեցին բոլշևիկների մարտական դրուժինաները: Կազմակերպվեց փողոցային մարտերի և հրաձգության ուսուցում, ստեղծվում էին ռումբերի պատրաստման արհեստանոցներ, զինապահեստներ և այլն: Մարտական ջոկատներ ու դրուժինաներ ստեղծվեցին Պետերբուրգում, Մոսկվայում, Սորմովոյում, Յարոսլավլում, Իվանովո-Վոզնեսենսկում, Ուրալում, Ուկրաինայում, Սիբիրում, Կովկասում, Անդրկովկասում, Մերձբալթիկայում:*

*Առաջինը ցարիզմի դեմ ապստամբության դրոշ բարձրացրեց Մոսկվայի պրոլետարիատը: Մոսկվայի բոլշևիկների կոնֆերենցիան, որ կայացավ դեկտեմբերի 5-ին, արտացոլելով բանվորների կամքը, արտահայտվեց գործադուլ հայտարարելու և զինված ապստամբության օգտին: Մոսկվայի Սովետը դեկ-*



*տեմբերի 7-ից հայտարարեց ընդհանուր քաղաքական գործադուլ այն հաշվով, որ այդ գործադուլը վերածի ապստամբության:*

*Հենց առաջին երկու օրը Մոսկվայում գործադուլ էր անում 150 հազար մարդ: Գործարաններում ու ֆաբրիկաներում կազմակերպվում էին բազմաթիվ միտինգներ, փողոցներում՝ ցույցեր: Սկսվեցին առաջին ընդհարումները կազակների ու ոստիկանության հետ: Շտապ կերպով ուժեր մոբիլիզացնելով, իշխանությունները հարձակման անցան: Մոսկվայի պրոլետարիատը իշխանությունների ջարդարարական գործողություններին պատասխանեց բարիկադներ կառուցելով: Դեկտեմբերի 10-ին գործադուլը վերաճեց զինված ապստամբության: Սկսվեցին կատաղի մարտեր: Ապստամբության կենտրոնները դարձան Պրեսնյան, Զամոսկվորեչիեն, Ռոգոժսկո-Սիմոնովսկի շրջանը և Կազանյան երկաթուղու շրջանը: Մոսկվայի փողոցներում կառուցվեց մոտ 1000 բարիկադ: Բանվորների անձնվեր պայքարը տևեց ինն օր:*

*Ա. Մ. Գորկին, զինված մարտերի անմիջական ականատեսը, գրում էր. «...Հենց նոր եկա փողոցից: Սանդունովյան բաղնիքների մոտ, Նիկոլաևյան կայարանի մոտ, Սմոլենսկյան շուկայում, Կուդրինոյում կռիվ է տեղի ունենում: Լա՜վ կռիվ է... Փողոցներում ամենուրեք զինաթափում են ժանդարմներին, ոստիկանությանը: Բանվորներն իրենց հիանալի՜ են պահում»:*

*Բացառիկ հերոսությամբ ու համառությամբ էր աչքի ընկնում ապստամբության հիմնական օջախը դարձած Պրեսնյայի բանվորների պայքարը: Այստեղ էին կենտրոնացվել Մոսկվայի բանվորների լավագույն մարտական դրուժինաները:*

*Մոսկվայի բանվորները մարտնչում էին անձնուրաց կերպով: Ամբողջ աշխարհը լարված հետևում էր այդ ապստամբության ընթացքին, որը ցնցել էր խոշորագույն միապետության հիմքերը: Ցարական կառավարությունը հասկացավ, որ կրախ է սպառնում ինքնակալական, ճորտատիրական ամբողջ ռեժիմին, և մեծ ուժեր նետեց ապստամբությունը ճնշելու համար: Լրացուցիչ զորամասերի ժամանումը Մոսկվա էապես փոխեց պայքարող ուժերի հարաբերակցությունը հակառևոլյուցիայի օգտին:*

*Ապստամբ բանվորները դեռևս չունեին զինված պայքարի փորձ, չունեին անհրաժեշտ զենք, բավականաչափ կարգավորված չէր կապը զորքերի հետ: Դեկտեմբերի սկզբին ապստամբեց Մոսկվայում տեղավորված Ռոստովյան գունդը: Մոսկվայի կայազորը տատանվում էր, բայց ապստամբության կազմակերպիչները ժամանակը բաց թողին, չօգտագործեցին զորքերի տատանումը՝ նրանց ապստամբ բանվորների կողմը գրավելու համար: Ցարական կառավարությանը հաջողվեց ետ պահել Մոսկվայի կայազորի զորքերին և մեկուսացնել նրանց ապստամբներից: Կառավարության ձեռքում մնաց Պետերբուրգը Մոսկվայի հետ կապող երկաթուղին, Պետերբուրգի Սովետը, որին գըլխավորում էին մենշևիկները, մայրաքաղաքում ապստամբության դրոշ չբարձրացրեց, չխափանեց կառավարության գործողությունները: Մոսկվայի ապստամբությունը չվերածվեց համառուսաստանյան ապստամբության:*

*Ամբողջովին վերցրած ապստամբության ղեկավարությունը ետ էր մնում մասսաների տարերայնորեն աճող շարժումներից: Ապստամբության սկզբին ձերբակալվեցին բոլշևիկների Մոսկվայի կոմիտեի ղեկավար աշխատողներ ու ապստամբության կազմակերպիչներ Վ. Լ. Շանցերը (Մարատ), Մ. Ի. Վասիլև-Յուժինը և ուրիշներ: Մոսկվայի ընդհանուր ապստամբությունը վերած-*

վեց առանձին շրջանների ապստամբություն: Պայքարի ընթացքում կիրառվում
էր պաշտպանության, և ոչ թե հարձակման տակտիկա, մի բան, որ ապստամ-
բությունը պարտության էր դատապարտում:

Մենշևիկներն ու էսեռները կազմալուծում էին մտցնում ապստամբների
շարքերում: Բանվորների ճնշման տակ ստորագրելով ընդհանուր գործադուլի
և զինված ապստամբության վերաբերյալ դիմումը, նրանք շուտով հայտարա-
րեցին իրենց դրուժինաները ցրելու մասին: Դեկտեմբերի 15-ին, դեռ նախ-
քան Պետերբուրգից զորքերի գալը, մենշևիկները Սովետից պահանջեցին ան-
հապաղ դադարեցնել ապստամբությունը: Մենշևիկների և էսեռների կապի-
տուլյանտական դիրքը նպաստեց ապստամբության պարտությանը:

Բոլշևիկների Մոսկվայի Կոմիտեի և Մոսկվայի Սովետի կոչով ռևոլյու-
ցիոն ուժերը պահպանելու համար որոշվեց դեկտեմբերի 19-ից դադարեցնել
զինված պայքարը: Բանվոր դասակարգի գալիք հաղթանակի նկատմամբ ան-
սասան հավատով էր տոգորված Պրեսնյայի մարտական դրուժինաների շտա-
բի վերջին կոչը. «Մենք սկսեցինք: Մենք էլ վերջացնում ենք... Արյունը, բռ-
նությունն ու մահը կրնկակոխ հետևելու են մեզ: Բայց դա ոչինչ: Ապագան
պատկանում է բանվոր դասակարգին: Սերունդ սերնդի հետևից բոլոր երկր-
ներում Պրեսնյայի փորձով համառություն կսովորեն... Կեցցե՛ բանվորների
պայքարն ու հաղթանակը»:

Մոսկվայից հետո 1905 թվականի դեկտեմբերին և 1906 թվականի հուն-
վարին ապստամբություններ բորբոքվեցին մի շարք այլ քաղաքներում: Դեկ-
տեմբերի 12-ին ՌՍԴԲՊ Կոմիտեի կոչով հանդես եկավ Նիժնի Նովգորոդի
պրոլետարիատը: Դեկտեմբերի 13-ին ապստամբություն սկսվեց Դոնի Ռոս-
տովում: Դեկտեմբերի 8-ին Նովոռոսիյսկում սկսված քաղաքական գործադու-
լը վերաճեց զինված ապստամբության: Քաղաքում իշխանությունն անցավ
բանվորների դեպուտատների Սովետի ձեռքը, որի ղեկավարության մեջ գե-
րակշռում էին բոլշևիկները: Սովետը ոչ միայն ապստամբության օրգան էր,
այլև նոր, ժողովրդական իշխանության օրգան: Այդ օրերի Նովոռոսիյսկը
պատմության մեջ հայտնի է որպես «Նովոռոսիյսկի ռեսպուբլիկա»: Ինքնակա-
լության դեմ զինված պայքարի ելավ Ուկրաինայի պրոլետարիատը: Առանձ-
նապես խոշոր զինված ելույթներ տեղի ունեցան Դոնբասում, Եկատերինոսլա-
վում: Ուրալի բանվորների ռևոլյուցիոն պայքարն ամենամեծ կազմակերպ-
վածության հասավ Պերմում (Մոտովիլիխայի գործարանում) և Ուֆայում:

Մեծ թափով էին զինված պայքար մղում Սիբիրի, հատկապես Կրասնո-
յարսկի ու Չիտայի բանվորները, որտեղ կային խոշոր բոլշևիկյան կազմա-
կերպություններ: Այստեղ ապստամբ բանվորներին միացան զինվորները:
Կրասնոյարսկում ստեղծվեց բանվորների ու զինվորների միացյալ Սովետ,
որը դարձավ ռևոլյուցիոն իշխանության օրգան: Սովետը հայտարարեց մա-
մուլի, ժողովների, միությունների ազատություն, սահմանեց ութժամյա աշ-
խատանքային օր, զինաթափեց ոստիկանությանն ու ժանդարմներին: Չիտա-
յում բանվորների կողմն անցավ կայազորը: Նոյեմբերի վերջին Չիտայում
ստեղծված զինվորների ու կազակների դեպուտատների Սովետը փաստական
իշխանություն էր քաղաքում: Ստեղծվեց այսպես կոչված «Չիտայի ռեսպուբ-
լիկան»:

Հսկայական թափի հասավ Լեհաստանի և Մերձբալթիկայի բանվորների,
բատրակների ու գյուղացիների զինված պայքարը:



Ապստամբությունների ալիքը տարածվեց Անդրկովկասում, որտեղ բոլ-
շևիկյան կազմակերպությունները հմտորեն զուգակցում էին բանվորների
պայքարն ու գյուղացիական շարժումը: Առանձնահատուկ համառությամբ էր
աչքի ընկնում գյուղացիների ապստամբությունը Գուրիայում, որտեղ ամբողջ
վոլոստներ ու գավառներ ընկան ապստամբների ձեռքը: Ցարիզմի դեմ մղվող
զինված պայքարը լայնորեն ծավալվեց Ֆինլանդիայում, որն այն ժամանակ
մտնում էր Ռուսաստանի կազմի մեջ:

Այդ բոլոր ապստամբությունները անասելի դաժանությամբ ճնշվեցին ցա-
րական կառավարության կողմից: Ցարին ամուր կպավ «Նիկոլայ արյունար-
բու» մականունը:

Մոսկվայի բանվորների նախաձեռնությամբ սկսված դեկտեմբերյան
զինված ապստամբությունը, որը գլխավորում էին բոլշևիկները, ռևոլյուցիայի
գագաթնակետն էր:

Բոլշևիկներն ու մենշևիկները արմատապես տարաձայնվեցին ապստամ-
բության գնահատման հարցում: Մենշևիկները դատապարտեցին զինված
ապստամբության ելած ռուսական պրոլետարիատի հերոսական պայքարը:
«Հարկավոր չէր զենք վերցնել» — հայտարարեց Պլեխանովը: Ընդհակառակը,
ասում էին բոլշևիկները, պետք էր ավելի վճռականորեն զենք վերցնել, պար-
զաբանել մասսաներին, որ ցարիզմի դեմ հաղթանակը չի կարելի ապահովել
միայն գործադուլներով և այլ խաղաղ միջոցներով, որ ռևոլյուցիայի հաղ-
թանակը կարող էր նվաճվել միայն զինված պայքարով: Լենինը բարձր էր
գնահատում դեկտեմբերյան ապստամբությունը, խոր վերլուծման ենթարկեց
նրա դրական կողմերը և պարտության պատճառները, կոչ էր անում բոլոր գի-
տակից բանվորներին ուսումնասիրել ապստամբության դասերը և պատ-
րաստվել նոր մարտերի:

Դեկտեմբերյան ապստամբությունը ցույց տվեց բանվոր դասակարգի
քաղաքական գիտակցության ու կազմակերպվածության չտեսնված աճումը:
Հունվարի 9-ից սկսած նա անցել էր հսկայական ճանապարհ: Բանվոր դասա-
կարգը զենքը ձեռքին հերոսաբար պայքարում էր ինքնակալության տապալ-
ման համար, ռևոլյուցիայի հաղթանակի համար: Ցարական միապետության
տապալման և կիսաճորտատիրական կարգի վերացման գաղափարը հաստա-
տուն կերպով մտնում էր Ռուսաստանի բանվոր դասակարգի և միլիոնավոր
աշխատավորների գիտակցության մեջ:

Դեկտեմբերյան իրադարձությունները համոզիչ կերպով հաստատում էին,
որ «ազատությունը ձեռք չի բերվում առանց մեծագույն զոհերի, որ ցարիզմի
զինված դիմադրությունը պետք է կոտրվի ու ջախջախվի զինված ձեռքով»
(Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 696):

## 4. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ: ՌՍԴԲՊ IV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ:

Բոլշևիկյան պարտիան մինչև 1905 թվականը կազմավորվում և աճում էր
ընդհատակյա անլեգալ աշխատանքի պայմաններում: Այդ է նրա տարբերու-
թյունը մյուս երկրների մեծամասնության սոցիալ-դեմոկրատական պարտիա-
ներից, որոնք զարգանում էին լեգալ պայմաններում: Բանվորական խմբակ
կազմակերպելու կամ կոչ, թռուցիկ հրատարակելու ամենափոքր փորձի համար

մարդիկ հատուցում էին տարիների բանտարկությամբ ու տաժանակրությամբ։ Պարտիայի կամ պարտիական կոմիտեի անդամները չէին կարող բացահայտ ժողովներ կազմակերպել։ Տեղական պարտիական կոմիտեի ղեկավարությունը նշանակվում էր ՌՍԴԲՊ Կենտրոնական կամ մարզային կոմիտեի կողմից։ Ռևոլյուցիոն թերթերը, բրոշյուրներն ու գրքերը տպագրվում էին գլխավորապես արտասահմանում և գաղտնի փոխադրվում Ռուսաստան։

Ընդհատակի պայմանները պարտիայի բոլոր անդամներից պահանջում էին խիստ կոնսպիրացիա, բայց, այնուամենայնիվ, պարտիան ներփակ կազմակերպություն չէր։ Իր ամբողջ աշխատանքում նա սերտորեն կապված էր բանվորների և աշխատավորության մյուս խավերի հետ, ղեկավարում էր բանվոր դասակարգի շատ ելույթներ։

Ռևոլյուցիայի վերելքը նոր պայմաններ ստեղծեց պարտիայի գործունեության համար։ Մասսաների ռևոլյուցիոն պայքարով նվաճվեց ժողովների, միությունների, մամուլի ազատություն։ Ամբողջ երկրում տեղի էին ունենում միտինգներ, ժողովներ, զանազան հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններ ու համագումարներ։ Մասսայական ժողովների համար ինքնակամ կերպով գրավվում էին դահլիճներ, լսարաններ։ 1905 թվականի ամռանն ու աշնանը վիթխարի միտինգներ էին տեղի ունենում բաց երկնքի տակ։ Բոլշևիկյան հռետորները, ինչպես և մյուս պարտիաների ներկայացուցիչները, բացահայտորեն դիմում էին մասսաներին, շարադրում էին իրենց պարտիայի պլատֆորման և կոչ անում պայքարել նրա համար։ Պարտիայի գաղափարները լայնորեն տարածվում էին և ավելի ու ավելի մեծ թվով ակտիվ կողմնակիցներ գտնում։

«1905 թ. գարնանը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— մեր պարտիան ընդհատակյա խմբակների միություն էր. աշնանը նա դարձավ պրոլետարիատի միլիոնների պարտիա» (Երկեր, հատ. 15, էջ 178)։

Օգտագործելով հարաբերական ազատությունները, բոլշևիկյան շատ կազմակերպություններ կարգավորեցին լեգալ բանվորական թերթերի՝ Մոսկվայում «Բորբա»-ի և «Վպերյոդ»-ի, Անդրկովկասում՝ «Կավկազսկի ռաբոչի լիստոկ»-ի, Կրասնոյարսկում՝ «Կրասնոյարսկի ռաբոչի»-ի, Չիտայում՝ «Զաբայկալսկի ռաբոչի»-ի և այլ թերթերի լույսընծայումը։ Զգալիորեն ավելացավ թռուցիկների ու պրոկլամացիաների լույս ընծայումը։ Ռևոլյուցիայի ժամանակաշրջանում բոլշևիկյան կազմակերպությունները հրատարակեցին տարբեր անուն կրող ավելի քան 2000 թռուցիկներ, որոնց ամսական տպաքանակը անցնում էր 1 միլիոն օրինակից։ Լայնորեն հրատարակվում էր մարքսիստական գրականություն։

Նոր պայմաններում անհրաժեշտ էր փոփոխություններ մտցնել պարտիայի կառուցվածքի մեջ և նրա կազմակերպական աշխատանքում։ «Պարտիայի վերակազմության մասին» հոդվածում Լենինը տվեց այդպիսի վերակառուցման ծավալուն ծրագիրը։ Անհրաժեշտ էր ամեն կերպ օգտագործել լեգալ հնարավորությունները, ստեղծել բացահայտ և կիսաբացահայտ պարտիական օրգաններ և նրանց հարող կազմակերպությունների ցանց, բայց միևնույն ժամանակ անպայման պահպանել պարտիայի կոնսպիրատիվ ապարատը։ Լենինը խնդիր դրեց ՌՍԴԲՊ շարքերը ներգրավել բազմաթիվ նոր անդամներ, ամենից առաջ բանվորների թվից։ «Թող նրանց միջոցով ներս լցվի երիտասարդ ռևոլյուցիոն Ռուսաստանի թարմ ոգին»,—գրում էր Լենինը։ Հարկավոր էր ամենուրեք, որտեղ այդ հնարավոր էր, մտցնել պարտիական ղեկավար օրգանների ընտրություններ։ Ընդհատակում եղած խմբակների փոխարեն հարկավոր էր ստեղծել բջիջներ՝ որպես պարտիայի հիմնական սկզբնական կազմակերպություն։



Պարտիան իր աշխատանքը վերակառուցեց՝ հաշվի առնելով նոր պայմանները։ Գործնականում սկսեց կենսագործվել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։

Ռևոլյուցիայի ընթացքում պարտիան աճում էր լավագույն բանվորների հաշվին։ 1905 թվականի վերջերին Պետերբուրգի կազմակերպությունն ուներ մոտ 3 հազար անդամ, Մոսկվայինը՝ 2500, Իվանովո-Վոզնեսենսկինը՝ պարտիայի մոտ 900 անդամ։ Բաքվի և Խարկովի կազմակերպությունները՝ 1000-ական անդամ։

Ռուսաստանում այդ ժամանակաշրջանում գործում էին ավելի քան 50 բոլշևիկյան կոմիտեներ ու խմբեր։ Բոլշևիկյան կազմակերպությունները գերակշռում էին արդյունաբերական կենտրոններում։ Իսկ մենշևիկներն ազդեցություն ունեին արհեստավորների, ինտելիգենցիայի, ուսանողության, քաղաքային մեշչանության և բանվորների սակավ գիտակից մասի շրջանում։

Ռևոլյուցիայի վերելքի ժամանակաշրջանում ՌՍԴԲՊ մեջ մտան շատ նոր բանվորներ։ Պարտիան դառնում էր մասսայական։ Պարտիայի երիտասարդ անդամները միայն աստիճանաբար էին իմանում տարբեր հայացքներ ու պլատֆորմաներ ունեցող բոլշևիկների ու մենշևիկների մասին։ Նրանք աշխատում էին հասկանալ նրանց միջև եղած տարակարծությունները։ ՌՍԴԲՊ անունով հանդես եկող բոլշևիկյան ու մենշևիկյան առանձին կազմակերպությունների գոյությունը տեղերում անբավականություն էր հարուցում նրանց մեջ։ Դասակարգային բնազդը նրանց հուշում էր, որ պարտիայի այդպիսի վիճակը թուլացնում էր բանվոր դասակարգին, պարտիային և ռևոլյուցիան։ Բայց այդ ժամանակ մենշևիկները շարունակում էին իրենց սոցիալ-դեմոկրատներ համարել, բացահայտորեն չէին հրաժարվում ՌՍԴԲՊ ծրագրից և աշխատանք էին տանում իրենց կազմակերպությունների մեջ նոր անդամներ ներգրավելու համար։ Որոշ ժամանակ էր պահանջվում, որպեսզի պարտիական մասսաները սեփական փորձով համոզվեն մենշևիկների դավաճանության մեջ և հասկանան, որ բանվոր դասակարգի, սոցիալիզմի շահերի միակ արտահայտիչները բոլշևիկներն են։

ՌՍԴԲՊ III համագումարից կարճ ժամանակ հետո պարտիայի շատ անդամներ սկսեցին հանդես գալ պարտիան միավորելու պահանջներով։ Պարտիայի միավորման օգտին պարտական մասսաների, առաջավոր բանվորների՝ ներքևից եկող շարժումն արտահայտում էր նրանց մտահոգությունը պարտիան և բանվոր դասակարգի մեջ նրա հեղինակությունն ամրապնդելու մասին, հանուն ռևոլյուցիայի հաղթանակի հաջողությամբ պայքարելու համար բոլոր ուժերը համախմբելու մասին։ ՌՍԴԲՊ III համագումարում ընտրված պարտիայի Կենտկոմը հանդես եկավ ի պաշտպանություն այդ պահանջների։ Լենինը, բոլշևիկները հաստատ համոզված էին, որ վերջին հաշվով ՌՍԴԲՊ-ում կհաղթանակեն ռևոլյուցիոն մարքսիստական սկզբունքները, իսկ մենշևիկները կմեկուսացվեն։

Լենինը, բնութագրելով ՌՍԴԲՊ շարքերում տեղի ունեցած պայքարի պատմությունը, մատնանշում էր.

*«Պետք է ասել, որ 1905 թվականի գարնանը և 1912 թվականի հունվարին մենշևիկների հետ տեղի ունեցած ձևական պառակտումները փոխարինվում էին 1906 և 1907, ապա 1910 թվականների կիսամիավորումներով ու միավորումներով ոչ միայն պայքարի պերիպետիաների բերումով, այլև ներքնախավերի ճնշման տակ, որոնք պահանջում էին ստուգողական քննություններ սեփական փորձով»* (XXXV «Լենինյան ժողովածու», էջ 303)։

*Լենինը, բոլշևիկները գտնում էին թե անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ամբողջ ՌՍԴԲՊ-ն կանգնի ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերի վրա և ղեկավարի Ռուսաստանի բանվորական ու ռևոլյուցիոն շարժումը։ Բոլշևիկներն աշխատում էին իրենց կողմը գրավել բանվոր սոցիալ-դեմոկրատների որքան կարելի է ավելի լայն խավեր։ Լենինը խնդիր դրեց՝ հասնել այն բանին, որ ամբողջ ՌՍԴԲՊ-ն ընդունի պարտիայի III համագումարի պլատֆորման։ Նա մատնանշում էր, որ բոլշևիկների հաղթանակը մենշևիկների դեմ պահանջում էր այն ժամանակվա պայմաններում խուսանավելու և կոմպրոմիսների տակտիկայի կիրառում, «հասկանալի է՝ այն և այնպիսի կոմպրոմիսների տակտիկայի կիրառում, որը հեշտացներ, արագացներ, ամրապնդեր, ուժեղացներ բոլշևիկներին՝ ի հաշիվ մենշևիկների»* (Երկեր, հատ. 31, էջ 75)։

*Միավորման հարցը պետք է լուծեր պարտիայի հերթական համագումարը։ Բոլշևիկներին չհաջողվեց նախատեսված ժամկետին համագումար հրավիրել երկաթուղային գործադուլի և Մոսկվայում սկսված զինված ապստամբության հետևանքով։ Տամմերֆորսում հավաքված պատգամավորները կազմակերպեցին բոլշևիկների կոնֆերենցիա, որն աշխատեց 1905 թվականի դեկտեմբերի 12-ից մինչև 17-ը։*

*Կոնֆերենցիան արտահայտվեց պարտիական միավորման օգտին, այն բանի օգտին, որ տեղի ունենա «պրակտիկ (կենտրոնների) և գրական կենտրոնական օրգանների անհապաղ ու միաժամանակյա միաձուլում հավասարության սկզբունքներով»* («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», I մ., էջ 122)։ *«Պարտիայի վերակազմությունը» բանաձևում կոնֆերենցիան հանձնարարեց պարտիայի մեջ կիրառել լայն ընտրական և դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Այդ սկզբունքից կատարվող շեղումները թույլատրելի էին համարվում միայն այն դեպքում, եթե կատարվում էին անհաղթահարելի գործնական արգելքների պատճառով։ «Ագրարային բանաձև»-ում կոնֆերենցիան հաստատեց III համագումարի այն որոշումը, թե պետք է աջակցել գյուղացիական շարժմանը՝ ընդհուպ մինչև պետական, կալվածատիրական և այլ մասնատիրական հողերի բռնագրավումը։*

*Դեկտեմբերի վերջերին կազմվեց ՌՍԴԲՊ միացյալ Կենտկոմ, որին հանձնարարվեց հրավիրել IV համագումարը։*

*Լենինն անհրաժեշտ էր համարում, որ բոլշևիկները համագումար գան ռևոլյուցիայի բոլոր կարևորագույն հարցերի վերաբերյալ իրենց պլատֆորմայով, որպեսզի բանվորները պարզ տեսնեն, թե ի՛նչ դիրքերի վրա են կանգնած բոլշևիկները, և կարողանան ընտրություն կատարել բոլշևիկների ու մենշևիկների միջև։ 1906 թվականի փետրվարի երկրորդ կեսին Լենինը մշակեց բոլշևիկների պլատֆորման՝ համագումարի հիմնական բանաձևերի նախագծերը։ Բոլշևիկների բանաձևերը կոչ էին անում նախապատրաստվել նոր ռևոլյուցիոն գրոհի ինքնակալության դեմ։ Պայքարի գլխավոր ձև էր համարվում ժողովրդական լայն մասսաների զինված պայքարը։ Մենշևիկները համագումարի առթիվ առաջադրեցին իրենց տակտիկական պլատֆորման, որտեղ ըստ էության հրաժարվում էին ռևոլյուցիոն պայքարից։ Երկու պլատֆորմաների քննարկման հետևանքով պարտիական կազմակերպությունների մեծ մասն արտահայտվեց բոլշևիկյան պլատֆորմայի օգտին։*



*ՌՍԴԲՊ IV (միավորիչ) համագումարն աշխատում էր Ստոկհոլմում 1906 թվականի ապրիլի 10-ից մինչև 25-ը։ Համագումարին ներկա էր 112 պատգամավոր վճռական ձայնով 57 տեղական կազմակերպություններից և 22 պատգամավոր՝ խորհրդակցական ձայնով։ Համագումարում ներկայացված էին հետևյալ ազգային կազմակերպությունները։ Լեհական Թագավորության և Լիտվայի սոցիալ-դեմոկրատիայից՝ 3 մարդ, Բունդից՝ 3, Լատիշական սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայից՝ 3, մեկական ներկայացուցիչ Ուկրաինական սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայից և Ֆինլանդական բանվորական պարտիայից։*

*Բոլշևիկ պատգամավորների թվում էին՝ Վ. Ի. Լենինը, Ֆ. Ա. Սերգեևը (Արտյոմ), Ա. Վ. Լունաչարսկին, Մ. Ի. Կալինինը, Ն. Կ. Կրուպսկայան, Ե. Մ. Յարոսլավսկին, Ս. Գ. Շահումյանը, Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը, Ի. Վ. Ստալինը, Վ. Վ. Վորովսկին, Կ. Ե. Վորոշիլովը, Մ. Վ. Ֆրունզեն։ Համագումարում բոլշևիկներին պաշտպանում էր Լեհաստանի ու Լիտվայի սոցիալ-դեմոկրատիայի պատգամավոր Ֆ. Է. Ձերժինսկին։*

*Վճռական ձայն ունեցող պատգամավորների մեջ կային 46 բոլշևիկ և 62 մենշևիկ։ Մենշևիկների թվական գերակշռությունը բացատրվում էր նրանով, որ զինված ապստամբությունը գլխավորող բոլշևիկյան պարտիական շատ կազմակերպություններ չկարողացան ուղարկել իրենց պատգամավորներին։ Կենտրոնը, Ուրալը, Սիբիրը, Հյուսիսը՝ բոլշևիկների հենարանները, ներկայացված էին փոքրաթիվ պատգամավորներով։ Իսկ մենշևիկները, որոնք առավել մեծ թվով կազմակերպություններ ունեին երկրի ոչ-արդյունաբերական շրջաններում, հնարավորություն ունեցան ավելի շատ պատգամավորներ ուղարկել։ Համագումարի այդպիսի կազմը պայմանավորեց նրա որոշումների մեծ մասի մենշևիկյան բնույթը։*

*Համագումարը քննարկեց ագրարային հարցը, ընթացիկ մոմենտը և պրոլետարիատի դասակարգային խնդիրները, Պետական դումային ցույց տալիք վերաբերմունքի հարցը և այլ հարցեր։*

*Որպես ագրարային հարցի վերաբերյալ զեկուցող բոլշևիկների կողմից հանդես եկավ Վ. Ի. Լենինը, որը պաշտպանում էր ամբողջ կալվածատիրական հողի բռնագրավման և հողի ազգայնացման, այսինքն՝ հողի մասնավոր սեփականության վերացման և բոլոր հողերը պետությանն իբրև սեփականություն հանձնելու պահանջը։ Բոլշևիկների ագրարային ծրագիրը գյուղացիներին կոչ էր անում պայքարել կալվածատերերի և ցարի դեմ։ Հողի ազգայնացումը, ինչպես և ամբողջ ագրարային-գյուղացիական հարցի լուծումը կարելի էր իրականացնել միայն ցարական ինքնակալությունը տապալելու, ժողովրդի կողմից իշխանությունը գրավելու և պրոլետարիատի ու գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրա հաստատելու պայմանով։ Հողի ազգայնացումը պետք է ոչ միայն ոչնչացներ ճորտատիրության մնացորդները, այլև ուժեղացներ դասակարգային պայքարը հենց գյուղացիության ներսում, նպաստելով չքավորության համախմբմանը պրոլետարիատի*

շուրջը, արագացնելով բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի վերաճումը սոցիալիստական ռևոլյուցիայի։

Համագումարի բոլշևիկ պատգամավորների մի մասը (Ի. Վ. Ստալին, Ս. Ա. Սուվորով և ուրիշներ) պաշտպանում էր կալվածատիրական հողերը բաժանելու և դրանք որպես մասնավոր սեփականություն գյուղացիներին հանձնելու պահանջները։ «Բաժանարարների» սխալն այն էր, որ նրանք ելնում էին բուրժուա-դեմոկրատական ու սոցիալիստական ռևոլյուցիաների միջև տևական ընդմիջման վերաբերյալ դրույթից և հաշվի չէին առնում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու խնդիրները։

Մենշևիկները պաշտպանում էին հողի մունիցիպալիզացիայի ծրագիրը, որ նշանակում էր կալվածատիրական հողի անցում ինքնավարության տեղական օրգանների (մունիցիպալիտետների) տնօրինությանը, որոնցից գյուղացիները պետք է վարձակալեին հողը։ Մունիցիպալիզացիայի ծրագրի քաղաքական վնասն այն էր, որ ռևոլյուցիոն գործողությունների կոչ անելու փոխարեն այդ ծրագիրը վնասակար պատրանքներ էր սերմանում ագրարային հարցը խաղաղ ճանապարհով, ռեակցիոն կենտրոնական իշխանությունը պահպանելու պայմաններում լուծելու հնարավորության վերաբերյալ։ Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի գաղափարի փոխարեն, մենշևիկներն ըստ էության քարոզում էին գյուղացիների և կալվածատերերի համաձայնության քաղաքականություն։ Լենինը քննադատում էր մենշևիկների ծրագիրն ու «բաժանարարների» պահանջները։ Դրա հետ մեկտեղ նա նշում էր, որ «բաժանարարների» պահանջները սխալ են, բայց ոչ վնասակար, իսկ մենշևիկյան ծրագիրը համարում էր և՛ սխալ, և՛ վնասակար։ Ձայների մեծամասնությամբ համագումարն ընդունեց մենշևիկյան ագրարային ծրագիրը։ Բոլշևիկներին, սակայն, հաջողվեց հասնել այն բանին, որ բանաձևի մեջ, մենշևիկների առաջարկած կալվածատիրական հողի «օտարման» օպորտունիստական ֆորմուլայի փոխարեն, մտցվեց այդ հողի բռնագրավման լոզունգը։

«Արդի մոմենտի և պրոլետարիատի դասակարգային խնդիրների մասին» զեկուցումը տվեց Վ. Ի. Լենինը։ Բոլշևիկները հանդես էին գալիս լիբերալ բուրժուազիայի պարտիաներին մերկացնելու և ցարական ինքնակալության ու նրան աջակցող քաղաքական պարտիաների դեմ մղվող պայքարում դեմոկրատական ուժերի հետ դաշինք կնքելու օգտին։ Իսկ մենշևիկները ռևոլյուցիայի ղեկավարությունը հանձնում էին բուրժուազիայի ձեռքը։

Դումայի հարցի առիթով բոլշևիկները խնդիր էին առաջադրում՝ պայքարել կոնստիտուցիոն պատրանքների դեմ, որոնք լիբերալ բուրժուազիան տարածում էր ժողովրդի մեջ, խորտակել ցարական կառավարության խոստումների և օրենքների նկատմամբ եղած հավատը, մերկացնել դումայի կադետական մեծամասնության երկերեսանիությունը, անկայունությունը։ Իսկ մենշևիկները, դուման դիտելով որպես հին ռեժիմի դեմ մղվող պայքարը միավորելու, «կոորդինացնելու» ընդունակ «համազգային քաղաքական կենտրոն», վարում էին ռևոլյուցիան կծկելու գիծ, պառլամենտական, դումայական ուղու գիծ։ Այդ բանում առանձնապես բացահայտորեն երևաց մենշևիկների՝ որպես բուրժուազիայի ազդեցությունը բանվոր դասակարգին հաղորդողների, դերը։

Կազմակերպական հարցի առթիվ IV համագումարն ընդունեց կանոնա-



դրության առաջին պարագրաֆի լենինյան ձևակերպումը, այսպիսով դեն նետելով Մարտովի օպորտունիստական ձևակերպումը։

Առաջին անգամ կանոնադրության մեջ մտցվեց դեմոկրատական ցենտրալիզմի բոլշևիկյան ձևակերպումը։ Այդ ժամանակից ի վեր նշված ձևակերպումը մտնում է պարտիայի կանոնադրության մեջ։

Համագումարը որոշում ընդունեց լեհական ու լատիշական սոցիալ-դեմոկրատիայի հետ միավորվելու մասին, որոնք ՌՍԴԲՊ կազմի մեջ մտան որպես տերիտորիալ կազմակերպություններ և որոնք աշխատանք էին տանում տվյալ շրջանի բոլոր ազգությունների պրոլետարիատի շրջանում։ Համագումարն ընդունեց նաև ՌՍԴԲՊ հետ Բունդի միավորման պայմանների նախագիծը, բայց հատուկ բանաձևում վճռականորեն արտահայտվեց պրոլետարիատին ըստ ազգությունների կազմակերպելու դեմ։ Ուկրաինական սոցիալ-դեմոկրատական պարտիան ՌՍԴԲՊ կազմում չընդունվեց, որպես մի կազմակերպություն, որը ներկայացնում էր մանրբուրժուական ինտելիգենցիային։ Ուկրաինայի բանվոր դասակարգը միավորվում և պայքարում էր բանվորական պարտիայի համառուսաստանյան կազմակերպություններում։

IV համագումարի ընտրած Կենտրոնական Կոմիտեում մտան 3 բոլշևիկ և 7 մենշևիկ։ Կենտրոնական օրգանի՝ «Սոցիալ-դեմոկրատ» թերթի խմբագրությունը կազմվեց միմիայն մենշևիկներից։

Այն սուր պայքարը, որ համագումարում բոլշևիկները մղեցին մենշևիկների դեմ ռևոլյուցիայի բոլոր սկզբունքային հարցերում, կարևոր նշանակություն ունեցավ պրոլետարիատին դաստիարակելու, մենշևիկներին մերկացնելու համար, մարքսիստական պարտիայի, նոր տիպի պարտիայի կոփման պայքարի համար։ Կյանքը պատասխան էր պահանջում ռևոլյուցիայի վճռական հարցերին։ Ռևոլյուցիայի ընթացքում տարաձայնությունները բոլշևիկների և մենշևիկների միջև խորանում էին։ Մենշևիկները աստիճան առ աստիճան ցած էին գլորվում, ավելի ու ավելի բացահայտորեն դրսևորելով իրենց դերը որպես բուրժուազիայի գործակալություն բանվորական միջավայրում։

Համագումարից անմիջապես հետո Լենինը բոլշևիկ պատգամավորների անունից գրեց պարտիային ուղղված մի դիմում, որտեղ տվեց մենշևիկյան որոշումների սկզբունքային քննադատությունը, որոշումներ, որոնք չնայած բոլշևիկների բողոքներին, ընդունել էր IV համագումարը։ Նա վճռական քննադատության ենթարկեց հողի մունիցիպալիզացիայի ծրագիրը և կոչ էր անում բոլոր սոցիալ-դեմոկրատներին՝ հերթական համագումարում հասնել այն բանին, որ որոշում ընդունվի այդ ծրագիրը վերացնելու մասին։ Բոլշևիկները ՌՍԴԲՊ շարքերում պայքար ծավալեցին այն բանի համար, որ պարտիայի հաջորդ համագումարն ընդունի ճիշտ, ռևոլյուցիոն, մարքսիստական որոշումներ և դրանով իսկ վերացնի IV համագումարի սխալ, մենշևիկյան բանաձևերը։

Քանի որ պարտիայի կենտրոնական օրգանն ընկավ մենշևիկների ձեռքը, բոլշևիկները 1906 թվականի օգոստոսի 21-ին լույս ընծայեցին «Պրոլետարի» անլեգալ թերթի առաջին համարը Վ. Ի. Լենինի խմբագրությամբ, մի թերթ, որը փաստորեն դարձավ բոլշևիկների կենտրոնական օրգանը։ Բոլշևիկները կազմակերպեցին լեգալ թերթերի («Վոլնա», «Վպերյոդ», «Էխո») լույսընծայումը։

IV համագումարում տեղի ունեցավ բոլշևիկների և մենշևիկների միայն

*ձևական միավորում ՌՍԴԲՊ շրջանակներում: Իրականում թե՛ մեկը և թե՛
մյուսն ունեին իրենց հայացքները, ռևոլյուցիայի կարևորագույն հարցերի
վերաբերյալ իրենց պլատֆորման: Բոլշևիկները շարունակում էին խորապես
սկզբունքային պայքար մղել մենշևիկների դեմ, բանվորական շարժման մեջ
օպորտունիզմի դեմ: Բոլշևիկները պահպանեցին իրենց կազմակերպական
ինքնուրույնությունը և ղեկավար կենտրոնը: Մենշևիկներն իրենց հերթին
ունեին իրենց ինքնուրույն կազմակերպությունները: Լենինը հետագայում
գրում էր.*

> *«Մենշևիկների հետ մենք 1903—1912 թվականներին մի քանի
> տարով ձևականորեն միասնական սոցիալ-դեմոկրատական պար-
> տիայի մեջ էինք՝* երբեք *չդադարեցնելով գաղափարական ու քաղա-
> քական պայքարը նրանց դեմ, որպես բուրժուական ազդեցությունը
> պրոլետարիատին հաղորդողների և օպորտունիստների դեմ»* (Երկեր,
> հատ. 31, էջ 72):

*Բոլշևիկները ղեկավարվում էին Լենինի այն դրույթով, թե չի կարելի
միավորման քաղաքականությունը շփոթել բոլշևիկներին և մենշևիկներին
իրար խառնելու հետ, նրանց գաղափարական ու քաղաքական դիրքերը իրար
խառնելու հետ: Հաշվի առնելով այն ահագին վնասը, որ բերում էր մենշևիկ-
ների ավելի ու ավելի օպորտունիստական դարձող գիծը (աջակցություն կա-
դետական դումային, կապիտուլյացիա լիբերալ բուրժուազիայի հանդեպ,
ռևոլյուցիոն պայքարի կծկման կուրս), Լենինն ու բոլշևիկներն ուժեղացրին
պայքարն այդ գծի դեմ:*

## 5. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՏԱԿՏԻԿԱՆ I ԵՎ II ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ: ՌՍԴԲՊ V ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ: ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ:

*Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո ռևոլյու-
ցիան սկսեց աստիճանաբար թուլանալ: Բայց խորն էին ռևոլյուցիան ծնող
պատճառները և ուժեղ էին մասսաների ռևոլյուցիոն տրամադրությունները
ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում: Ռևոլյուցիոն պայքարը շարունակ-
վում էր ընդհուպ մինչև 1907 թվականի կեսերը: Ռևոլյուցիայի ելած Ռուսաս-
տանի բանվոր դասակարգն ու ժողովրդական մասսաները նահանջում էին
մարտեր մղելով:*

*Ցարիզմն ուժեղացնում էր գրոհը: Երկրում գործում էին պատժիչ ար-
շավախմբերը, ռազմադաշտային դատարանները, մոլեգնում էին ջարդարար-
ների սևհարյուրյակային բանդաները: Ցարական դահիճները ջախջախում էին
բանվորների դեպուտատների Սովետները, արհմիությունները և բանվորների,
գյուղացիների ու զինվորների մյուս մասսայական կազմակերպությունները:
Առանձնապես դաժան հետապնդումների էին ենթարկվում բանվոր դասակար-
գի լավագույն ներկայացուցիչները՝ բոլշևիկները: Նրանցից հազարավորները
գնդակահարվեցին, մահապատժի դատապարտվեցին, կախվեցին առանց դատի
ու հետաքննության:*

*Ռևոլյուցիայի դեմ մղած պայքարում ցարական կառավարությունը գոր-
ծում էր ոչ միայն ռեպրեսիաների մեթոդով, այլև ռեֆորմների օգնությամբ:
1905 թվականի դեկտեմբերի 11-ին, Մոսկվայում տեղի ունեցող զինված*



*ապստամբության եռուն պահին, օրենք հրատարակվեց պետական դումայի
ընտրությունների մասին: Ցարիզմը ջանում էր մասսաների մեջ պատրանքներ
սերմանել, թե նրանք կարող են իրենց պահանջներն իրականացնել խաղաղ
ճանապարհով, «Ռուսաստանի պառլամենտի» միջոցով: Կառավարությունը
ձգտում էր ամենից առաջ խաբել գյուղացիներին, որոնք դեռ հավատում էին
դումայի միջոցով կալվածատիրական հողն ստանալու հնարավորությանը,
նրանց կտրել բանվոր դասակարգից և դրանով իսկ վերջնական հարված
հասցնել ռևոլյուցիային:*

*Նոր ընտրական օրենքի համաձայն երկրի բնակչության կեսից ավելին
զրկվում էր ընտրական իրավունքներից: Դումայի ընտրությունները ոչ ընդ-
հանուր էին, ո՛չ հավասար, ո՛չ ուղղակի, ո՛չ էլ գաղտնի: Ապագա դումայում
ապահովվում էր կալվածատերերի ու կապիտալիստների ներկայացուցիչների
հսկայական գերակշռությունը: Բնակչությունն ըստ գույքային-դասակարգա-
յին հատկանիշի բաժանվում էր առանձին տարակարգերի, այսպես կոչված՝
կուրիաների (հողատիրական, քաղաքային, գյուղացիական և բանվորական):
Յուրաքանչյուր կուրիայում ընտրվում էին պատվիրակներ, բայց ձայների
անհավասար թվով: Կալվածատերերի մեկ պատվիրակին ընկնում էր 2 հազար
ընտրող, գյուղացիների մեկ պատվիրակին՝ 30 հազար, իսկ բանվորների մեկ
պատվիրակին՝ 90 հազար:*

*1906 թվականին բանվոր դասակարգի և գյուղացիության մղած համառ
պայքարը ռևոլյուցիոն նոր վերելքի հույսեր էր ծնում: Այդ պայմաններում
բոլշևիկները չէին կարող հրաժարվել ռևոլյուցիայի հետագա խորացման ու
ընդլայնման դիրքորոշումից: Ուստի նրանք, Տամմերֆորսի կոնֆերենցիայի
որոշման համաձայն, մասսաներին կոչ էին անում բոյկոտել դուման և լայ-
նորեն օգտագործում էին ընտրական ժողովները զինված ապստամբության
օգտին ագիտացիա մղելու համար: Իսկ մենշևիկները հռչակեցին կիսաբոյկո-
տի, ընտրություններին մասնակի կերպով մասնակցելու տակտիկան (լիա-
զորների ու պատվիրակների ընտրություն և հետո էլ՝ հրաժարում դումայի
անդամների ընտրություններից): Մենշևիկների այսպիսի կիսատ-պռատ և
անսկզբունք դիրքորոշումը պառակտում էր բանվորներին, նպաստում էր
վնասակար կոնստիտուցիոն պատրանքների տարածմանը:*

*1906 թվականի հունվար-փետրվարին բոլշևիկյան ու մենշևիկյան պլատ-
ֆորմաների հիման վրա ՌՍԴԲՊ-ում լայն դիսկուսիա տեղի ունեցավ դումա-
յական տակտիկայի հարցերի շուրջը: Տեղական պարտիական կազմակերպու-
թյունների մեծ մասն արտահայտվեց ակտիվ բոյկոտի տակտիկայի օգտին:
Առավել գիտակից ու ռևոլյուցիոն բանվորները և դեմոկրատական ինտելիգեն-
ցիայի մի մասը բոյկոտեցին ընտրությունները: Սակայն դումայի ընտրու-
թյունները վիժեցնել չհաջողվեց: Բոյկոտի անհաջողության հիմնական պատ-
ճառը դումայի հրավիրումը վիժեցնելու ընդունակ մասսայական ռևոլյուցիոն
վերելքի բացակայությունն էր: Բոյկոտի անհաջողությանը նպաստեցին նաև
մենշևիկների կազմալուծիչ դիրքորոշումները և ուժեղ կոնստիտուցիոն պատ-
րանքների առկայությունը գյուղացիության մեջ, որն իր զգալի մասով են-
թարկվել էր կադետների հաճոյախոսություններին: Հետագայում, վերլուծե-
լով ռևոլյուցիայի փորձը, Լենինը սխալ համարեց I դումայի բոյկոտը 1906
թվականին, որովհետև կյանքը ցույց տվեց, որ այդ ժամանակ ռևոլյուցիայի
վերելքի ամենաբարձր կետն արդեն անցել էր:*

*I Պետական դումայում մեծամասնություն ստացավ կադետական պարտիան։*

*Բոլշևիկներն իրենց առջև խնդիր դրեցին՝ մերկացնել դումայի, ինքնակալության այդ թզատերևի գործունեությունը։ Այդ ժամանակաշրջանում պարտիայի կարևորագույն քաղաքական խնդիրներից մեկը Լենինը համարում էր գյուղացիների կոնստիտուցիոն պատրանքների դեմ պայքարելը։ Բանվոր դասակարգի և գյուղացիների դաշինքն ամրապնդելու նպատակով բոլշևիկներն աջակցում էին տրուդովիկներին՝ I դումայի գյուղացիական դեպուտատներին, որոնք այն ժամանակ արտացոլում էին գյուղացիական մասսաների ձգտումները հողի համար մղվող պայքարում։*

*Մենշևիկները, ելնելով ռևոլյուցիայի շարժիչ ուժերի և հեռանկարների օպորտունիստական գնահատականից, դուման դիտում էին որպես ռևոլյուցիոն ուժերի «համախմբման կենտրոն»։ IV համագումարում ընտրված մենշևիկյան Կենտկոմը կոչ էր անում աջակցել դումայի՝ կադետական մինիստրություն ստեղծելու մտադրությանը։ Նման առաջարկությունը կարող էր միայն ամրապնդել կոնստիտուցիոն պատրանքները, կեղծ հույսեր ծնել իշխանությունը խաղաղ ճանապարհով ժողովրդին անցնելու հնարավորության վերաբերյալ։*

*Կենտկոմը դումայի հարցերում պարտիայի կամքը չէր արտահայտում։ Տեղական պարտիական կազմակերպությունների մեծ մասը, ելնելով դումայի լենինյան գնահատականից և մենշևիկյան դիրքերի բոլշևիկյան քննադատությունից, դատապարտեց Կենտկոմի օպորտունիստական գիծը։*

*I դումայի հրավիրումը չկանգնեցրեց ռևոլյուցիոն շարժումը։ Պրոլետարիատը ծանր արիերգարդային մարտեր էր մղում սկսվող քաղաքական ռեակցիայի դեմ, ռևոլյուցիոն շարժման մեջ ներգրավելով ամենախոր ռեզերվները։ Հաշվի առնելով դեկտեմբերյան ապստամբության փորձը, պարտիան ուժեղացրեց աշխատանքը գյուղացիության մեջ և առանձնապես զինվորների շրջանում։ 1905 թվականի վերջերին—1906 թվականի սկզբներին զինվորական-պարտիական մի շարք կազմակերպություններ սկսեցին հատուկ թերթեր հրատարակել զինվորների և նավաստիների համար՝ «Կազարմա»-ն (Պետերբուրգ), որը փաստորեն բոլշևիկների զինվորական կազմակերպության կենտրոնական օրգանն էր, «Սոլդատսկայա ժիզն»-ը (Մոսկվա), «Սոլդատ»-ը (Սեվաստոպոլ), «Գոլոս սոլդատա»-ն (Ռիգա), «Ժիզն կազարմի»-ն (Վորոնեժ) և այլ թերթեր։*

*1906 թվականի ամռանը նոր ուժով բռնկվեց գյուղացիական շարժումը։ Գյուղացիական հուզումներն ընդգրկեցին 215 գավառ՝ Եվրոպական Ռուսաստանի բոլոր գավառների կեսը։ Շարունակվում էին ռևոլյուցիոն ելույթները զորքերի մեջ։ Զինվորների ու նավաստիների առավել խոշոր զինված ելույթները 1906 թվականին տեղի ունեցան Բալթիական նավատորմում՝ Սվեաբորգում, Կրոնշտադտում, Ռևելում։*

*Ռևոլյուցիան վերջնականապես ճնշելու նպատակով ցարական կառավարությունը ձեռնարկեց նոր քայլերի։ 1906 թվականի հուլիսի 8-ին ցրվեց I Պետական դուման, որի ամբիոնից ցարական կառավարությունը հաճախ էր քննադատության ենթարկվում, գլխավորապես ագրարային հարցի առիթով։ Դումայի ցրումից հետո հակառևոլյուցիայի հարձակումն ուժեղացավ։*

*Ռևոլյուցիայի վայրէջքի պայմաններում բոլշևիկները փոխեցին իրենց*



*տակտիկան։ Նրանք որոշեցին մասնակցել II Պետական դումային, որպեսզի այն օգտագործեն որպես ամբիոն՝ ռևոլյուցիոն ագիտացիա մղելու համար, ինքնակալությունն ու հակառևոլյուցիոն բուրժուազիային մերկացնելու համար։*

*Բոլշևիկները ծավալեցին ընտրական կամպանիա, այն օգտագործելով պրոլետարիատին կազմակերպելու և քաղաքականապես լուսավորելու համար։*
*Նրանք առաջ քաշեցին տրուդովիկների հետ «ձախ բլոկ» կազմելու գաղափա-*
*րը։ Բոլշևիկներն ընդգծում էին տրուդովիկների ագրարային պահանջների*
*ռևոլյուցիոն-դեմոկրատական բնույթը, տրուդովիկներ, որոնք, ինչպես նշում*
*էր Լենինը, չնայած իրենց մանրբուրժուական սահմանափակությանը, արտա-*
*հայտում են «պատմական տվյալ մոմենտում մի իրական և պրոգրեսիվ բան»*
(Երկեր, հատ. 13, էջ 295)։

*Բոլշևիկների դումայական տակտիկայի գլխավոր նպատակն էր գյուղա-*
*ցիությանն ազատագրել լիբերալ բուրժուազիայի ազդեցությունից, դումայում*
*ստեղծել բանվոր դասակարգի և գյուղացիության ներկայացուցիչների ռևո-*
*լյուցիոն բլոկ։*

*Մենշևիկները կողմնակից էին կադետների հետ բլոկ կնքելու թե՛ ընտ-*
*րական կամպանիայի ժամանակ և թե՛ բուն դումայում, օգնելով բուրժուազիա-*
*յին կեղծ հույսեր սերմանելու ժողովրդի մեջ, թե հնարավոր է ազատությունը*
*նվաճել առանց զինված ապստամբության։*

*Տակտիկայի հիմնական հարցերում մենշևիկյան Կենտկոմի գրաված*
*օպորտունիստական դիրքը հարուցում էր տեղական պարտիական կազմա-*
*կերպությունների ճնշող մեծամասնության վրդովմունքը, որոնք պահանջում*
*էին շտապ հրավիրել արտակարգ պարտիական համագումար հրավիրել։*
*էին շուտափույթ կերպով արտակարգ պարտիական համագումար հրավիրել։*
*1906 թվականի սեպտեմբերին Պետերբուրգի կոմիտեն, Կենտրոնական Ռու-*
*սաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների մարզային բյու-*
*րոն, Լեհական Թագավորության և Լիտվայի սոցիալ-դեմոկրատիայի Գլխավոր*
*վարչությունը, Լատիշական երկրամասի սոցիալ-դեմոկրատիայի Կենտկոմը*
*դիմում ընդունեցին պարտիական համագումար հրավիրելու մասին։ Այդ դիմու-*
*մը ստացավ պարտիական շատ կազմակերպությունների պաշտպանությունը։*

*1907 թվականի ապրիլի 30-ից մինչև մայիսի 19-ը Լոնդոնում տեղի*
*ունեցավ ՌՍԴԲՊ V համագումարը։ Համագումարին ներկա էին 336 պատ-*
*գամավոր, որոնք ներկայացնում էին պարտիայի 147 հազար անդամների (46*
*հազար բոլշևիկների, 38 հազար մենշևիկների, 25 հազար բունդականների, 25*
*հազար լեհական սոցիալ-դեմոկրատների, 13 հազար լատիշական սոցիալ-*
*դեմոկրատների)։ Պատգամավորների մեջ կային 105 բոլշևիկ, 97 մենշևիկ,*
*Լեհական Թագավորության և Լիտվայի սոցիալ-դեմոկրատիայի 44 անդամ և*
*Լատիշական երկրամասի սոցիալ-դեմոկրատիայի 29 անդամ, մնացած պատ-*
*գամավորները ներկայացնում էին Բունդին և պարտիայի մյուս կազմակեր-*
*պություններին։*

*Օպորտունիստական հոսանքների ու դրանց նկատմամբ հաշտվողակա-*
*նության դեմ Լենինի գլխավորությամբ բոլշևիկների մղած վճռական պայքա-*
*րը և պարտիայի անդամների մեջ տարած ամենօրյա բացատրական աշխա-*
*տանքը այն հետևանքն ունեցան, որ բոլշևիկները համագումարում մեծամաս-*
*նություն ստացան առավել խոշոր արդյունաբերական կենտրոնների (Պետեր-*
*բուրգ, Մոսկվա, Ուրալ, Իվանովո-Վոզնեսենսկ և այլն) պատգամավորների*

մեջ: Մենշևիկները համագումար էին եկել գլխավորապես գյուղացիական և արհեստավորական շրջաններից:

Համագումարում կար բոլշևիկ-պատգամավորների միաձույլ խումբ՝ Վ. Ի. Լենին, Ա. Ս. Բուբնով, Ի. Ֆ. Դուբրովինսկի, Մ. Ն. Լյադով, Ե. Մ. Յարոսլավսկի, Ս. Գ. Շահումյան, Ի. Վ. Ստալին, Կ. Ե. Վորոշիլով, Մ. Գ. Ցխակայա և ուրիշներ:

ՌՍԴԲՊ V համագումարի աշխատանքին մասնակցում էր պրոլետարական մեծ գրող Ա. Մ. Գորկին: Գորկին սերտորեն կապված էր բանվորական շարժման հետ, բոլշևիկների պարտիայի հետ: Լինելով ժողովրդի իսկական բարեկամը, նա սրտանց համակրում էր ռևոլյուցիային և հսկայական օգնություն էր ցույց տալիս բոլշևիկներին: Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում Գորկուն և սերտ կապ էր պահպանում նրա հետ շատ տարիների ընթացքում: Ա. Մ. Գորկին հաճախ բացահայտորեն հանդես էր գալիս մենշևիկների դեմ, դատապարտում նրանց օպորտունիստական գիծը, խարազանում կադետներին, լիբերալներին, անձնազոհ պայքար էր մղում ցարիզմի դեմ:

Համագումարում բոլշևիկներին պաշտպանում էին Լեհաստանի ու Լատվիայի սոցիալ-դեմոկրատական պարտիաները: Սակայն այդ պարտիաների ներկայացուցիչները երբեմն տատանվում էին, իրենց ձայները տալիս էին մենշևիկներին:

Համագումարը հիմնական հարցերի վերաբերյալ ընդունեց բոլշևիկյան որոշումներ, որոնք սահմանում էին պարտիայի քաղաքականությունը երկար ժամանակվա համար:

Համագումարում գլխավորը բուրժուական պարտիաներին ցույց տալիք վերաբերմունքի հարցն էր: Զեկուցումով հանդես եկավ Վ. Ի. Լենինը:

Պարտիաներն արտահայտում էին Ռուսաստանի որոշակի դասակարգերի շահերը: Ոչ-պրոլետարական պարտիաների նկատմամբ բոլշևիկների և մենշևիկների տարբեր վերաբերմունքը, դրա հետ մեկտեղ որոշում էր նրանց դիրքերը ռևոլյուցիայի արմատական հարցերում: Լենինն անհարժեշտ էր համարում պայքարել սևհարյուրյակային պարտիաների («Ռուս ժողովրդի միություն», «Միացյալ ազնվականության խորհրդի» և ուրիշների) դեմ, խոշոր կալվածատերերի ու բուրժուազիայի պարտիաների («Հոկտեմբերի 17-ի միություն», առևտրա-արդյունաբերական պարտիայի և ուրիշների) դեմ: Լիբերալ բուրժուազիայի պարտիայի՝ կադետների պարտիայի նկատմամբ, Լենինն առաջարկում էր այդ պարտիայի դեմ մղած պայքարի ընթացքում հատկապես մերկացնել նրա կեղծ դեմոկրատիզմը, որպեսզի կադետներին հնարավորություն չտրվի իրենց հետևից տանելու գյուղացիությանը և քաղաքային մանր բուրժուազիային: Իսկ մենշևիկներն առաջարկում էին կադետների հետ բլոկ կնքել Պետական դումայում: Լենինը համագումարում մերկացրեց մենշևիկների այդ կապիտուլյանտական տակտիկան:

Լենինը այլ կերպ էր գնահատում տրուդովիկներին, ինչպես այն ժամանակ անվանում էին դումայի աշխատավորական խմբի ներկայացուցիչներին, որի կազմի մեջ մտնում էին գյուղացիների դեպուտատները՝ անպարտիականներ, էսեռներ, ժողովրդական սոցիալիստներ: Նրանք տատանվում էին լիբերալների հեգեմոնիային ենթարկվելու և կալվածատիրական հողատիրության ու ճորտատիրական պետության դեմ վճռաբար պայքարելու միջև: Լենինն առաջարկում էր մերկացնել աշխատավորական խմբի ռեակցիոն կողմը և մի-



նույն ժամանակ նպատակահարմար էր գտնում որոշ պայմաններում համաձայնություն կնքել տրուդովիկների՝ որպես մանրբուրժուական դեմոկրատիայի ներկայացուցիչների հետ՝ կալվածատերերի և ինքնակալության դեմ բանվոր դասակարգի ու գյուղացիության մղած ընդհանուր պայքարում:

Բուրժուական պարտիաներին ցույց տալիք վերաբերմունքի հարցի առթիվ համագումարն ընդունեց բոլշևիկյան բանաձև:

Մենշևիկները լիովին ձախողվեցին իրենց, այսպես կոչված, «բանվորական համագումարի» գաղափարի կապակցությամբ: Այդ գաղափարն առաջ քաշեց մենշևիկ Աքսելրոդը և այն պաշտպանեցին մի շարք այլ ականավոր մենշևիկներ: Նրանք առաջարկում էին հրավիրել բանվորական տարբեր կազմակերպությունների ներկայացուցիչների համագումար և այդ համագումարում հիմնել «լայն բանվորական պարտիա», որի մեջ մտնեին սոցիալ-դեմոկրատները, էսեռները և անարխիստները: Իրականում դա կնշանակեր ՌՍԴԲՊ լիկվիդացում: Բոլշևիկների առաջարկով «բանվորական համագումարի» գաղափարը դատապարտվեց որպես բանվորական շարժման համար անպայման վնասակար գաղափար: Բոլշևիկների հետ միասին «բանվորական համագումարին» դեմ էին լեհական սոցիալ-դեմոկրատները (Ռոզա Լյուքսեմբուրգի գլխավորությամբ) և լատիշները:

Բոլշևիկները մեծ հաղթանակ տարան օպորտունիստների դեմ Պետական դումայում բանվոր դասակարգի ներկայացուցիչների վարելիք գծի հարցում: Համագումարը որոշեց, որ սոցիալ-դեմոկրատների դումայում գործունեության ընդհանուր բնույթը պետք է ենթարկվի արտադումայական պայքարին, որ դուման պետք է օգտագործել ամենից առաջ որպես ամբիոն՝ ցարական ինքնակալությունը, ինչպես նաև բուրժուազիայի համաձայնողական քաղաքականությունը մերկացնելու համար, պարտիայի ռևոլյուցիոն ծրագիրը հռչակելու և պրոպագանդելու համար:

Դա պառլամենտական հիմնարկներում պրոլետարիատի ներկայացուցիչների մի նոր, ռևոլյուցիոն-մարքսիստական վարքագիծ էր: Դա օրինակ էր ցույց տալիս ամբողջ միջազգային բանվորական շարժմանը: Այդ վարքագիծն առանձնապես մեծ նշանակություն էր ձեռք բերում այն կապակցությամբ, որ արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատներն ավելի ու ավելի էին սահում օպորտունիզմի ուղին, հրաժարվում էին ռևոլյուցիոն պայքարից, բանվոր դասակարգի մեջ պատրանքներ էին սերմանում պառլամենտական ուղիով իշխանությունը նվաճելու հնարավորության մասին:

Համագումարը բոլշևիկյան բանաձև ընդունեց նաև պարտիայի և արհմիությունների հարաբերությունների մասին: Ռևոլյուցիայի հետևանքով Ռուսաստանում բուռն թափով աճում էր արհմիութենական շարժումը: 1907 թվականի մոտերքը կար մոտ 650 արհմիություն: Թե ում հետևից կգնան արհմիությունները,— շատ բանով դրանից էր կախված ռևոլյուցիոն պայքարի ընթացքը: Մենշևիկները պաշտպանում էին արհմիությունների «չեզոքությունը»: Բոլշևիկներն անհրաժեշտ էին համարում բանվորներին դաստիարակել պրոլետարիատի դասակարգային պայքարն ու սոցիալիստական խնդիրներն ըմբռնելու ոգով: V համագումարը սահմանեց, որ ՌՍԴԲՊ բոլոր անդամները պետք է նպաստեն, որ «արհեստակցական միությունները ճանաչեն ս.-դ. պարտիայի գաղափարական ղեկավարությունը...» («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», I մ., էջ 211):

*V համագումարն ընտրեց Կենտկոմ, որի մեջ լենինյան գծի կողմնակիցները մեծամասնություն ստացան։ Սակայն Կենտկոմի կազմի մեջ մտան նաև մենշևիկները և ազգային սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ներկայացուցիչները, որոնք հաճախ տատանվում էին բոլշևիկների և մենշևիկների միջև։ Հաշվի առնելով տարբեր հոսանքների ներկայացուցիչներից բաղկացած Կենտկոմի ղեկավարության անհուսալիությունը, բոլշևիկները համագումարի ժամանակ խորհրդակցություն անցկացրին, որտեղ ստեղծեցին իրենց բոլշևիկյան կենտրոնը։*

*Համագումարում տարած հաղթանակը բոլշևիկների գլուխը չպտտեցրեց։ Լենինն ընդգծում էր, որ չի կարելի պարծենալ օպորտունիստների դեմ մղած պայքարում ձեռք բերած հաջողություններով, որ դեռ շատ մարտեր ու փորձություններ են սպասվում։*

*Ռուսական առաջին ռևոլյուցիան շարունակվում էր մոտ երկուս ու կես տարի։ Ռևոլյուցիայի նահանջը փաստորեն սկսվեց դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո։ Ռևոլյուցիան նահանջում էր դանդաղորեն, մարտեր մղելով։ 1907 թվականի կեսերին ակնհայտ դարձավ, որ բանվորների ու գյուղացիների ուժերը պակասում էին ցարիզմի դեմ հաղթանակ տանելու համար։ Ռեակցիան վճռական հարձակման անցավ։*

*1907 թվականի հունիսի 3-ին ցարական կառավարությունը ցրեց II Պետական դուման, Դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիան ձերբակալվեց։ Միաժամանակ հրատարակվեց նոր ընտրական օրենք, որը III Պետական դումայում ապահովում էր ճորտատեր-կալվածատերերի և խոշոր բուրժուազիայի ներկայացուցիչների անբաժան տիրապետությունը։*

*Բանվորական կազմակերպությունները ջախջախվեցին։ Ռեակցիան իր ամբողջ ուժով հարձակվեց բոլշևիկյան պարտիայի վրա։ Ոստիկանական իշխանությունները մի առանձին եռանդով էին ճգնում գտնել Լենինին՝ նրա նկատմամբ դատաստան տեսնելու համար։ Վաղօրոք նախազգուշացված լինելով հավատարիմ բարեկամների կողմից, Լենինը Ֆիննական ծոցի սառույցի վրայով, վտանգի ենթարկելով կյանքը, մեկնում է արտասահման։ Երկրորդ էմիգրացիայի ժամանակաշրջանում նա այստեղ մնաց ընդհուպ մինչև 1917 թվականի ապրիլը։*

*Ժողովրդական առաջին ռևոլյուցիան Ռուսաստանում վերջացավ պարտությամբ։*

*Ռևոլյուցիայի պարտության պատճառներից մեկն այն էր, որ Ռուսաստանի բանվոր դասակարգին դեռևս չհաջողվեց ամուր դաշինք ստեղծել գյուղացիության հետ ցարիզմի դեմ մղվող պայքարում. գյուղացիությունը գործում էր ցիրուցան, ոչ-բավականաչափ կազմակերպված և վճռականորեն։ Գյուղացիների ամենախոշոր ելույթները տեղի ունեցան այն ժամանակ, երբ ցարիզմին արդեն հաջողվել էր ճնշել ռևոլյուցիայի հիմնական օջախները երկրի արդյունաբերական կենտրոններում։ Այն ժամանակ քաղաքականապես չափազանց հետամնաց գյուղացիների մեծ մասը դեռևս հավատում էր ցարին։ Գտնվելով էսեռների ու կադետների ազդեցության տակ, նրանք իրենց հույսերը դնում էին ցարական Պետական դումայի վրա։ Ցարիզմի դեմ միահամուռ ռևոլյուցիոն գրոհ չկար նաև ճնշված ժողովուրդների աշխատավոր մասսաների կողմից, որոնց ուժերը ջլատում էին բուրժուական ու մանրբուրժուական նացիոնալիստական պարտիաները։*



*Այդ բոլորը բացասաբար էր անդրադառնում նաև բանակի վարքագծի վրա, որը հիմնականում բաղկացած էր զինվորի շինել հագած գյուղացիներից։ Թեև առանձին զորամասեր ակտիվորեն հանդես էին գալիս ինքնակալության դեմ, զինվորների մեծ մասը հավատարիմ էր մնում ցարական կառավարությանը և կատարում էր նրա հրամանները։*

*Բանվոր դասակարգը հանդես եկավ որպես ռևոլյուցիայի առաջատար ուժ։ Բայց բանվորները ևս բավականաչափ համերաշխ չէին գործում։ Բանվորների առանձին ջոկատներ պայքարի ելան այն ժամանակ, երբ պրոլետարիատի ավանգարդն արդեն զգալիորեն թուլացել էր։ Ապստամբության ղեկավարման համառուսաստանյան կենտրոնի բացակայության հետևանքով զինված պայքարն ստացավ տեղական անջատ-անջատ ապստամբությունների բնույթ։*

*Մենշևիկների պառակտիչ, կազմալուծիչ գործունեության հետևանքով ՌՍԴԲՊ-ն միասնական չէր։ Բոլշևիկները պայքարում էին ռևոլյուցիան ամեն կերպ ծավալելու, զինված ապստամբության միջոցով ցարիզմը տապալելու համար, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն ամրապնդելու, կադետական բուրժուազիային մեկուսացնելու համար, բանվորներից ու գյուղացիներից ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն ստեղծելու համար։ Մենշևիկները համառորեն պայքարում էին բոլշևիկների ռևոլյուցիոն գծի դեմ և գործում էին որպես բուրժուազիայի գործակալներ բանվորական շարժման մեջ։ ՌՍԴԲՊ ներսում միասնության բացակայությունը պառակտում էր բանվոր դասակարգի շարքերը և դրանով իսկ թուլացնում նրա գրոհը։ Այդ պատճառներով պրոլետարիատը չկարողացավ ամբողջովին և մինչև վերջը կատարել ռևոլյուցիայի հեգեմոնի իր դերը և ռևոլյուցիան հաղթանակի հասցնել։*

*Հակառևոլյուցիոն դեր խաղաց ռուսական լիբերալ բուրժուազիան, որը գործարքի մեջ մտավ ցարիզմի հետ։*

*Ռուսաստանում ռևոլյուցիայի պարտությանը նպաստեց այն ֆինանսական օգնությունը, որ ցույց տվին ցարական կառավարությանը օտարերկրյա իմպերիալիստները, որոնք վախենում էին Ռուսաստանի արդյունաբերության մեջ ներդրած իրենց կապիտալները կորցնելուց, ինչպես նաև ռևոլյուցիան ուրիշ երկրներում տարածվելուց։*

*Ցարիզմի դրության ամրապնդմանը ծառայեց Ճապոնիայի հետ հաշտության կնքումը 1905 թվականի օգոստոսին։*

*Չնայած ռուսական առաջին ռևոլյուցիան պարտություն կրեց,* **ինքնակալական կարգի մեջ բացվեց առաջին ճեղքը։** *Պրոլետարիատն իր հերոսական պայքարով իր և ամբողջ ժողովրդի համար ձեռք բերեց քաղաքական ու տնտեսական մի շարք նվաճումներ։ Ռուսաստանում առաջին անգամ, թեպետև կարճ ժամանակով, նվաճվեց խոսքի, միությունների, ժողովների ազատություն, ստեղծվեցին լեգալ բանվորական մամուլ, լուսավորական և կուլտուրական ընկերություններ, արհեստակցական կազմակերպություններ։*

*Ռևոլյուցիան ցարիզմից պոկեց առաջին ներկայացուցչական հաստատությունը՝ Պետական դուման։ Թեև խարդախված և իր իրավունքների մեջ սահմանափակված Պետական դուման ցարիզմի անզոր հավելուկն էր, բոլշևիկները դուման օգտագործում էին որպես ամբիոն՝ ռևոլյուցիոն ագիտացիայի և ցարիզմն ու բուրժուազիայի քաղաքական պարտիաները մերկացնելու համար։*

Պրոլետարիատը ձեռք բերեց իր աշխատանքի պայմանների մի շարք բարելավումներ: Արդյունաբերության շատ ճյուղերում որոշ չափով բարձրացվեց բանվորների աշխատավարձը: Ռևոլյուցիայի հետևանքով գյուղացիությունը հասավ այն բանին, որ վերացվեցին ետգնման վճարները, իջեցվեցին հողի վարձակալման և վաճառքի գները:

Բայց ռևոլյուցիայի գլխավոր նպատակը՝ ցարիզմի տապալումը չիրականացավ: Ռևոլյուցիան ժողովրդական մասսաներին համոզիչ կերպով ցույց տվեց, որ բավական չէ խախտել ցարական իշխանությունը, որ հարկավոր է ոչնչացնել այդ իշխանությունը:

## 6. ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ:

1905—1907 Թվականների ռուսական ռևոլյուցիան բացեց մի նոր դարաշրջան՝ քաղաքական ամենախոր ցնցումների և ռևոլյուցիոն ճակատամարտերի դարաշրջանը: Նրա հասցրած առաջին հարվածը ցարիզմին, որի շահերը միահյուսվում էին արևմտյան իմպերիալիզմի շահերի հետ, թուլացնում էր ամբողջ իմպերիալիստական սիստեմը:

Ռևոլյուցիան դրեց միջազգային բանվորական շարժման նոր էտապի սկիզբը և հզոր ազդեցություն գործեց գաղութների ու կիսագաղութների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի զարգացման վրա:

Ռևոլյուցիան հսկայական տպավորություն գործեց և ջերմ համակրանք առաջ բերեց Գերմանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Ավստրո-Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի և այլ երկրների պրոլետարիատի մեջ: «Փարիզի՝ ռևոլյուցիայի քաղաքի աշխատավորները,— ասված էր Ռուսաստանի պրոլետարներին ուղղված մանիֆեստում,— ամբողջ հոգով ձեզ հետ են և դիմում են ձեզ հետևյալ խոսքերով՝ հո՛ւյս դրեք մեզ վրա: Մեր օգնությունը ձեզ համար ապահովված է: Կորչի՛ ցարիզմը: Կորչի՛ շահագործողը: Կեցցե՛ սոցիալական ռևոլյուցիան»:

Ռուսաստանում տեղի ունեցող ռևոլյուցիան հսկայական ոգևորությամբ դիմավորեցին ֆրանսիական սոցիալիստական մտքի ներկայացուցիչներ՝ Ժ. Գեդը, Պ. Լաֆարգը, Ժ. Ժորեսը, գերմանական սոցիալ-դեմոկրատիայի ականավոր գործիչներ՝ Ա. Բեբելը, Ռ. Լյուքսեմբուրգը, Կ. Լիբկնեխտը, Ֆ. Մերինգը, Կ. Ցետկինը և ուրիշներ: «Այն ազատությունը, որ ձեռք կբերի Ռուսաստանը, միաժամանակ ազատություն կլինի Պրուսիայի համար, Սաքսոնիայի համար, Գերմանիայի համար»,— ասում էր Կ. Լիբկնեխտը, կոչ անելով գերմանական բանվորներին «կանգնել ռուսական ռևոլյուցիայի դրոշի տակ»:

Ռևոլյուցիոն իրադարձությունները ջերմ արձագանք գտան Ավստրո-Հունգարիայի սլավոնական երկրների, հատկապես Չեխիայի, Մորավիայի, Գալիցիայի աշխատավորության մեջ. սկսվեց սերբերի, չեռնոգորցիների, սլովենների, խորվաթների, մակեդոնացիների ազգային-ազատագրական պայքարի վերելքը: Պրագայի փողոցներում 1905 Թվականի նոյեմբերին բարիկադային մարտեր էին տեղի ունենում: Գործադուլային լայն շարժման ազդեցության տակ ավստրիական կառավարությունն ստիպված էր ընդհանուր ընտրական իրավունք մտցնել:

Ռումինիայի աշխատավորները ջերմորեն ողջունեցին «Պոտյոմկին» զրահանավի ռևոլյուցիոն նավաստիներին և ի դեմս նրանց՝ ռևոլյուցիայի ելած



Ռուսաստանի ժողովրդին: 1907 Թվականին Մոլդավիայում և Վալախիայում հզոր գյուղացիական շարժում սկսվեց:

Հակառակ աջ սոցիալ-դեմոկրատական և արհմիութենական լիդերների կամքին, Գերմանիայի, Իտալիայի, Բուլղարիայի, Ավստրո-Հունգարիայի և մյուս երկրների բանվորներն սկսեցին ավելի ու ավելի հաճախ դիմել քաղաքական գործադուլներին:

Ռուսական ռևոլյուցիան բացառիկ նշանակություն ունեցավ Արևելքի երկրների ազգային ազատագրական շարժման համար: Արևելքի մի շարք խոշորագույն երկրներում՝ Իրանում, Թուրքիայում, Չինաստանում 1905—1912 Թվականներին տեղի ունեցան բուրժուական ռևոլյուցիաներ: Ազգային-ազատագրական շարժման վերելք սկսվեց Հնդկաստանում, Աֆղանստանում, Ինդոնեզիայում և այլ երկրներում: Լենինը նշում էր, որ 1905 Թվականի հզոր ապստամբությունը խոր հետքեր է թողել, և որ անջնջելի է նրա ազդեցությունը, որը դրսևորվում է հարյուրավոր միլիոն մարդկանց առաջընթաց շարժման մեջ:

1912 Թվականին Չինաստանում տապալվեց միապետական ռեժիմը: Բնութագրելով չինական ռևոլյուցիան, Լենինը մարգարեաբար խոսում էր այն մեծ ժողովրդի մասին, «որը կարողանում է ոչ միայն ողբալ իր դարավոր ստրկությունը, ոչ միայն երազել ազատության և հավասարության մասին, այլ նաև պայքարել Չինաստանի դարավոր ճնշողների դեմ» (Երկեր, հատ. 18, էջ 197—198):

1905 Թվականից հետո Արևելքի երկրներում սկսված դեմոկրատական ռևոլյուցիաները խարխլում էին իմպերիալիզմի գաղութային սիստեմը:

Ռուսական ռևոլյուցիայի արմատական հարցերի, այն է՝ բանվոր դասակարգի պարտիայի ղեկավար դերի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, պրոլետարիատի հեգեմոնիայի, պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրայի, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու, ազգային-ազատագրական շարժումը ղեկավարելու, ռևոլյուցիոն պայքարի ձևերի ու միջոցների հարցերի ռևոլյուցիոն լուծման համար բոլշևիկների մղած պայքարը լուրջ հարված էր հասցնում II Ինտերնացիոնալի օպորտունիստներին: Բոլշևիկները հերքեցին II Ինտերնացիոնալի պարտիաներում տիրող հայացքները բուրժուական ռևոլյուցիաների մեջ բուրժուազիայի հեգեմոնիայի անխուսափելիության մասին, գյուղացիության ռեակցիոնության, բուրժուական և սոցիալիստական ռևոլյուցիաների միջև տևական ընդմիջման մասին:

Օպորտունիզմի դեմ բոլշևիկների մղած պայքարը նպաստում էր Եվրոպայի սոցիալ-դեմոկրատական պարտիաների ռևոլյուցիոն և ռեֆորմիստական հոսանքների հետագա սահմանազատմանը, ձախ հոսանքների (գերմանական ձախ սոցիալ-դեմոկրատների, բուլղարական «տեսնյակների», բրիտանական սոցիալիստական պարտիայի ձախերի և մյուսների) ձևավորմանը: Բոլշևիկները ցույց էին տալիս օպորտունիզմի դեմ պայքարելու և մասսաների մեջ ամուր դիրքեր նվաճելու օրինակ:

Լենինը, բոլշևիկները մերկացնում էին նաև II Ինտերնացիոնալի ցենտրիստներին: Ցենտրիստական դիրքերի վրա էին կանգնած II Ինտերնացիոնալի պաշտոնական ղեկավարները: Նրանք օպորտունիստների նկատմամբ վարում էին հաշտվելու և զիջումների քաղաքականություն: Լենինը հաստատա-

*կամորեն գերմանական սոցիալ-դեմոկրատիայի ձախերին դրդում էր խզել կապերը ոչ միայն ռեֆորմիստների, այլև ցենտրիստների հետ:*

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ռուսական առաջին ռևոլյուցիան խոշորագույն մի իրադարձություն էր, որը վիթխարի ազդեցություն գործեց երկրի և միջազգային ռևոլյուցիոն շարժման ամբողջ հետագա զարգացման վրա: Ռևոլյուցիան գիտակցական ռևոլյուցիոն ստեղծագործության բարձրացրեց Ռուսաստանի ժողովրդական ամենալայն մասսաներին և նրանց հարստացրեց քաղաքական մեծ փորձով:*

> *«Այդ ժամանակաշրջանի յուրաքանչյուր ամիս,— մատնանշում էր Լենինը,— թե՛ մասսաներին ու առաջնորդներին, թե՛ դասակարգերին ու պարտիաներին քաղաքական գիտության հիմունքները սովորեցնելու իմաստով, հավասար էր «խաղաղ» կոնստիտուցիոն զարգացման մի տարուն»* (Երկեր, հատ. 31, էջ 13):

*Ռևոլյուցիան համոզիչ կերպով ցույց տվեց, որ միայն մասսաների ռևոլյուցիոն պայքարի, Ռուսաստանի ճնշված ժողովուրդների համատեղ պայքարի միջոցով կարելի է տապալել ցարական միապետությունը, իսկ ապա նաև կապիտալիզմի լուծը:*

*Ռևոլյուցիան բոլոր դասակարգերին ու պարտիաներին ցույց տվեց գործողության մեջ, բացահայտեց նրանց ձգտումները, նրանց դերն ու նշանակությունը երկրում: Ժողովրդական մասսաները կարող էին տեսնել, թե ինչի՛ համար է պայքարում այս կամ այն պարտիան, ո՛վ և ինչպիսի՛ դասակարգային շահեր է պաշտպանում:*

*Ռևոլյուցիան ակնառու կերպով հաստատեց, որ բանվոր դասակարգի միասնությունը ռևոլյուցիայի հաղթանակի կարևորագույն պայմանն է:*

*Չնայած իր բոլոր տատանումներին, աշխատավոր գյուղացիությունը հանդես եկավ որպես բանվոր դասակարգի դաշնակից: Ճիշտ է, այդ դաշինքը գտնվում էր ձևավորման պրոցեսում, դեռևս տարերային էր, չձևավորված, հաճախ չգիտակցված: Բանվորների և գյուղացիների ուժերը դեռևս մասնատված էին, բավականաչափ կազմակերպված չէին:*

*Պրոլետարիատը պատմության մեջ առաջին անգամ հանդես եկավ որպես բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի առաջնորդ, հեգեմոն, լիբերալ բուրժուազիայից խլելով ժողովրդական մասսաների ղեկավարությունը: Դրանով իսկ հաստատվեց, որ պրոլետարիատն ընդունակ է դառնալու ռևոլյուցիայի ղեկավարը, եթե նույնիսկ կապիտալիզմի անբավարար զարգացման հետևանքով նա իր թվով երկրի բնակչության փոքրամասնությունն է կազմում: Դրա հետ միասին ռևոլյուցիան ապացուցեց, որ գյուղացիության դեմոկրատական մասսաներն ընդունակ են օգնելու պրոլետարիատին հաղթանակը նվաճելու գործում: Ռևոլյուցիան ակնհայտորեն ցույց տվեց բուրժուազիայի հակառևոլյուցիոնությունը:*

*Ռուսական առաջին ռևոլյուցիան այն բանի ակնառու վկայությունն էր, որ համաշխարհային ռևոլյուցիոն շարժման կենտրոնը տեղափոխվել է Ռուսաստան, իսկ Ռուսաստանի հերոսական պրոլետարիատը դարձել է ամբողջ աշխարհի ռևոլյուցիոն պրոլետարիատի ավանգարդը:*

*Ռուսական առաջին ռևոլյուցիան առաջ քաշեց պայքարի նոր միջոցներ ու*



*ձևեր, որպիսիք անծանոթ էին նախկին ռևոլյուցիաներին: Առաջին անգամ կիրառվեց մասսայական քաղաքական գործադուլը, որը վերաճեց զինված ապստամբության: Ռևոլյուցիայի ընթացքում ստեղծված բանվորների դեպուտատների Սովետները ոչ միայն ապստամբության օրգաններ էին, այլև պրոլետարիատի ու գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրայի սաղմնային ձևը: Սովետները հանդիսացան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով մեր երկրում հաստատված Սովետական իշխանության նախատիպը:*

*Ռևոլյուցիայի ամբողջ ընթացքում ռուս բանվորների և գյուղացիների հետ միասին ցարիզմի ու կալվածատերերի դեմ հերոսաբար պայքարում էին Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լեհաստանի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի, Միջին Ասիայի և ցարական Ռուսաստանի մյուս ծայրամասերի բանվորներն ու գյուղացիները: Ռևոլյուցիայի փորձը հաստատեց, որ անհրաժեշտ ու հնարավոր է Ռուսաստանի բոլոր ազգությունների աշխատավորների մարտական դաշինքը պրոլետարիատի ղեկավարությամբ՝ ազգային ու սոցիալական ազատագրության համար նրանց համատեղ պայքարում:*

*Այդ ժամանակաշրջանում Լենինը մշակեց ռևոլյուցիայի կարևորագույն հարցերը և բանվոր դասակարգի պարտիայի գիծը ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում:*

*Ռևոլյուցիայի տարիները երկու քաղաքական գծի՝ բոլշևիկյան և մենշևիկյան գծերի քննություն եղան: Ռևոլյուցիոն պայքարի ընթացքը հաստատեց բոլշևիկների ստրատեգիական պլանի և տակտիկայի ճշտությունը:*

*Այդ ժամանակաշրջանում պարտիայի կյանքում կարևորագույն ուղենիշ հանդիսացավ III համագումարը, որը տվեց ռևոլյուցիայի բնույթի և շարժիչ ուժերի մարքսիստական-լենինյան բնորոշումը: Համագումարը պարտիային զինեց ռևոլյուցիոն-մարքսիստական ստրատեգիական պլանով և տակտիկական գծով, որոնք արմատապես տարբերվում էին մենշևիկների օպորտունիստական դիրքորոշումներից: Համագումարն ընդունեց կանոնադրության առաջին պարագրաֆի լենինյան ձևակերպումը, որը մեծ նշանակություն ունեցավ պարտիայի ամրապնդման համար:*

*IV (միավորիչ) համագումարում բոլշևիկները, ելնելով ռևոլյուցիայի շահերից, բանվոր դասակարգի միասնության շահերից, ռևոլյուցիոն մարքսիզմի պլատֆորմայի հիման վրա պարտիական միավորման փորձ են ձեռնարկում: Սակայն պարզվեց, որ մենշևիկների հետ ունեցած սկզբունքային տարաձայնությունները չափազանց խորն են: Համագումարի հետևանքը եղավ այն, որ մենշևիկների հետ իրականացվեց սոսկ ձևական միավորում ՌՍԴԲՊ շրջանակներում:*

*ՌՍԴԲՊ V համագումարում բոլշևիկյան բանաձևեր ընդունվեցին այնպիսի կարևորագույն հարցերի վերաբերյալ, ինչպես բուրժուական պարտիաներին ցույց տալիք վերաբերմունքի, արհմիությունների, այսպես կոչված «բանվորական համագումարի» և մյուս հարցերը: Համագումարի ընդունած որոշումներում, համագումարում եղած ուժերի հարաբերակցության մեջ իրենց արտացոլումը գտան ռևոլյուցիայի ընթացքում բոլշևիկների ձեռք բերած հաջողությունները, նրանց հաջողությունները մասսաներին նվաճելու գործում:*

*Ռևոլյուցիայի տարիների ընթացքում բոլշևիկների պարտիան անցավ քաղաքական մեծ դպրոց, ձեռք բերեց մասսաների մեջ տարված կազմա-*

*կերպչական աշխատանքի ահագին փորձ։ Եթե մինչև 1905 թվականը բոլշևիկներին գիտեր մարդկանց համեմատաբար միայն մի փոքրիկ շրջան, ապա ռևոլյուցիայի հետևանքով բոլշևիկներին ճանաչեցին լայն մասսաները։ Բոլշևիկներն անձնուրաց կերպով մարտնչում էին ժողովրդի շահերի համար, գտնվում էին պայքարի ամենամարտական և ամենավտանգավոր ճակատամասերում։ Պարտիան վերածվեց մասսայական պարտիայի։ Այս բոլորը խոր հետք թողեց ժողովրդական մասսաների գիտակցության մեջ և հետագայում արտահայտվեց Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ։*

> *«Առանց այդպիսի «գլխավոր փորձի», ինչպես 1905 թվականին էր, 1917 թ. ռևոլյուցիան, ինչպես բուրժուականը՝ Փետրվարյանը, այնպես էլ պրոլետարականը՝ Հոկտեմբերյանը, անհնարին կլինեին»* (Վ. Ի. Լենին, հատ. 29, էջ 374)։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ


## *Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ*

ՀՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության նախագահ


*Հարազատ է և քաղցր բարեկամություն խոսքը։ Բարի կամքի տեր մարդկանց համար վեհ է այդ գաղափարը։ Այն անհրաժեշտ է բոլոր ժողովուրդներին։*

*Ժողովուրդների բարեկամության համար են պայքարել Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը։ Աշխատավոր մասսաները դարեր շարունակ պայքարել են իրենց ազատության և փոխադարձ բարեկամության համար, բայց հաջողություն չեն ունեցել, որովհետև շահագործող դասակարգերի և իմպերիալիստական պետությունների վարած քաղաքականությունը միշտ խանգարել է դրան։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պատմական հաղթանակով մեր երկրում կործանվեցին շահագործող դասակարգերը, վերացվեցին ազգերի միջև եղած խտրությունը, ատելությունը, ստեղծվեցին ազնիվ, անշահախնդիր եղբայրական կապեր սոցիալիստական ազգերի միջև։ Մենք, սովետական մարդիկ, օրինական հպարտությամբ ենք նշում, որ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի խոշորագույն նվաճումներից մեկը մեր ժողովուրդների միջև ստեղծված եղբայրական բարեկամությունն է։*

*Մեր ժողովուրդը տնտեսական, կուլտուրական և քաղաքական նորանոր հաջողություններով տոնեց Մեծ Հոկտեմբերի 41-րդ և Սովետական Հայաստանի 38-րդ տարեդարձերը։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան և ՍՍՌՄ-ի կառավարությունն անցած տարիների ընթացքում անդուլ աշխատանք են կատարել մեր ժողովուրդների սերտ մերձեցման համար։ ՍՍՌՄ-ի մեջ մտնող միութենական 15 ռեսպուբլիկաները և նրանց ժողովուրդները եղբայրության մի մեծ և համերաշխ ընտանիքի փայլուն օրինակ են։ Սովետական Միության բոլոր ժողովուրդներն այսօրվա մեր երջանիկ կյանքի համար պարտական են Սովետական Միության Կոմունիստական պարտիային և մեր հարազատ կառավարությանը։ ՍՍՌՄ-ի մեջ մտնող Միութենական ռեսպուբլիկաների ժողովուրդներն իրենց նվաճումների համար պարտական են ռուս մեծ ժողովրդին, ժողովուրդ, որն անշահախնդիր կերպով օգնել և օգնում է մեր երկրի բոլոր ժողովուրդներին տնտեսության, կուլտուրայի, տեխնիկայի, գիտության զարգացմանը։*

*Մեր հին սերնդի մարդիկ լավ են հիշում ռուսական ցարիզմի ժամանակաշրջանը, լավ են հիշում, թե ինչպես ցարական կառավարությունը հրահրում էր խտրություն և թշնամություն ազգերի ու ժողովուրդների միջև, նրանց ճըն-*

շում և հալածում էր։ Մենք լավ ենք հիշում Անդրկովկասի ազգայնական պար-
տիաների ու կառավարությունների ազգադավ, հակաժողովրդական քաղաքա-
կանությունը։ Անդրկովկասի աշխատավորները չեն մոռացել դաշնակների,
մուսավաթականների և մենշևիկների բացարձակ թշնամական և ազգայնա-
կան քաղաքականությունը, մանավանդ 1918—1920 թվականներին։ Ցարիզմի
պայմաններում, Անդրկովկասի ազգայնական-բուրժուական կառավարու-
թյունների տիրապետության ժամանակ, անհնարին էր աշխատավորական
մասսաների եղբայրական բարեկամությունը։ Բոլշևիկյան փառապանծ պար-
տիան, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, երկար և համառ պայքար է տարել
ցարիզմի, շահագործող դասակարգերի և նրանց ազգայնական պարտիաների
դեմ՝ ցույց տալով, որ միայն ցարիզմի և շահագործող դասակարգերի կոր-
ծանումով է հնարավոր լուծել ազգային հարցը, ժողովուրդների միջև ստեղծել
եղբայրական բարեկամություն։

Սոցիալիստական ռևոլյուցիայի ամենակարևոր խնդիրներից մեկը՝ դա
ազգային հարցն է եղել և այն լուծվեց շնորհիվ Մեծ Հոկտեմբերի հաղթանակի։
Առանց ազգային հարցի լուծման, ազգային ճիշտ քաղաքականության, խոսք
լինել չէր կարող ժողովուրդների բարեկամության մասին։

ՍՍՌՄ-ի մեջ մտնող Միութենական ամեն մի ռեսպուբլիկա պայծառ օրի-
նակ է լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման։ Միու-
թենական ամեն մի ռեսպուբլիկա իրենից ներկայացնում է առաջավոր, ին-
դուստրիալ սոցիալիստական երկիր, զարգացած գյուղատնտեսությամբ, կուլ-
տուրայով, գիտությամբ։ Սովետական Միության մեջ մտնող բոլոր ռեսպուբ-
լիկաները և նրանց ժողովուրդները միմյանց ցույց են տվել և տալիս են ան-
շահախնդիր և եղբայրական օգնություն։ Այդ ծաղկած, առաջավոր սոցիալիս-
տական ռեսպուբլիկաներից մեկը Հայկական ՍՍՌ-ն է։ Հայ ժողովրդի անցյալը
եղել է ողբերգական և տխուր։ Նա երկար դարեր պետականություն չի ունե-
ցել։ Բուրժուա-ազգայնական դաշնակցական կառավարությունն իր գոյության
2 և կես տարիների ընթացքում երկիրը և ժողովրդին հասցրեց կործանման
եզրին։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի և նրա ժողովրդի վրա
ծագեց նոր արև, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի արևը։
Անցած 38 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ի իրավահավասար անդամ Հայկա-
կան ՍՍՌ-ն ձեռք է բերել խոշորագույն հաջողություններ ժողովրդական տըն-
տեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Այսօր նա ծաղկած և
բազմակողմանիորեն զարգացած երկիր է։

Ռեսպուբլիկայում զարգանում է գունավոր մետալուրգիան. Ղափանը,
Ալավերդին, Քաջարանը, Դաստակերտը և Երևանը երկրին տալիս են պղինձ,
մոլիբդեն, ալյումին և այլն։ Սովետական իշխանության տարիներին ստեղծվել
է քիմիական, էլեկտրամեքենաշինական, դազգահաշինական, մեքենաշինա-
կան, շինանյութերի, սննդի, թեթև և տեղական արդյունաբերություն։ Խոշոր
արդյունաբերության արտադրանքը, 1913 թվականի հետ համեմատած, ավե-
լացել է 155 անգամ։ Կառուցվել են տասնյակ հիդրոէլեկտրակայաններ, որոնց
էներգիայով աշխատում են արդյունաբերության, տրանսպորտի և կոլտ-կեն-
ցաղային ձեռնարկությունները։ 1913 թվականին Հայաստանում էլեկտրաէներ-
գիայի արտադրանքը կազմել է 5 միլիոն 100 հազար կիլովատ ժամ, իսկ
այսօր Հայկական ՍՍՌ-ում այն կազմում է 2 միլիարդ 500 միլիոն կիլովատ
ժամ։ Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության համախառն արտադրանքի ար-



ժեքը հասնում է մոտ 7 միլիարդ ռուբլու, իսկ 1919 թվականին՝ հազիվ մեկ մի-
լիոն 700 հազար ռուբլի էր։

Մեծ են Հայկական ՍՍՌ-ի հաջողությունները գյուղատնտեսության վերա-
կառուցման, էլեկտրիֆիկացման, մեքենայացման և զարգացման, կուլտուրա-
յի, արվեստի, գիտության, առողջապահության, աշխատավորական մասսա-
ների նյութական-կենցաղային մակարդակի բարձրացման գործում։

Հաջողություններն այնքան համոզիչ են և ակնառու, որ մեկնաբանումներն
ու պարզաբանումներն ավելորդ են։ Միայն մի բան կարելի է ասել, որ հաղթա-
նակած սոցիալիզմի երկրում է հնարավոր այսպիսի կարճ ժամանակաշրջա-
նում ստեղծել ծանր ինդուստրիա, արդյունաբերություն և հասնել մեծ հաջո-
ղությունների։

ՍՍՌՄ-ի բոլոր ռեսպուբլիկաներն ունեն մեկ միասնական սոցիալիստա-
կան տնտեսություն, որը զարգանում է փոխադարձ օգնության հիման վրա։
ՌՍՖՍՌ-ի ժողովուրդները, առաջին հերթին, ռուս մեծ ժողովուրդը, Հայկական
ՍՍՌ-ին օգնել և օգնում են հայրենական ժամանակակից տեխնիկայով, մեքե-
նաներով, սարքավորումներով, անտառանյութով, մետաղով և այլն։

Հայ ժողովուրդն օգնություն է ստանում Ուկրաինական ՍՍՌ-ից, Ադրբե-
ջանից, Վրաստանից, Ուզբեկական ՍՍՌ-ից, Ղազախական ՍՍՌ-ից, Կիրգիզա-
կան ՍՍՌ-ից, Տաջիկական ՍՍՌ-ից, Թուրքմենական ՍՍՌ-ից, Մոլդավական
ՍՍՌ-ից, Լիտվական ՍՍՌ-ից, Լատվիական ՍՍՌ-ից և Էստոնական ՍՍՌ-ից։

Եթե չլիներ սոցիալիստական ազգերի եղբայրական բարեկամությունը,
լենինյան ազգային քաղաքականությունը, չէր լինի և ոչ մի օգնություն։ Եթե
չլիներ ՍՍՌՄ-ի ժողովուրդների եղբայրական փոխադարձ օգնությունը, Հայ-
կական ՍՍՌ-ն այսքան կարճ ժամանակաշրջանում չէր կարող դառնալ ծաղ-
կած երկիր, ինդուստրիալ ռեսպուբլիկա։

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության արտադրանքի մի մասը գնում է
Սովետական Միության եղբայրական ռեսպուբլիկաները։ Սովետական Հայաս-
տանից մեր եղբայրական ռեսպուբլիկաները ստանում են՝ պղինձ, ալյումին,
մոլիբդեն, շարժական էլեկտրակայաններ, գեներատորներ, տրանսֆորմատոր-
ներ, դազգահներ, ավտոմոբիլի և տրակտորների մասեր, ավտոդողեր, ար-
հեստական կաուչուկ, կարբիդ, ամիակային սելիտրա, ցիանամիդ, սուպեր-
ֆոսֆատ, պղնձարջասպ և քիմիական այլ նյութեր, ինչպես նաև՝ կոնյակ,
գինի, պահածոներ, մետաքսյա, բամբակյա և բրդյա գործվածքներ, կոշիկ և
այլ ապրանքներ։

Մեր ժողովուրդների բարեկամությունը չի սահմանափակվում միայն
տնտեսական բնագավառում. այն միշտ զարգացել և ընդունել է նոր ձևեր։ Սո-
ցիալիստական մրցությունը ռեսպուբլիկաների, քաղաքների, շրջանների, ձեռ-
նարկությունների, կոլտնտեսությունների միջև դարձել է բարեկամության զար-
գացման և նրա ամրապնդման լավագույն միջոցներից մեկը։ Հայկական
ՍՍՌ-ն սոցիալիստական մրցության մեջ է Կիրգիզական ՍՍՌ-ի հետ։ Երկու
ռեսպուբլիկաների պատվիրակությունները կատարել են փոխադարձ այցելու-
թյուններ, ծանոթացել, ստուգել սոցիալիստական պարտավորությունների կա-
տարման ընթացքը և իրար օգնել՝ բացերը վերացնելու և ավելի լավ կազմա-
կերպելու աշխատանքները։

Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության խորհուրդը սոցիալիստա-
կան մրցման մեջ է Ադրբեջանական ՍՍՌ-ի, Վրացական ՍՍՌ-ի և Տաջիկա-

կան ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության խորհուրդների հետ։ Սոցիալիստական մրցության ծավալումը նպաստել է արդյունաբերության պլանների կատարմանը և գերակատարմանը։ Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքը՝ Երևանը, սոցիալիստական մրցության մեջ է եղբայրական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի հետ։ Երկու մայրաքաղաքների պարտիական, սովետական, տնտեսական կազմակերպությունների և օրգանների ներկայացուցիչները կատարում են փոխադարձ այցելություններ, ստուգում պարտավորությունների կատարման ընթացքը, քննում այն, քննադատում իրար և այդպիսով օգնում միմյանց, որ ավելի լավ կազմակերպեն աշխատանքները և լուծեն իրենց առաջ դրված խնդիրները։

Լենինականը սոցիալիստական մրցության մեջ է Կիրովաբադ և Քութայիսի քաղաքների հետ։ Կիրովականը սոցիալիստական մրցության մեջ է Բաթումի և Սուխումի քաղաքների հետ։ Բաթումիի աշխատավորությունը որոշել է Կիրովականում կառուցել բարեկամության պարկ։

Հայկական ՍՍՌ-ի շատ շրջաններ, կոլտնտեսություններ, սովետական տնտեսություններ սոցիալիստական մրցության մեջ են Ադրբեջանական ՍՍՌ-ի, Վրացական ՍՍՌ-ի, Ուկրաինական ՍՍՌ-ի, Մոլդավական ՍՍՌ-ի և մյուս ռեսպուբլիկաների շատ շրջանների, կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների և ձեռնարկությունների հետ։ Պատմությունը չի տեսել և չէր կարող տեսնել նման բարեկամություն ժողովուրդների միջև։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ՝ ամեն մի ռեսպուբլիկա պայքարում է մեր սքանչելի Հայրենիքի հետագա հզորացման համար։

Մեր ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման համար լավագույն միջոցներից մեկը կուլտուրայի և արվեստի բնագավառում փոխադարձ կապն է։ Միութենական ռեսպուբլիկաները մեր հերոսական Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում կազմակերպում են արվեստի, գրականության տասնօրյակներ։

Հայկական ՍՍՌ-ն երկու անգամ՝ 1939 և 1956 թվականներին, Մոսկվայում ցուցադրել է հայ ժողովրդի արվեստն ու գրականությունը։ ՍՍՌՄ-ի Մեծ թատրոնի բեմից Երևանի պետական օպերայի կոլեկտիվը կատարել է ազգային օպերաներ՝ «Անուշ»-ը, «Դավիթ-Բեկ»-ը, «Արշակ երկրորդ»-ը և այլն։ Հայկական ՍՍՌ-ի Օպերայի և բալետի թատրոնը ելույթներ է ունեցել Լենինգրադում, Թբիլիսիում, Սոչիում և այլ քաղաքներում։ Սունդուկյանի անվան թատրոնի կոլեկտիվը ելույթներ է ունեցել Բաքվում, Մոսկվայում, Թբիլիսիում և այլ քաղաքներում։ Հայաստանի Պետական ֆիլհարմոնիայի վաստակավոր կոլեկտիվը համերգներ է տվել մեր երկրի շատ քաղաքներում։ Երևանում ելույթներ են ունենում Միութենական Ռեսպուբլիկաների ֆիլհարմոնիաների երգի ու պարի անսամբլները։

Քաղաքական ու կուլտուրական խոշոր իրադարձություն էին ՍՍՌՄ-ի Լենինի շքանշանակիր Ակադեմիական Մեծ Թատրոնի կոլեկտիվի գաստրոլները Երևանում, Թբիլիսիում, Բաքվում։ Մեծ թատրոնի անվանի դերասանները և դերասանուհիները հանդես եկան ձեռնարկություններում և կոլտնտեսություններում։ Հայ ժողովուրդը Մեծ թատրոնի վարպետներին և աշխատողներին ընդունեց որպես իր հարազատների, ցույց տվեց ջերմ ու եղբայրական վերաբերմունք։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները հպարտանում են և ուրա-



խանում մեր արվեստի և գրականության աննախընթաց հաջողություններով։ Տրադիցիա է դարձել և ամեն տարի անցկացվում է «Անդրկովկասյան գարունը»։ Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների և նրանց ժողովուրդների արվեստը, գրականությունը դարձել են ամբողջ ժողովրդի սեփականությունը և նրանք հպարտանում են դրանով։ Այս տարվա հունիսին, Վրացական ՍՍՌ-ի մայրաքաղաքում եղբայրական վրաց ժողովուրդը նշեց Հայկական թատրոնի 100-ամյակը, թատրոն, որն ստեղծվել է Թբիլիսիում և մեծ դեր է խաղացել երկու եղբայրական ժողովուրդների բարեկամության ամրապնդման գործում։

1957 թվականին Երևանի պետական ֆիլհարմոնիայի երգի ու պարի անսամբլը եղավ Ալբանիայում, Հունգարիայում և Բուլղարիայում, եղբայրական երկրների ժողովուրդներին ցուցադրեց հայ ժողովրդի արվեստը, նրա երգն ու պարը։ Ադրբեջանական ՍՍՌ-ի պետական ֆիլհարմոնիայի երգի ու պարի անսամբլը 1958 թվականի հոկտեմբերին եղավ Չինաստանում և տվեց համերգներ չին ժողովրդի համար։ Նման փոխադարձ կապ կա Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների և ժողովրդական դեմոկրատիայի երկրների արվեստի և կուլտուրայի կազմակերպությունների միջև։

Մեր ժողովուրդների բարեկամության համար խոշոր դեր է խաղացել և խաղում է գրականությունը։ Հայ ժողովուրդը մայրենի լեզվով կարդում է ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների անցյալի և ժամանակակից գրողների մեծարժեք երկերը։ Անցած 38 տարվա ընթացքում ռուսերեն են թարգմանվել հայ գրականության շատ արժեքավոր գործեր։

Սովետական Միության ժողովուրդների բարեկամության օրինակով եղբայրական ամուր կապեր են ստեղծվել սոցիալիստական լագերի բոլոր երկրների միջև։ Այդ բարեկամությունը փոխադարձ է և անշահախնդիր, որն արտահայտում է տնտեսական, տեխնիկական, ֆինանսական, կուլտուրական և այլ միջոցներով և ձևերով։ Սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների բարեկամությունն անընդհատ ամրապնդվում է և մեծ դեր խաղում սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։ Սովետական Միությունը եղբայրական բազմակողմանի օգնություն է ցույց տալիս ժողովրդական դեմոկրատիայի երկրներին։

Մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի տակ օրեցօր աճում, զարգանում և ամրապնդվում է սոցիալիստական լագերի մեջ մտնող բոլոր ժողովուրդների կոմունիստական համագործակցությունը։

Սովետական Հայաստան են այցելել և այցելում են Չինաստանից, Մոնղոլիայից, Կորեայից, Լեհաստանից, Չեխոսլովակիայից, Հունգարիայից, Բուլղարիայից, Ռումինիայից, Ալբանիայից, Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայից։ Սոցիալիստական մրցություն է ծավալվել ՍՍՌՄ-ի, Չինաստանի, Չեխոսլովակիայի և մյուս սոցիալիստական երկրների արտադրական ձեռնարկությունների միջև։ Սոցիալիստական մրցման մեջ են Շանհայը և Երևանը։ Չնայած տարածությունը շատ հեռու է, բայց այն չի խանգարում, որպեսզի Շանհայը և Երևանը մրցեն իրար հետ։ Շանհայի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը դիմել է Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանին. դիմումում ասված է.

«Թանկագին ընկերներ. ուրախությամբ նշում ենք, որ մեր գործարանը ժամկետից 80 օր շուտ կատարեց առաջին հնգամյակի պլանը և գերակատարեց 1957 թվականի արտադրանքի թողարկման առաջադրանքը։ Այժմ մենք

վստահորեն թևակոխում ենք երկրորդ հնգամյակը և արդեն այս տարի, 1957 թվականի համեմատությամբ, արտադրանքի ծավալը կավելացնենք 63 տոկոսով։ Բայց ձեր կոլեկտիվի համեմատությամբ մենք դեռևս քիչ փորձ ունենք, դժվարությունները շատ են։ Ձեր կոլեկտիվի աջակցությունը ստանալու համար սրտանց խնդրում ենք ընդունել մեր մրցահրավերը և ծավալել բարեկամական սոցիալիստական մրցություն՝ մեր գործարանների միջև։ Համոզված ենք, որ ձեր կոլեկտիվի հետ մրցելը կօգնի ավելի հաջող կատարելու երկրորդ հնգամյակի խնդիրները։ Ուղարկում ենք 1958 թվականի մեր պարտավորությունները»։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը մեծ խանդավառությամբ ընդունեց Շանհայի էլեկտրամեքենաշինարարների մրցահրավերը և, իր հերթին, ստանձնեց նոր և ավելի բարձր պարտավորություններ։ Այս ամենը սկիզբն է մեծ, աննախընթաց վերելքի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և ՍՍՌՄ-ի կառավարությունը անում են ամեն ինչ բարեկամական հարաբերություններ ստեղծելու աշխարհի մյուս ժողովուրդների ու կառավարությունների հետ։ Դրա համար լավ օրինակ է ծառայում Սովետական Միության և Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Արաբական միացյալ ռեսպուբլիկայի, Աֆղանստանի և մի շարք այլ երկրների միջև ստեղծված բարեկամությունը և փոխադարձ օգնությունը։

Սովետական ժողովրդի համար թանկ են խաղաղությունը, ազատությունը և դրա համար անհրաժեշտ է ամուր բարեկամություն ժողովուրդների և պետությունների միջև։ Սովետական ժողովուրդն իր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մարքսիզմ-լենինիզմի անհաղթ դրոշի տակ վստահորեն առաջ է շարժվում դեպի իր երջանիկ ու լուսավոր ապագան՝ կոմունիզմը։ Մեր ժողովուրդը միշտ էլ անխախտ կպահի ազատության, խաղաղության ու ժողովուրդների բարեկամության վեհ գործը։

---

# ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԿԼԱՍԻԿ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

(Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության հայերեն նոր հրատարակության առթիվ)

Ա. ԹԵԼՈՒՆՑ

Լրացավ Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» հանճարեղ փիլիսոփայական երկի ստեղծման 50 տարին։ Գրքի հայերեն նոր հրատարակությունը համընկավ այդ նշանավոր տարեթվին։

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը գրված է 1908 թվականին, երբ Ռուսաստանում մոլեգնում էր դաժան ռեակցիան։ Ցարիզմն արյան մեջ խեղդելով ռևոլյուցիան, հարձակվում էր ամեն մի պրոգրեսիվ չարժման ու մտքի դեմ։ Գործի դնելով հոգևոր ճնշման բոլոր միջոցները, տիրապետող դասակարգերն ու նրանց գաղափարախոսները նպատակ էին դրել թունավորել աշխատավոր ժողովրդի գիտակցությունը, վերացնել անգամ հիշողությունը ռևոլյուցիայի մասին։ Ռեակցիան իր սուր ծայրով ուղղված էր բանվոր դասակարգի, նրա պարտիայի ու աշխարհայացքի դեմ։

Ռեակցիայի տարիներին լայն տարածում էին ստացել իդեալիստական փիլիսոփայական սիստեմները, հատկապես էմպիրիոկրիտիցիզմը, որը կողմնակիցներ էր գտնում նաև սոցիալ-դեմոկրատական ինտելիգենցիայի, այդ թվում և որոշ անկայուն բոլշևիկների շրջանում։ Ռուս էմպիրիոկրիտիկները՝ Յուշկևիչը, Բոգդանովը, Բազարովը, Սուվորովը և ուրիշներ, սկսել էին մարքսիզմի փիլիսոփայության ռևիզիան՝ սուբյեկտիվ իդեալիզմի դիրքերից։

Ռևիզիոնիզմը բուրժուական իդեոլոգիայի թափանցումն ու արտացոլումն է բանվորական շարժման մեջ։ Դա միջազգային երևույթ է և հանդես է գալիս բոլոր բնագավառներում։ «Մարքսիզմի ավելի և ավելի նուրբ կեղծում, հակամատերիալիստական ուսմունքների ավելի և ավելի նուրբ խարդախումներ մարքսիզմի քողի տակ,—ահա թե ինչով է բնութագրվում արդի ռևիզիոնիզմը և՛ քաղաքատնտեսության մեջ, և՛ տակտիկայի հարցերում, և՛ առհասարակ փիլիսոփայության մեջ, ինչպես գնոսեոլոգիայի, այնպես էլ սոցիոլոգիայի մեջ» *,— գրել է Վ. Ի. Լենինը։

Ռևիզիոնիզմի բնութագրությունը և ջախջախիչ քննադատությունը Վ. Ի. Լենինը տվել է մի շարք աշխատություններում, իսկ փիլիսոփայության բնագավառում՝ հատկապես «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ, որտեղ նա բացահայտում է էմպիրիոկրիտիցիզմի ռեակցիոն էությունը։

---

* Վ. Ի. Լենին.— «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ», Հայպետհրատ, Երևան, 1958 թ., էջ 424։ Հետագայում մեջբերման էջերը ցույց կտրվեն տեքստում։

Վ. Ի. Լենինի այս աշխատության երևան գալը մարքսիզմի փիլիսոփայության պատմության մեջ դարաշրջան կազմող երևույթ էր։ Այնտեղ դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից ամփոփված են բնագիտության զարգացման ժամանակակից տվյալները, զարգացված և հարստացված են մարքսիստական փիլիսոփայության բոլոր բնագավառները՝ մատերիալիստական թեորիան, դիալեկտիկական մեթոդը, իմացաբանությունը, պատմական մատերիալիզմը։ Այդ կլասիկ աշխատությունը մարքսիստների նոր-նոր սերունդների զինել և զինում է փիլիսոփայական խոր գիտելիքներով։ Իր թարմությունն ու գաղափարական նպատակասլացությունը, թեորիական մեծ նշանակությունն այն ամբողջովին պահպանել է նաև մեր օրերում, հանդիսանալով ստեղծագործական մտքի մի փայլուն կոթող, գիտելիքների մի սպառ աղբյուր, պայքարի հատու զենք՝ ժամանակակից բուրժուական փիլիսոփայության, ռևիզիոնիզմի և ամեն տեսակ հակամարքսիստական հոսանքների դեմ մղվող պայքարում։

* * *

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունն ուղղված է իմպերիալիզմի ժամանակաշրջանում լայն տարածում գտած հակագիտական փիլիսոփայական հոսանքի՝ էմպիրիոկրիտիցիզմի դեմ։ Ռուս էմպիրիոկրիտիկները ձգտում էին այդ ռեակցիոն փիլիսոփայությունը ներկայացնել որպես գիտական մտքի վերջին խոսք, հաշտեցնել և միացնել մարքսիզմը էմպիրիոկրիտիցիզմի հետ, տարածել վերջինիս դրույթները հասարակական կյանքի երևույթների վրա։ Էմպիրիոկրիտիցիզմը կամ մախիզմը իրեն համարում էր «երրորդ գիծ» փիլիսոփայության մեջ, որն իբր թե հաղթահարել է մատերիալիզմն ու իդեալիզմը, բարձրացել նրանցից վեր։ Իրականում, ինչպես ապացուցեց Վ. Ի. Լենինը, էմպիրիոկրիտիցիզմի ելակետն ու նախադրյալը սուբյեկտիվ իդեալիզմն է։

Վ. Ի. Լենինն ամենից առաջ ցույց է տալիս, որ «երրորդ գծի» անվան տակ հանդես եկող այդ փիլիսոփայության իդեական ակունքները գտնվում են Բերկլիի, ինչպես և Կանտի ու Յումի իդեալիստական, ագնոստիկական հայացքների մեջ։ Նորագույն մախիստները, գրում է նա, մատերիալիստների դեմ չբերին ոչ մի, տառացիորեն ոչ մի փաստարկ, որը չլիներ եպիսկոպոս Բերկլիի մոտ։ Էմպիրիոկրիտիցիզմը ձգտում էր ապացուցել, որ փիլիսոփայության հիմնական հարցը՝ մատերիայի և գիտակցության, բնության և ոգու փոխհարաբերության հարցը, հնացել է և, հետևաբար, անառարկայական է դարձել ո՛չ միայն մատերիալիզմի ու իդեալիզմի միջև եղած պայքարը, այլև այդ ուղղությունների գոյությունը։ Այդ հարցի հնանալու վերաբերյալ ամեն մի խոսակցություն Վ. Ի. Լենինը համարում է մանկական թոթովանք, որովհետև չի կարող հնանալ մեր զգայությունների ու գիտակցության աղբյուրի, նրա ճանաչման հարցը և ինչքան էլ աղմկեն իդեալիստները, նրանք ի վիճակի չեն հերքելու գիտության կողմից ապացուցված այն անհերքելի փաստը, որ մարդկային զգայություններն ու գիտակցությունը օբյեկտիվ աշխարհի արտացոլումն են, իսկ աշխարհի օբյեկտիվ գոյության ժխտումը փիլիսոփայական խաբեություն է, որը ճանապարհ է բացում ամեն տեսակի կրոնական ու միստիկական խավարամոլության համար։



Բարբաջելով փիլիսոփայության հիմնական հարցի «հնացման» մասին,
մախիստները իրականում չեն հրաժարվում այդ հարցից, այլ լուծում են այն
իդեալիստորեն, նույնացնելով մարդկային զգայությունները օբյեկտիվ աշ-
խարհի հետ։ Վ. Ի. Լենինը հակադրում է իրար փիլիսոփայության հիմնական
ուղղությունները ըստ այն բանի, թե ինչպես են նրանք լուծում զգայություն-
ների և օբյեկտիվ իրերի փոխհարաբերությունը։ Այն փիլիսոփաները, որոնք
զգայություններից ու մտքից գնում են դեպի իրերը, այսինքն՝ առաջնայինը
համարում են զգայությունն ու միտքը՝ իդեալիստներ են։ Այն փիլիսոփաները,
որոնք, ընդհակառակը, իրերից են գնում դեպի զգայություններն ու միտքը՝
այսինքն՝ առաջնայինը համարում են իրերը, իսկ զգայություններն ու միտքը՝
նրանց արտացոլումը, մատերիալիստներ են։ Վ. Ի. Լենինը գրում է. «Եթե
մարմիններն «զգայությունների կոմպլեքսներ» են, ինչպես ասում է Մախը,
կամ «զգայությունների կոմբինացիաներ», ինչպես Բերկլին էր ասում, ապա
դրանից անխուսափելիորեն հետևում է, որ ամբողջ աշխարհը սոսկ իմ մտա-
պատկերն է» (էջ 34)։ Մախն ու նրա հետևորդները իրենց դասելով մատե-
րիալիզմից ու իդեալիզմից վեր, իրականում կրկնում են սուբյեկտիվ իդեա-
լիզմի հին դրույթն այն մասին, որ աշխարհը մարդու սեփական զգայություն-
ներն է և, հետևաբար, մարդը զգում է ոչ թե առարկայական աշխարհը, այլ
իր սեփական զգայությունները։

Էմպիրիոկրիտիցիզմը բացարձակացնում է մարդկային զգայությունը,
տարալուծելով ամբողջ օբյեկտիվ աշխարհը նրա մեջ։ Միևնույն ժամանակ նա
զգայությունը և, վերջին հաշվով, մարդուն ու նրա միտքը կտրում է արտաքին
աշխարհից, զգայությունը ներկայացնելով որպես պատնեշ մարդու և աշ-
խարհի միջև։ Մերկացնելով այդ հակագիտական հայացքը՝ Լենինը տալիս է
զգայության միակ գիտական բնորոշումը, ըստ որի, այն մարդու գիտակցու-
թյան և արտաքին աշխարհի անմիջական կապն է, օբյեկտիվ աշխարհի սուբ-
յեկտիվ պատկերը։ Զգայությունները մարդկային իմացության աղբյուրն են,
սակայն նրանք այդպիսին են շնորհիվ այն բանի, որ արտացոլում են ար-
տաքին աշխարհը։ Համարել օբյեկտիվ աշխարհը մարդկային զգայություննե-
րի մարմնացում, նշանակում է պարզապես ընդունել զգայության, հետևաբար
և մարդու գոյության հնարավորությունը բնությունից առաջ։ Մատերիալիզմը
ելնում է բնագիտության այն դրույթից, որ մարդը մտածում է նյութական
օրգանի՝ ուղեղի միջոցով, որ մտածողությունը ուղեղի ֆունկցիան է։ Էմպի-
րիոկրիտիկները խուսափում են բնագիտության այդ պարզորոշ դրվածքից,
իսկ էմպիրիոկրիտիկ Ավենարիուսը, ի հակադրություն գիտության տվյալների,
գտնում է, որ մտածողությունը ուղեղի ֆունկցիան չէ, որ ուղեղը մտքի կրողը,
նրա օրգանը չէ։

Իդեալիստորեն լուծելով փիլիսոփայության հիմնական հարցը՝ մախիստ-
ները շարունակում են նույն իդեալիզմը իմացաբանության բնագավառում։
Նրանց վարժությունները իմացաբանության մեջ նպատակ ունեն հերքել մա-
տերիալիզմն այս բնագավառում. բայց այստեղ ևս նրանք կրկնում էին սուբ-
յեկտիվ իդեալիզմի հին դրույթները։ Մախն ինքը խոստովանում էր, որ սկսե-
լով Կանտից, նա գնացել է դեպի Յումն ու Բերկլին։ Կանտի փիլիսոփայու-
թյունից նա վերցրել է օբյեկտիվ աշխարհի կամ «ինքնին իրերի» անճանա-
չելիության դրույթը, հրաժարվելով կանտյան ուսմունքի մատերիալիստական
տարրերից, կանտյան այն հայացքից, որ մարդու զգայություններից դուրս

գոյություն ունի «ինքնին իրերի» աշխարհը։ Մախիստները Կանտին քննադատում են աջից՝ սուբյեկտիվ իդեալիզմի դիրքից։ Նրանք ո՛չ միայն ժխտում են աշխարհի ճանաչողությունը, այլև մարդկային զգայությունից դուրս օբյեկտիվ աշխարհի գոյությունը։ Մատերիալիստներն, ընդհակառակը, քննադատում են Կանտին ձախից, ժխտելով ոչ թե ինքնին իրը, այլ կանտյան հայացքն այն մասին, որ ինքնին իրը անճանաչելի է։ Այդ դիրքից են քննադատել Կանտին Ֆոյերբախն ու Չերնիշևսկին։ Վ. Ի. Լենինը հակադրելով Չերնիշևսկու հայացքները կանտականությանն ու մախիզմին, նշում է, որ ռուս մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատն ու մատերիալիստը կարողացավ անցյալ դարու 50-ական թվականներից ընդհուպ մինչև 88 թվականը մնալ ամբողջական փիլիսոփայական մատերիալիզմի մակարդակի վրա և դեն շպրտել նեոկանտականների, պոզիտիվիստների, մախիստների և այլ խառնաշփոթիչների ողորմելի անհեթեթությունը։

Քննադատելով իդեալիզմն ու ագնոստիցիզմը իմացաբանության մեջ, Լենինը զարգացրեց մարքսիստական իմացության թեորիան, այն հարստացրեց նոր դրույթներով ու եզրակացություններով։ Դիալեկտիկական մատերիալիզմի իմացության թեորիայի հիմքում, ասում է նա, ընկած է արտաքին աշխարհի և մարդկային գլխում այդ աշխարհի արտացոլման ընդունումը։ Վ. Ի. Լենինը իդեալիստական իմացաբանությանը հակադրում է մատերիալիստական իմացության թեորիայի կարևորագույն եզրակացությունները։

1. Իրերը գոյություն ունեն անկախ մեր գիտակցությունից, անկախ մեր զգայություններից, մեզնից դուրս։

2. Վճռականորեն ոչ մի տարբերություն չկա երևույթի և ինքնին իրի միջև, այն բանի միջև, ինչ գոյություն ունի մեզնից դուրս և ինչ գիտակցված է մեր կողմից։ Տարբերություն կա միայն պարզապես իմացված բանի և չիմացված բանի միջև։ Այն դրույթը, ըստ որի ինքնին իրը գտնվում է երևույթների «այն կողմը», ինքնին իրի և մեզ համար իրի միջև պատնեշ է ընկած և այլն, ինչպես պնդում էին Յումն ու Կանտը և կրկնում մախիստները,— փիլիսոփայական գռեհկաբանություն և հերյուրանք է։

3. Իմացության թեորիայում, ինչպես և գիտության բոլոր բնագավառներում պետք է դատել դիալեկտիկորեն, քննել, թե ինչպես է անգիտությունից առաջանում գիտությունը, ինչպես է ոչ լրիվ, ոչ ճշգրիտ գիտելիքը դառնում ավելի լրիվ ու ավելի ճշգրիտ։ Մատերիալիստական իմացաբանության այս դրույթները գիտության ամեն մի ճյուղի, մարդկային ամբողջ իմացության առջև խնդիր են դնում՝ ուսումնասիրել օբյեկտիվ աշխարհը, խորանալ նրա մեջ. չկա ոչինչ, որի առջև կանգ առներ մարդկային միտքը, այն ընդունակ է ճանաչելու աշխարհը և օգտագործելու պրակտիկայում ձեռք բերած գիտելիքները։

Ագնոստիցիզմը ռեակցիոն, իր դարն անցած դասակարգի փիլիսոփայություն է, դասակարգ, որի շահերը պահանջում են հավատացնել, որ աշխարհը, հասարակական կյանքը, նրա զարգացման օրենքները անճանաչելի են և մարդը չի կարող աշխարհի գիտական բացատրության ու վերափոխման խնդիրը դնել իր առջև։ Զարմանալի չէ, որ մախիզմը՝ իմպերիալիստական բուրժուազիայի այդ փիլիսոփայությունը, վերակենդանացնում և նոր տեսք էր տալիս անցյալի ագնոստիկական ուսմունքներին, դրանց տալով ավելի ռեակցիոն բնույթ։



Վ. Ի. Լենինը մերկացնում է էմպիրիոկրիտիցիզմի հայացքները ճշմար-
տության մասին։ Ռուս մախիստներն այս հարցում ևս մարքսիստական
դրույթները նենգափոխում էին սուբյեկտիվ իդեալիստական դրույթներով,
պնդելով, թե մարքսիզմի տեսակետից չի կարող լինել օբյեկտիվ և բացար-
ձակ ճշմարտություն։ Ժխտել օբյեկտիվ ճշմարտությունը, նշանակում է ժխտել
այն օբյեկտիվ բովանդակությունը, որ կա մարդկանց գիտելիքների մեջ և որը
կախված չէ ոչ մարդուց և ոչ էլ մարդկությունից։ Դրանից հետևում `է, որ
ճշմարտությունը ստեղծվում է մարդու կողմից, կախված է անհատից կամ
կոլեկտիվից։ Բոգդանովն, օրինակ, ճշմարտությունը համարում է «կոլեկտիվ
փորձ», «կոլեկտիվ» բառով ծածկելով իր սուբյեկտիվ հայացքը, որովհետև
ճշմարտությունը մարդկանց գիտելիքների համապատասխանությունն է օբ-
յեկտիվ աշխարհին, իսկ եթե այդ համապատասխանությունը չկա, ոչ մի ճըշ-
մարտություն չի կարող լինել, անկախ նրանից թե տրված է անհատակա՞ն,
թե՞ կոլեկտիվ փորձ։ Այն հանգամանքը, որ մարդկային կոլեկտիվը դարեր
շարունակ հավատացել է ամեն տեսակ կրոնական առասպելների, բնավ չի
նշանակում, որ կրոնը օբյեկտիվ ճշմարտություն է։ «Մեր զգայությունները
համարել արտաքին աշխարհի պատկերներ—ճանաչել օբյեկտիվ ճշմարտու-
թյունը—կանգնել իմացության մատերիալիստական թեորիայի տեսակետի
վրա,—դա միևնույն բանն է»,— ընդգծում է Վ. Ի. Լենինը (էջ 152) և ընդ-
հակառակը՝ օբյեկտիվ ճշմարտության ժխտումը ագնոստիցիզմ է և սուբյեկ-
տիվիզմ։ Այնուհետև Վ. Ի. Լենինը բացահայտում է բացարձակ և հարաբե-
րական ճշմարտության դիալեկտիկան, ցույց տալով, որ մարդկային մտա-
ծողությունն իր բնությամբ ընդունակ է տալու և տալիս է մեզ բացարձակ
ճշմարտությունը, չկա ոչ մի անանցանելի սահման հարաբերական և բացար-
ձակ ճշմարտության միջև։ Մեր գիտելիքների հարաբերականությունը չի բա-
ցառում բացարձակ ճշմարտությունը, ինչպես պնդում են մախիստները, այլ
բացարձակ ճշմարտությունը կազմվում է հարաբերական ճշմարտություն-
ներից։

Մախիզմը դուրս է շպրտում պրակտիկայի չափանիշը իմացության թեո-
րիայից։ Միայն հաջողությունը կարող է տարբերել իմացությունը մոլորու-
թյունից,— ազդարարում էր Մախը։ Այդ խաբուսիկ թեզը ռուս մախիստների
կողմից մեկնաբանվում էր որպես ապացույց այն բանի, որ Մախը մոտենում
է մարքսիզմին։ Վ. Ի. Լենինը սուր ծաղրի է ենթարկում նրանց այդ ան-
ճոռնի փորձերը՝ իդեալիզմը վարագուրելու մարքսիզմի քողով, նշելով, որ
այստեղ Մախը մոտենում է մարքսիզմին այնպես, ինչպես Բիսմարկը՝ բան-
վորական շարժմանը։ Իրականում «հաջողություն» և այլ տերմիններով Մախը
հետապնդում էր մի նպատակ՝ պատնեշավորել իմացության թեորիան պրակ-
տիկայից, ջնջել ամեն մի սահման պատրանքի ու իրականության, միստի-
կայի ու գիտական իմացության միջև։ Հատկանշական է, որ մախիստական
դրույթը «հաջողության» մասին, որպես ճշմարտության չափանիշ, ընկած է
ամերիկյան իմպերիալիզմի փիլիսոփայության՝ պրագմատիզմի հիմքում և
պրագմատիստների կողմից իդեալիստորեն շարաշահված «պրակտիկա» հաս-
կացությունը, «հաջողության» վերաբերյալ նրանց հակագիտական բարբա-
ջանքները նույնպես մարքսիզմի թշնամիների կողմից բազմիցս ներկայաց-
ված են որպես իբր թե մոտեցում մարքսիզմին։ Իրականում իդեալիզմը չի

ճանաչում պրակտիկան որպես մարդկային արտադրական գործունեության և
իրական հարաբերությունների ամբողջություն։ Պրակտիկան, փորձը իդեալիզմի
համար զուրկ են որևէ իրական բովանդակությունից, դրանք սոսկ մարդկա-
յին զգայությունների, ապրումների ու պատրանքների դրսևորումն են։ Պրագ-
մատիզմը, շարունակելով մախիզմի գիծը, պրակտիկա հասկացողությունը
զրկել է ամեն մի ռացիոնալ բովանդակությունից, հանգեցնելով այն մարդու
անհատական շահին, ձեռնատվությանը, եթե անգամ շահն ու օգուտը իրենց
մեջ ոչինչ չեն պարունակում, բացի խաբեբայությունից ու ձեռնածությունից։

Վ. Ի. Լենինը խարազանելով մախիստական ճիգերը՝ դուրս շպրտելու
պրակտիկայի չափանիշը իմացության թեորիայից, զարգացնում է Մարքսի և
Էնգելսի հանճարեղ դրույթները պրակտիկայի, որպես իմացության պրոցեսի
հիմքի, ճշմարտության չափանիշի մասին։ Մարքսիզմը մատերիալիզմի իմա-
ցության թեորիայի հիմքում դնում է պրակտիկայի չափանիշը։ Մախիզմի,
ինչպես և ամեն մի իդեալիզմի համար կյանքի, պրակտիկայի տեսակետ գո-
յություն չունի։ Մինչդեռ, ինչպես ընդգծում է Վ. Ի. Լենինը, «Կյանքի, պրակ-
տիկայի տեսակետը պետք է լինի իմացության թեորիայի առաջին և հիմնա-
կան տեսակետը։ Եվ նա անխուսափելիորեն տանում է դեպի մատերիալիզմ,
շեմքից մի կողմ նետելով պրոֆեսորական սխոլաստիկայի անվերջ հերյու-
րանքները» (էջ 169)։

Վ. Ի. Լենինը մերկացնում է մախիստների իդեալիստական գիծը նաև
փիլիսոփայական կատեգորիաների մեկնաբանման հարցում։ Մախիստների
հոգեհայր Բերկլին բացեիբաց խոստովանում էր, որ իր փիլիսոփայության
նպատակը մատերիայի հերքումն է։ Մախիստները շարունակում են Բերկլիի
գիծը և ճգնում նրա կողմից «հերքված» մատերիան նորից «հերքել»։ Ժխտե-
լով հոգեկանից անկախ ֆիզիկականի գոյությունը, իդեալիզմը բնականաբար
պետք է ժխտի և այն հասկացությունը, որ մշակված է նյութական սուբստան-
ցիայի համար։ Մախը, օրինակ, մատերիան համարում է զգայությունների
օրինաչափ կապ, այսինքն՝ մատերիա հասկացությունից բացառում է նրա
ռեալ բովանդակությունը։ Իդեալիզմի հին բարբաջանքը Մախը ներկայացնում
է որպես գիտության վերջին խոսք, իսկ ռուս մախիստներն իրենց ուսուցչի
նկատմամբ կույր հավատով տոգորված՝ «մեղադրում են» մատերիալիստնե-
րին, որ նրանք ճանաչում են ինչ-որ «անիմաստ ու անճանաչելի» բան—
մատերիան «փորձից», մեր գիտակցությունից դուրս։ «Հնացած» մատերիա-
լիզմին նրանք հակադրում են մախիստական հերյուրանքն այն մասին, որ
«փորձից», մեր գիտակցությունից դուրս չկա մատերիա։ Էմպիրիոկրիտիցիզ-
մը, որը բառացի նշանակում է փորձի քննադատություն, բազմիցս հոլովում
է «փորձ» հասկացությունը, ամեն ինչ հիմնում «փորձի» վրա, ժխտելով փոր-
ձի ռեալ բովանդակությունը՝ նյութական աշխարհն ու նրա շարժումը։

Մախիզմը ժխտում է մատերիան, որպես մեր զգայությունների օբյեկտիվ
աղբյուր, գտնելով, որ մատերիան գոյություն ունի միայն զգայության մեջ և
մատերիայի գաղափարը ոչ մի բանի պատճենը չի կարող լինել, բացի զգա-
յություններից։ Մատերիայի, որպես օբյեկտիվ ռեալության ժխտումն իդեա-
լիզմի անկյունաքարն է։ Մատերիայի, որպես օբյեկտիվ ռեալության, ընդու-
նումը մատերիալիստական աշխարհայացքի նախադրյալն է։ Մատերիայի գի-
տական բնորոշումը տրված է Վ. Ի. Լենինի կողմից. «Մատերիան այն է, ինչ
որ ներգործելով մեր զգայարանների վրա՝ առաջ է բերում զգայություն, մա-



տերիան զգայության մեջ մեզ տրված օբյեկտիվ ռեալությունն է» (էջ 173)։

Վ. Ի. Լենինն ընդգծում է օրինաչափություն, պատճառականություն և այլ
կատեգորիաների նշանակությունը փիլիսոփայական հիմնական գծերը սահ-
մանազատելու մեջ։ «Սուբյեկտիվիստական գիծը պատճառականության հար-
ցում փիլիսոփայական իդեալիզմ է (որի տարատեսակություններին են պատ-
կանում թե՛ Յումի, թե՛ Կանտի պատճառականության թեորիաները), այսինքն՝
ավելի կամ պակաս չափով թուլացված, ջրիկացված ֆիդեիզմ։ Բնության օբ-
յեկտիվ օրինաչափության և մարդու գլխում այդ օրինաչափության մոտավո-
րապես ճիշտ արտացոլման ճանաչումը մատերիալիզմ է» (էջ 186)։ Մախը իր
սուբյեկտիվացման գիծը պատճառականության և օրինաչափության հարցում
բացեիբաց ընդգծում է, հայտարարելով, որ բնության մեջ չկա ոչ պատճառ,
ոչ հետևանք, պատճառականության օրենքի բոլոր ձևերը բխում են սուբյեկ-
տիվ ձգտումներից։ Սուբյեկտիվ իդեալիզմը հասնում է մինչև այն պնդումը,
թե բնության օրենքները և հենց ինքը բնությունը մեր իմացության սիմվոլ-
ներն են։ Ռուս մախիստ Բոգդանովը, որը ջանում էր մարքսիզմը լրացնել
մախիզմով, գրում էր, որ օրենքները ստեղծվում են մտածողության կողմից,
որպես փորձ կազմակերպելու միջոց։

Մախիստները վերադառնում են Կանտին՝ ժամանակը և տարածությունը
համարելով մարդկային մտքի ապրիորի ձևեր, ժխտում նրանց օբյեկտիվ գո-
յությունը, որպես մատերիայի գոյության հիմնական ձևեր։ Վ. Ի. Լենինը բա-
ցահայտում է ժամանակի և տարածության վերաբերյալ նման սուբյեկտիվիս-
տական հայացքի ռեակցիոն բնույթը, որը շփոթում է ժամանակի և տարա-
ծության վերաբերյալ մարդկային հայացքների փոփոխելիությունը այն փաս-
տի անփոփոխելիության հետ, որ ժամանակը և տարածությունը գոյություն
ունեն անկախ մարդուց ու նրա գիտակցությունից, որ մարդն ու բնությունը
գոյություն ունեն ժամանակի և տարածության մեջ։ Ժամանակի և տարածու-
թյան օբյեկտիվության ժխտումը տանում է դեպի տերտերականություն, դեպի
հիվանդոտ երևակայություն՝ ժամանակից ու տարածությունից դուրս գոյու-
թյուն ունեցող էակների մասին։

Այսպիսով, համեմատելով դիալեկտիկական մատերիալիզմի և էմպիրիո-
կրիտիցիզմի իմացության թեորիայի հիմունքները, Վ. Ի. Լենինը ցույց է տա-
լիս իմացաբանական հարցերի ամբողջ գծով էմպիրիոկրիտիցիզմի լիակատար
ռեակցիոնությունը, որը նոր հերյուրանքներով, զանազան խորամանկու-
թյուններով ծածկում է իդեալիզմի ու ագնոստիցիզմի հին սխալները։ Մարք-
սիզմի փիլիսոփայության ռևիզիոնիզմն ամբողջապես խարսխված էր մարք-
սիզմն ու իդեալիզմը նույնացնելու և միացնելու այդ հակագիտական ու
ռեակցիոն փորձի վրա։

***

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ հատուկ
գլուխ է նվիրված նորագույն ռևոլյուցիային բնագիտության մեջ և այդ կա-
պակցությամբ արմատական քննադատության են ենթարկված բնագիտության
նորագույն տվյալները հօգուտ իդեալիզմի մեկնաբանելու էմպիրիոկրիտիկ-
ների փորձերը։ Ռադիոակտիվ տարրերի հայտնագործությունը, ռադիո-
ճառագայթման պրոցեսների ուսումնասիրությունը, ներատոմային շարժման

*բնույթի պարզաբանումը, այն բանի ապացուցումը, որ ատոմը մատերիայի վերջին աղյուսը չէ, այլ ենթակա է բաժանման ու քայքայման, լույսի ճնշման փաստի ապացուցումը և այլ հայտնագործություններ ջարդեցին ֆիզիկայի հին դրույթները մատերիայի կառուցվածքի ու հատկությունների մասին։ Բայց այդ հայտնագործությունների դերը չէր սահմանափակվում զուտ ֆիզիկայի բնագավառով, դրանք ունեին կարևորագույն իմացաբանական նշանակություն։*

*Ֆիզիկայի նոր հայտնագործություններից իդեալիզմը հանում էր ռեակցիոն հետևություններ։ Իդեալիստները ազդարարում էին, թե նոր ֆիզիկան հերքում է մատերիալիզմի դրույթներն աշխարհի նյութականության մասին, հերքում է նյութի պահպանման օրենքը, վերացնում ճշմարտության վերաբերյալ մատերիալիստական հայացքը և այլն։ Իրականում ֆիզիկայի նոր տվյալները, ինչպես ցույց է տալիս Վ. Ի. Լենինը, ո՛չ միայն չեն հերքում դիալեկտիկական մատերիալիզմի դրույթները, այլ, ընդհակառակը, նոր հաստատում են բերում նրանց, որովհետև ֆիզիկայի նոր դրույթները՝ ատոմի քայքայելիությունը, նրա անսպառելիությունը, մատերիայի և նրա շարժման բոլոր ձևերի փոփոխելիությունը միշտ էլ դիալեկտիկական մատերիալիզմի հիմքն են կազմել։*

*Իդեալիստները նույնացնում էին մատերիալիզմի հին ձևերը մատերիալիզմի հետ առհասարակ։ Ավելին, նրանք ձևացնում էին, թե չեն նկատում մատերիալիզմի բարձրագույն ձևի՝ դիալեկտիկական մատերիալիզմի գոյությունն անգամ, չեն նկատում, որ մեխանիստական մատերիալիզմի սահմանափակություններն ու թերությունները, ինչպես և գռեհիկ մատերիալիզմի ոչ գիտական դրույթներն առաջին անգամ գիտական քննադատության են ենթարկվել հենց դիալեկտիկական մատերիալիզմի կողմից։ Ֆիզիկայի նոր դրույթների միջոցով ավելի ակնառու դարձավ, որ մեխանիստական մատերիալիզմի դրույթները մատերիայի կառուցվածքի մասին հնացած են, որ այդ մատերիալիզմը չէր հասնում մատերիայի անսպառելիության գաղափարին, չէր գիտակցում, որ ատոմը մատերիայի վերջին աղյուսը չէ, այլ հանգույց նրա կառուցվածքի մեջ, չէր լուծում հարաբերական ու բացարձակ ճշմարտության փոխհարաբերության հարցը, չգիտեր դիալեկտիկան, գերագնահատում էր մեխանիստական տեսակետը և այլն։ Բայց մատերիալիստական աշխարհայացքը, հանձին մարքսիստական փիլիսոփայության, վաղուց արդեն հաղթահարել էր մեխանիստական մատերիալիզմի սահմանափակությունները։ Մատերիալիզմը զարգանալով հրաժարվում է հնացած դրույթներից ու հետևություններից և, հենվելով բնագիտության նոր տվյալների վրա, ավելի ու ավելի ճշգրիտ է տալիս աշխարհի գիտական պատկերը։ Այս ամենն անտեսում էին իդեալիստները, այդ թվում և մախիստները՝ նպատակ ունենալով հին մատերիալիզմի թերությունները տարածել ժամանակակից մատերիալիզմի վրա, այդ թերություններն օգտագործել մատերիալիզմի հիմունքները «հերքելու» համար։ Բայց դա անպետք պրիոմ էր։ Իրականում ֆիզիկայի նոր տվյալները հիմքից հերքում էին հենց իդեալիստական աշխարհայացքը, ակնառու դարձնում, որ իդեալիզմը բնագիտության զարգացման խոչընդոտն է, նրա դրույթների չարաշահումը։*

*Վ. Ի. Լենինը բացահայտեց «ֆիզիկական» իդեալիզմի էությունը, իդեալիզմ, որի հիմնական իդեան «ժխտումն է զգայության մեջ մեզ տրված և մեր թեորիաների կողմից արտացոլվող օբյեկտիվ ռեալության, կամ տարակույս*



*է այդպիսի ռեալության գոյության նկատմամբ» (էջ 388)։ Ֆիզիկական իդեալիզմը կապված էր ֆիզիկայի ճգնաժամի հետ։ Ֆիզիկայի ճգնաժամը ֆիզիկայի նոր տվյալների իդեալիստական մեկնաբանության արդյունք էր։ Իդեալիզմը ֆիզիկայի զարգացումից այն եզրակացությունը հանեց, որ իբր «մատերիան չքանում է» և ակնբախ է դառնում շարժման գոյությունն առանց մատերիայի։ Վ. Ի. Լենինը ցույց է տալիս, որ ֆիզիկայի նոր հայտնագործությունների հետևանքով իսկապես չքանում է այն սահմանը, մինչև որտեղ մեզ ծանոթ էր մատերիան մինչև այժմ, չքանում են մատերիայի այնպիսի հատկություններ, որոնք առաջ թվում էին բացարձակ, անփոփոխ, նախասկզբնական (անթափանցելիություն, իներցիա, մասսա և այլն) և որոնք այժմ երևան են գալիս որպես հարաբերական հատկություններ, որոնք հատուկ են մատերիայի միայն մի քանի կացություններին։ Իսկ ինչ վերաբերում է մատերիայի այն «հատկությանը», որի ճանաչման հետ կապված է փիլիսոփայական մատերիալիզմը, այսինքն՝ այն, որ մատերիան օբյեկտիվ ռեալություն է, ապա ֆիզիկայի ոչ մի հայտնագործություն մազաչափ անգամ չի դիպչում դրան։ «Մատերիայի չքացման» վերաբերյալ իդեալիստական դրույթը լոկ հակագիտական հերյուրանք է, որովհետև ինչքան էլ փոխվեն մարդկանց հայացքները մատերիայի կառուցվածքի մասին, անդրդվելի է այն, որ մարդուց դուրս ու նրա գիտակցությունից անկախ գոյություն ունի նյութական աշխարհ, օբյեկտիվ ռեալություն։*

*«Մատերիայի չքացման» վերաբերյալ իդեալիստական դրույթը կապված է այն հայացքի հետ, ըստ որի հնարավոր է շարժումն առանց մատերիայի։ Դատելով այդպես, իդեալիստները լռության են տալիս մատերիայի և մտքի հարաբերությունը, միտքը կտրում են իրականությունից, մատերիայից. «...շարժումը մատերիայից կտրելը հավասարազոր է մտածողությունը օբյեկտիվ ռեալությունից կտրելուն, իմ զգայություններն արտաքին աշխարհից կտրելուն, այսինքն՝ իդեալիզմի կողմն անցնելուն»,—ասում է Վ. Ի. Լենինը (էջ 340)։ Ֆիզիկայի նոր տվյալներից բնավ չի բխում, որ հնարավոր է շարժումն առանց մատերիայի և, վերջին հաշվով, միտքն առանց մատերիայի։ Այդ տվյալներն ապացուցում են, որ շարժման ձևերը բազմազան են, և միտքն ընդունակ է ճանաչելու այդ ձևերը, որ շարժումը ոչ թե մտքի շարժումն է միայն, այլ այն գոյություն ունի օբյեկտիվորեն և արտացոլվում է մտքի կողմից։*

*«Ֆիզիկական» իդեալիզմը պատահականություն չէ։ Այն, ինչպես ցույց է տալիս Վ. Ի. Լենինը, ունի իր սոցիալական ու իմացաբանական արմատները։ «Ֆիզիկական» իդեալիզմի ռեակցիոն ոտնձգությունները ծնունդ են առնում գիտության բուռն պրոգրեսից, այն բանից, որ գիտության նոր տվյալները մեկնաբանվում են ռեակցիոն իդեալիզմի դիրքերից։ Վերջինս մտքի նվաճումները, օրենքների գիտակցումը համարում է ոչ թե իրականության արտացոլում, այլ մտքի նշանակումներ, սիմվոլներ, որ ստեղծվում են հենց մտքի կողմից։ Նորից կյանքի է կոչվում կանտյան հին դրույթը՝ ոչ թե բնությունն է մեզ տալիս օրենքներ, այլ մարդն է դրանք թելադրում բնությանը։ «Ֆիզիկական» իդեալիզմի մյուս պատճառը ռելյատիվիզմն է, որը փաթաթվում է ֆիզիկոսների վզին հին թեորիաների խիստ բեկման շրջանում, և որը դիալեկտիկան չգիտենալու պարագայում անխուսափելիորեն տանում է դեպի իդեալիզմ։ Այն հանգամանքը, որ գիտության նոր տվյալները հերքում են այն հին*

դրույթները, որոնք առաջ ճշմարտություն էին համարվում, իդեալիզմի հա-
մար զենք են հանդիսանում ազդարարելու, որ բացարձակ և օբյեկտիվ ճշմար-
տություն չի կարող լինել, որ ճշմարտությունը կախված է միայն մարդուց։
Բայց մարդկանց գիտելիքների հարստացումը, նախկինում ձեռք բերված գի-
տելիքների ճշգրտումը, հրաժարումը սխալ դրույթներից խոսում է ոչ թե այն
մասին, որ ճշմարտությունը միայն ու միայն հարաբերական է, այլ այն մա-
սին, որ մարդկային միտքն ընդունակ է քայլ առ քայլ հարաբերական ճըշ-
մարտությունից հասնելու բացարձակին, որը ոչ թե գոյանում է հարաբերա-
կան ճշմարտություններից անկախ ու անջատ, այլ նրանց միջոցով։ Դիալեկ-
տիկան չի բացարձակացնում հարաբերական ճշմարտությունները, այլ ռել-
յատիվիզմը, այսինքն՝ գիտելիքների հարաբերականությունը, ներառում է
դիալեկտիկայի մեջ որպես մոմենտ, չհանգեցնելով դիալեկտիկան ռելյատի-
վիզմին։ Բայց հենց դիալեկտիկա չհասկանալն է, որ ֆիզիկոսների մի մա-
սին թեքում է դեպի ռելյատիվիզմ և դրա միջոցով՝ դեպի իդեալիզմ։

«Ֆիզիկայի ճգնաժամից» դուրս գալու միակ ելքը անցումն է դիալեկտի-
կական մատերիալիզմին։ «Ֆիզիկական» իդեալիզմը, նրա հետ կապված էմ-
պիրիոկրիտիցիզմը և նման փիլիսոփայական հոսանքներ, Վ. Ի. Լենինի բնու-
թագրությամբ, այն մեռյալ արդյունքներն ու թափթփուկներն են, որոնք ան-
խուսափելիորեն բխում են ֆիզիկայի զարգացումից։ Ֆիզիկոսների ճնշող
մեծամասնությունը թեև տարերայնորեն, բայց գնում է մատերիալիզմի
ուղիով և, ինչպես կանխատեսել է Վ. Ի. Լենինը, «ֆիզիկայի, ինչպես և ժա-
մանակակից ամբողջ բնագիտության հիմնական մատերիալիստական ոգին
կհաղթի բոլոր և ամեն տեսակ ճգնաժամերը, բայց մետաֆիզիկական մատե-
րիալիզմը դիալեկտիկական մատերիալիզմով անպայման փոխարինելու պա-
րագայում միայն» (էջ 391)։

Ֆիզիկայի զարգացման ընթացքը վերջին հիսնամյակում փայլուն կեր-
պով արդարացրեց Վ. Ի. Լենինի այս կանխատեսումը։ Մատերիալիստական
հիմնական ոգին հաղթանակել և հաղթանակում է բնագիտության մեջ։ Սովե-
տական ֆիզիկոսները առաջնորդվելով դիալեկտիկական մատերիալիզմով,
անխոնջ կերպով զարգացնում են ֆիզիկան, դեն նետելով ու ջախջախելով
ամեն մի իդեալիզմ այդ բնագավառում։ Արտասահմանյան առաջավոր բնա-
գետներից շատերը, համոզվելով իդեալիստական աշխարհայացքի սնանկու-
թյան մեջ, անցնում են մատերիալիստական աշխարհայացքին։ Բայց «ֆի-
զիկական» իդեալիզմը դեռևս լայն տարածում ունի կապիտալիստական եր-
կրներում, և նրա ներկայացուցիչներն իրենց նախորդների նման ճգնում են
ֆիզիկայի նորագույն տվյալները օգտագործել մատերիալիզմի դեմ, գործի
դնելով նույն տիպի պրիոմներ, որոնք ջախջախված են Վ. Ի. Լենինի հանճա-
րեղ երկում։ Այդ աշխատությունը, որը մատերիալիստորեն ամփոփել է ժա-
մանակակից բնագիտության նվաճումները և մերկացրել իդեալիզմի չարա-
շահումները բնագիտության մեջ, այժմ էլ կատարում է իր վիթխարի դերը
բնագիտության պրոգրեսիվ զարգացման գործում, զինելով նրան միակ գի-
տական թեորիայով ու մեթոդով։

Մարգարեաբար են հնչում այսօր Լենինի խոսքերն այն մասին, որ «մարդ-
կային միտքը շատ արտասովոր բաներ է հայտնագործել բնության մեջ և էլ
ավելի կհայտնագործի, դրանով իր իշխանությունը մեծացնելով նրա վերա-
բերմամբ...»։ Մարդկային միտքն ավելի ու ավելի խորն է թափանցում մա-





տերիայի կառուցվածքի մեջ, հայտնագործելով նոր մասնիկներ, նյութի ու
շարժման նոր ձևեր ու հատկություններ։

* * *

Մախի աշակերտները բազմիցս փորձեր են կատարել իրենց ուսուցչի հա-
յացքները տարածել հասարակական երևույթների վրա։ Այդ բանում հատկա-
պես ջանում էին ռուս մախիստները, որոնց մի մասը գերմանացի մախիստ
Բլայի նման բացահայտորեն դուրս էր գալիս մարքսիզմի դեմ, իսկ մյուս
մասը՝ Բոգդանովը և ուրիշներ, ջանում էին մարքսիզմն ու մախիզմը հաշտեց-
նել և միացնել ո՛չ միայն փիլիսոփայության, այլև սոցիոլոգիայի մեջ։ Վ. Ի.
Լենինը ցույց է տալիս թե՛ մարքսիզմի դեմ բացահայտորեն պայքարող և թե՛
մարքսիզմն ու մախիզմը համադրող մախիստների ճիգերի հակագիտական
բնույթն ու սնանկությունը։

Մախիստ Բոգդանովը տարածելով հասարակության վրա էմպիրիոկրիտի-
ցիզմի դրույթը մարդու զգայությունների և օբյեկտիվ աշխարհի նույնության
մասին՝ վերանայում էր պատմական մատերիալիզմի հիմնական դրույթները։
Ազդարարելով, որ սոցիալական կյանքն իր բոլոր դրսևորումների մեջ գիտակ-
ցականորեն հոգեկան է, նա եզրակացնում էր՝ «հասարակական կեցությունն
ու հասարակական գիտակցությունը, այս բառերի ճշգրիտ իմաստով, նույնա-
կան են»։ Բոգդանովի այս «հայտնագործությունը» ուղղված է մարքսիզմի
հայտնի դրույթի դեմ, ըստ որի հասարակական գիտակցությունը որոշվում է
հասարակական կեցությամբ։ Հասարակական գիտակցությունը և հասարակա-
կան կեցությունը նույնացնելով, Բոգդանովը ժխտում է հասարակական կյան-
քի զարգացման օբյեկտիվ բնույթը, այն, որ հասարակական կեցությունը ան-
կախ է հասարակական գիտակցությունից և արտացոլվում է վերջինիս կող-
մից։ Լենինը բացահայտում է բոգդանովյան այդ և նման իմաստակություն-
ների արմատները մախիստական սուբյեկտիվ իդեալիզմի մեջ և հակադրում
դրանց պատմական մատերիալիզմի դրույթները։

Վ. Ի. Լենինը հատուկ քննության է ենթարկում փիլիսոփայության պար-
տիականության խնդիրը։ Ինչպես նշվեց, մախիստները հանդես էին եկել մա-
տերիալիզմից և իդեալիզմից վեր բարձրանալու հավակնությամբ։ Իրակա-
նում, փիլիսոփայության անպարտիականության ցուցանակի տակ, նրանք
անց էին կացնում պարտիական գիծ՝ իդեալիստական աշխարհայացքը։ Նո-
րագույն փիլիսոփայությունը նույնպես պարտիական է, ինչպես և երկու հա-
զար տարի սրանից առաջ,— ասում է Վ. Ի. Լենինը։ «Երրորդ գիծը» փիլիսո-
փայության մեջ սոսկ փիլիսոփայության շառլատանություն է և աչքակապու-
թյուն։ Ամենուրեք, և՛ իմացաբանության, և՛ սոցիոլոգիայի մեջ, ժամանակա-
կից փիլիսոփայության մեջ գնում է պայքար պարտիաների, այսինքն՝ մա-
տերիալիզմի և իդեալիզմի միջև, «...մի պայքար, որ վերջին հաշվով արտա-
հայտում է ժամանակակից հասարակության թշնամական դասակարգերի տեն-
դենցներն ու իդեոլոգիան» (էջ 460)։ Իդեալիստական պարտիան փիլիսոփա-
յության մեջ ֆիդեիզմի նուրբ, զտված ձևն է, որը ճանապարհ է բացում տեր-
տերականության առաջ, հանդիսանալով ռեակցիոն բուրժուազիայի հոգևոր
ներգործության զենքը մասսաների վրա։ «Անպարտիականությամբ» քողարկ-
վելը պայքարի պրիոմ է՝ մատերիալիզմի դեմ, և այդ արգահատելի պրիոմի

ջախջախումը Լենինի աշխատության մեծագույն ծառայություններից մեկն է։

Մարքսիստական փիլիսոփայությունը կարիք չունի թաքցնելու իր պարտիականությունը։ Դա հետևողական մատերիալիզմ է, որ իր մեջ մարմնացնում է գիտականությունն ու պարտիականությունը։

Ռևիզիոնիզմը ժամանակակից պայմաններում գլխավոր վտանգն է բանվորական շարժման մեջ։ Կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 թվականի նոյեմբերյան խորհրդակցության Դեկլարացիան բացահայտեց ժամանակակից ռևիզիոնիզմի էությունը որպես բուրժուական իդեոլոգիայի դրսևորում, որը ջլատում է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն եռանդը, պահանջում պահպանել կամ վերականգնել կապիտալիզմը։ Այժմ, ինչպես և անցյալում, ռևիզիոնիզմը հարձակվում է մարքս-լենինյան պարտիաների թեորիական հիմքի՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի վրա, պահանջում հրաժարվել դիալեկտիկայից և մատերիալիզմից։ Նա իդեոլոգիայի անպարտիականության քողարկով դուռ է բաց անում բուրժուական փիլիսոփայության առաջ։ Փիլիսոփայական ռևիզիոնիզմի ջախջախումը մարքսիստական-լենինյան փիլիսոփայության կարևորագույն խնդիրներից մեկն է։

Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեծագույն նշանակությունը հենց այն է, որ նա կոմունիստական և բանվորական պարտիաներին գիտական մի հուժկու զենք ավեց, որը հնարավորություն է տալիս ճիշտ բացատրել հասարակական զարգացման բարդ երևույթները, օրգանապես կապել թեորիան պրակտիկայի հետ, պայքարել մտքի քարացման դեմ, ջախջախել բուրժուական իդեոլոգիան ու կասեցնել նրա առողսկման փորձերը բանվորական շարժման մեջ։

***

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության հայերեն ներկա հրատարակությունը Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուի չորրորդ հրատարակության 14-րդ հատորի վերահրատարակությունն է։ Կան թարգմանական և տերմինաբանական բնույթի որոշ շտկումներ և ուղղումներ։ Բայց պետք է ասել, որ չնայած սույն հրատարակությանը նախորդել են մի շարք հրատարակություններ, այստեղ ևս, ցավոք սրտի, տեղ են գտել թարգմանական առանձին սխալներ, մտքեր, որոնք ճշգրտորեն չեն վերարտադրում բնագիրը։ Քիչ չեն պատահում առանձին բառերի, այդ թվում և գիտական տերմինների սխալ թարգմանություններ, վրիպակներ, տեղ-տեղ նկատվում է անփութություն, չի պահպանված տերմինների միօրինակությունը։ Այս թերությունները կարելի էր վերացնել, եթե հրատարակչությունն ավելի մեծ խստապահանջություն ու պատասխանատվություն ցուցաբերեր։ Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանության ու հրատարակության ժամանակ նման թերություններ չպետք է լինեն։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԱՆՆԿՈՒՆ ՄԱՐՏԻԿԸ

(Բոգդան Կնունյանցի ծննդյան 80-ամյակի առթիվ)

Հ. ԻՆՃԻԿՅԱՆ

Բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիաների ծրագրային պահանջներից, նրանց քաղաքականության հիմնական հարցերից մեկը եղել է և մնում է ազգային հարցը, նրա ճիշտ կիրառումը պատմական տարբեր պայմաններում։ Բոլշևիկյան պարտիան և նրա առաջնորդ ու հիմնադիր Վ. Ի. Լենինը այդ հարցը մշտապես համարել են պրոլետարիատի պայքարի ու սոցիալիզմի կառուցման հաջողության անհրաժեշտ գործոններից մեկը։ Մարքսիզմի կլասիկները ազգային հարցի ճիշտ լուծումը բխեցնում էին միայն պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակից։ Մարքսիզմ-լենինիզմը ազգային հարցը համարում է պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ընդհանուր հարցի օրգանական մասը։

Սրանով էլ բացատրվում է պարտիական կազմակերպությունների և առանձին ղեկավար գործիչների ակտիվ գործունեությունը ազգային հարցի ճիշտ լուծման ասպարեզում, մանավանդ Ռուսաստանի այն շրջաններում, որտեղ տեղական պայմանները պահանջում էին տանել հատուկ աշխատանք մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ։

Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներից Բոգդան Կնունյանցը, ինչպես հայտնի է, իր ղեկավար գործունեությունը սկսել է Բաքվի բազմազգ պրոլետարիատի մեջ։ Տարբեր ազգերի ու ժողովուրդների եղբայրության գաղափարը նրան հասկանալի է եղել դեռ պատանեկության տարիներին, երբ Կնունյանցների ընտանիքը ապրում էր Շուշիում, որտեղ, մի կողմից, առկա էր ադրբեջանցի և հայ աշխատավորության բարեկամությունը, մյուս կողմից՝ տիրող դասակարգերի ներկայացուցիչների դրդմամբ տեղի էին ունենում ազգամիջյան ընդհարումներ, որոնց հետևանքները հաճախ լինում էին բավական աղետաբեր։

Այնուհետև, մարքսիստական գրականության ուսումնասիրությունը, Պետերբուրգում անցկացրած ուսանողական ավելի քան չորս տարիները, որոնք դարձան Բ. Կնունյանցի համար պրակտիկ ռևոլյուցիոն աշխատանքի դպրոց, Վ. Ի. Լենինի կազմակերպած «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» ղեկավարությամբ մղված պայքարը նրան ձևավորեց որպես իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստի։ Մայրաքաղաքի բազմազգ ուսանողության կազմակերպություններում և կովկասցի ուսանողների հայրենակցական միություններում Բ. Կնունյանցը ձեռք էր բերել ղեկավար աշխատանքի զգալի փորձ։

Երբ 1901 թվականի գարնանը նրան աքսորեցին Բաքու, նա եկավ Կով-

կասի պրոլետարական կենտրոնը, նախապես ծանոթ լինելով այստեղի պայմաններին, բանվորական կազմակերպություններին ու նրանց գործիչներից շատերին։

Բոգդանը շուտով դարձավ Բաքվի ռուս, ադրբեջանցի, հայ, վրացի և այլ ազգերի բանվորների սիրելին, ինչպես Մելիքյանցն («Դեդուշկա») է ասում՝ տեղի կազմակերպության հոգին։ Տիրապետելով ռուսերենին, հայերենին և մասամբ ադրբեջաներենին, նա կարողանում էր կազմակերպական և պրոպագանդիստական աշխատանք կատարել բանվորական և երիտասարդական տարբեր կոլեկտիվներում։ Բ. Կնունյանցը դարձավ Բաքվի և Անդրկովկասի այլ վայրերի սոցիալ-դեմոկրատական ու, մասնավորապես, Կովկասյան Միութենական Կոմիտեի ստեղծողներից մեկը։ Լինելով «Իսկրա» թերթի ակտիվ գործակալներից մեկը, Վ. Ի. Լենինի աշակերտը և զինակիցը, Բ. Կնունյանցն իր աշխատանքի ընթացքում, գրավոր ու բանավոր ելույթներում, հոդվածներում, բրոշյուրներում ու թռուցիկներում հանդես է գալիս որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հետևողական պրոպագանդիստ, այդ գաղափարների անշեղ իրագործող։

Ինչպես արդեն լույս տեսած Ընտիր երկերում *, այնպես էլ դեռ չհրատարակված աշխատություններում Բ. Կնունյանցը լուսաբանում է ազգային հարցը, ելնելով պրոլետարիատի ինտերնացիոնալ շահերից, նրա առաջ ծառացած պատմական խնդիրներից։

Որպես մարքսիստ-լենինյան, Բ. Կնունյանցը վերլուծում է ցարական Ռուսաստանի, ժողովուրդների այդ բանտի յուրահատուկ պայմանները, որոնցով հենց բնորոշվում էր ազգային հարցի սրությունը երկրում։ Մի շարք աշխատություններում նա ցույց է տալիս, թե ինչպես ցարիզմը հետևողականորեն տանում է «բաժանիր, որ տիրես» քաղաքականությունը։ Մինչև սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գործունեության սկիզբը, գրում է նա «Իսկրա»-ում տպագրված «Մեր տակտիկայի և կազմակերպության մի քանի հարցերը» հոդվածում, Կովկասի ազգաբնակչությունը ապրում էր անջատ, ըստ ազգությունների, երբեմն ի հայտ բերելով անգիտակցորեն-թշնամական վերաբերմունք իրար նկատմամբ։ Տիրող դասակարգերի շահերի բախումը հաճախ հասցնում էր ազգամիջյան հակասությունների սրման, որն ավելի խորանում էր ցարական կառավարության քաղաքականության հետևանքով։

«Նոր թալան» հոդվածում խիստ քննադատության ենթարկելով ցարիզմի ազգային քաղաքականությունը, Բ. Կնունյանցը խոսում է 1903 թվականի հունիսի 12-ի, հայ եկեղեցիների գույքը բռնագրավելու օրենքի մասին որպես մի միջոցառում, որը կազմում է ցարիզմի գաղութային քաղաքականության մի օղակը։

«Կուլտուրական խաղաղ հիմնարկների սիստեմատիկ հետապնդումը,— գրում է նա,— «ռուսացման» շարաբաստիկ քաղաքականությունը, ավելի քան 300 հայկական դպրոցների փակումը, բարեգործական հիմնարկների ճնշումը, հրատարակչական ընկերությունների փակումը և նման մի շարք այլ միջոցառումներ հետզհետե առաջացրին սուր հակամարտություն հայ ազգաբնակչության և կառավարության միջև, որ վաղ թե ուշ պիտի պայթեր» (Նույն տեղը, էջ 40—41)։

* Б. М. Кнунянц.— Избранные произведения, Айпетрат, 1958 г.



Ռևոլյուցիոն շարժման վերելքի պայմաններում եկեղեցական կալվածքների բռնագրավման մասին օրենքը հանդիսացավ այն խթանը, որը շարժեց լայն մասսաներին, հանելով նրանց ցարիզմի դեմ։ Ինչպես ցույց է տալիս Բ. Կնունյանցը, Կովկասյան Միութենական Կոմիտեն, տեղական պարտիական կազմակերպությունները մեծ հաջողությամբ օգտագործեցին հիշյալ իրադարձությունները ցարիզմի դեմ, հօգուտ Կովկասում ռևոլյուցիոն շարժման ծավալման։ Բոլոր հայաբնակ քաղաքներում տեղի ունեցան ցույցեր, Ելիզավետպոլում, Թիֆլիսում, Բաքվում, Ալեքսանդրապոլում, Ղարսում, Շուշիում տեղի ունեցան զինված ընդհարումներ և եղան զոհեր։ Ցարիզմի դեմ ազգային-ազատագրական պայքարի մի էջ է այս, որ ցույց է տալիս ժողովրդական մասսաների պայքարի ակտիվացումը պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ։

«Կազմակերպված սոցիալ-դեմոկրատիան,— գրում է Կնունյանցը,— իր կողմից գրավոր և բանավոր ագիտացիա էր մղում՝ բոլոր ընկերներին կոչ անելով օգտագործել դժգոհությունը և այն ռևոլյուցիոն հունով ուղղել կառավարության դեմ և կառավարության հետ տեղի ունեցող բոլոր ընդհարումների ժամանակ կանգնել առաջին շարքերում» (Նույն տեղը, էջ 43)։

Հետաքրքական է նշել, որ լենինյան «Իսկրան» Բ. Կնունյանցի այս հոդվածի առթիվ տվել է հատուկ խմբագրական, որտեղ գոհունակություն է հայտնում, որ հոդվածագիրը ճիշտ է քննադատում ցարական կառավարության ազգային քաղաքականությունը և ճիշտ է ըմբռնում հայ բանվորների և աշխատավորության դասակարգային խնդիրները՝ տվյալ իրադարձությունների կապակցությամբ։

Լուսաբանելով կովկասյան կազմակերպությունների ճիշտ դիրքը, «Իսկրան» գրում է. «Մենք ձգտում ենք խոսքի, խղճի և միությունների—բոլոր և ամեն տեսակի միությունների,— հետևաբար, այդ թվում նաև եկեղեցական միությունների լիակատար ազատության... Հենց եկեղեցական միությունների ազատության համար այդ պայքարի օրինակով, մենք կարող ենք առավել հասկանալի կերպով պարզաբանել, թե գործնականում ինչպես պետք է կիրառել մեր ծրագրի այն կետը, որը պահանջում է ճանաչել յուրաքանչյուր ազգի ինքնորոշման իրավունքը» (Նույն տեղը, էջ 49)։

Բ. Կնունյանցի պայքարը ցարիզմի, նրա ազգային քաղաքականության դեմ շարունակվում է նրա գործունեության բոլոր շրջաններում։ ՌՍԴԲՊ II համագումարում արտասանած ճառերում, համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում, բանտերում և դատարաններում, որպես Պետերբուրգի Բանվորական դեպուտատների Սովետի գործկոմի անդամ նա շարունակում է մերկացնել ցարիզմի մեծապետական, շովինիստական քաղաքականությունը։

Երբ 1905 թվականի նոյեմբերի 1-ին Լեհաստանի ներկայացուցիչները Սովետի նիստում իրենց ճառերում ցասումով խոսում էին ցարիզմի գաղութային քաղաքականության մասին ու իրենց բողոքն էին հայտնում Լեհաստանում ռազմական դրություն մտցնելու կապակցությամբ, ռևոլյուցիոն շարժումը ճնշելու նպատակով, Սովետի գործկոմի անունից պատասխան խոսք է ասում Բ. Կնունյանցը։ Նա հայտարարում է, որ բոլոր ազգերի բանվորների պայքարը ցարիզմի դեմ նույն նպատակն ունի և, «եթե լեհերը տառապում են մեր կառավարության ազգային ձգտումներից, ապա լեհական պրոլետարիատի՝ պետության դեմ մղած պայքարում նրան մշտապես կաջակցի ռուս պրո-

լետարիատը»։ Այսպիսի միասնական ճակատը կստեղծվի անպայման, որովհետև պետությունը նույն ձևով ճնշում է «և ռուս, և լեհ ժողովրդին, և մենք պետք է ձեռք-ձեռքի տված— ռուս և լեհ պրոլետարիատը— լարենք բոլոր ուժերը, որպեսզի վերջնականապես ջախջախենք ատելի միապետությունը,— բոլոր ցարերին և նրանց գործակիցներին» (Նույն տեղը, էջ 105—106)։

Ցարիզմի գաղութային հանցավոր քաղաքականությունը մերկացնող փաստաթուղթ է Կնունյանցի «Երեք ամիս աքսորում և փախուստ» հոդվածը, որը նա գրել է աքսորից, Տոբոլսկի նահանգից փախչելուց հետո և որը լույս է տեսել 1907 թվականի աշնանը։ Նկարագրելով երկրի հյուսիսային ծայրամասերում ապրող զիրյան (կոմի), օստյակ և սամոյեդ (այդպես էին կոչվում մի ժամանակ նենեցները), կելտերը և հյուսիսի այլ ցեղեր) ժողովուրդների վիճակը, Բ. Կնունյանցը ցույց է տալիս, թե ինչպես կապիտալիստական հարաբերությունները մուտք են գործում ցարիզմի այս գաղութները։ Ձկան և գանազան մորթիների արդյունահանումը և առևտուրը կամաց-կամաց կենտրոնանում է երկու-երեք առևտրական ընկերությունների ձեռքում։ Տեղացիներին բառիս բուն իմաստով կողոպտում են ձկնարդյունաբերողները, վաճառականները, ռուս կապիտալիստները։ Տնտեսապես կաշկանդված, քաղաքականապես բոլորովին իրավազուրկ տեղացիները բողոքելու կամ այս վիճակից դուրս գալու ոչ մի հնարավորություն չունեին։ Ցարիզմը ամեն կերպ պահպանում է իրերի գոյություն ունեցած վիճակը զորքերի, ոստիկանների, չինովնիկների օգնությամբ։ Այս բոլորից բացի նա սիստեմատիկորեն թունավորում էր տեղացիների օրգանիզմը ալկոհոլով։ Բ. Կնունյանցի վկայությամբ Օբդորսկ գյուղի՝ իրենց աքսորավայրի, պետական խանութը «յուրաքանչյուր տարի վաճառում է մինչև 100.000 դույլ օղի»։

Իրենց ամբողջ գործունեությամբ ցարիզմին օգնում էին բուրժուազիան և նրա պարտիաները, անկախ նրանց ազգային պատկանելությունից։ Առաջին պլանի վրա դնելով իրենց նեղ, դասակարգային շահերը, բուրժուա-նացիոնալիստական պարտիաները աշխատում էին այդ շահերը ներկայացնել որպես «համազգային» և մթագնել աշխատավորության գիտակցությունը, հեռացնել նրան դասակարգային պայքարի գաղափարից։ Այս պատճառով ազգային հարցի ճիշտ լուծումը բոլշևիկներից պահանջում էր պսակազերծել «համազգային» գաղափարախոսության տարբեր դրսևորումները, բանվոր դասակարգին ցույց տալ բուրժուական նացիոնալիզմի վնասակարությունը։

Բ. Կնունյանցը, որը, ի դեպ, Կովկասում առաջին մարքսիստներից էր, որոնք զբաղվում էին ազգային հարցով, իր պրակտիկ ռևոլյուցիոն գործունեության մեջ և աշխատություններում մեծ տեղ է տվել բուրժուական նացիոնալիզմի դեմ մղվող պայքարին։

Լինելով Բաքվի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ղեկավարներից մեկը, նա ակտիվ կերպով մասնակցել ու ղեկավարել է դաշնակցականների և այլ ազգայնական կազմակերպությունների դեմ տարվող պայքարը։ Բ. Կնունյանցն իր աշխատություններում ցույց է տալիս, թե ինչպես քայլ առ քայլ սոցիալ-դեմոկրատները նվաճում էին դիրքերը, նացիոնալիստների ազդեցությունից հետզհետե դուրս բերելով աշխատավորության առաջավոր մասին։ Պայքարն առանձնապես սրվեց 1900-ական թվականներին, երբ դաշնակցականներն իրենց «Դրոշակ» թերթով լայն աշխատանք ծավալեցին՝ նպատակ ունենալով համոզել հայ աշխատավորներին, որ միակ պարտիան,



որը «ներկայացնում է» հայ ժողովրդի շահերը, դա դաշնակցությունն է։ Տեղի էին ունենում ժողովներ, զեկուցումներ, դիսկուսիաներ տարբեր հարցերի շուրջը։ Բայց առանցքը մեկն էր՝ ո՞վ է ճիշտ իր գաղափարախոսության մեջ, սոցիալ-դեմոկրատները, թե՞ դաշնակցականները։ Բ. Կնունյանցը և նրա պարտիական ընկերները հաճախ են մասնակցել այդպիսի ժողովների և ելույթներ ունեցել դաշնակ ղեկավարների (Ք. Միքայելյանի և ուրիշների) դեմ։ Այդ հավաքույթներում կարդացած նրա զեկուցումներից հայտնի է «Նացիոնալիզմ և սոցիալիզմ» ռեֆերատը։

Իր գրավոր և բանավոր ելույթներում Բ. Կնունյանցը ցույց էր տալիս, թե ըստ էության ինչի է հանգում դաշնակների կեղծ ժողովրդական, «սոցիալիստական» և «ազգային» ծրագիրը։ Մինչ հայ ժողովրդի լավագույն զավակներն անձնազոհ պայքար էին մղում Արևելքի և Արևմուտքի ժանդարմի՝ ցարիզմի դեմ՝ հանուն բոլոր ժողովուրդների ազատագրման, դաշնակներն իրենց ամբողջ գործունեությունը և ուշադրությունն ուղղել էին Արևմտյան Հայաստանի վրա։ Դաշնակներն ամեն կերպ աշխատում էին, նշում է Կնունյանցը, հայերին ետ պահել համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժումից, մեղադրում էին հայ սոցիալ-դեմոկրատներին, որ նրանք դավաճանում են «ազգային դատին», ցրում են ուշադրությունը և նյութական միջոցները, որոնք պետք է ուղղված լինեն Թուրքահայերի ազատագրմանը։ «Նրանք բոլոր միջոցներով,— գրում է նա,— ձգտում էին արգելակել սոցիալիստական շարժումը կովկասահայերի մեջ, որպեսզի նրանց ուշադրությունը ամբողջությամբ սևեռված լինի հայկական հարցի վրա։ Այս պայմաններում Կովկասի սոցիալ-դեմոկրատիան չէր կարող ցույց չտալ իր վերաբերմունքը, և նա հենց սկզբից կանգնեց ճիշտ ուղու վրա» (Նույն տեղը, էջ 53)։

Կյանքը ցույց տվեց, որ ճիշտ էին բոլշևիկները, որոնք հայերի ազատությունը, նրանց պետականության վերականգնումը կապում էին ռուսական ռևոլյուցիայի բախտի հետ, որը վերջապես գործնականում ապացուցեց, թե ինչպես կարելի է լուծել հայկական հարցը։

Ս. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը և ուրիշներ հետևողական պայքար են տարել դաշնակների, այսպես կոչված՝ «սոցիալիստական» ուղղության դեմ, ցույց տալով, որ նրանք այդ միջոցով քողարկում են իրենց նացիոնալիզմը, աշխատում են պահպանել իրենց ազդեցությունը աշխատավորության որոշ խավերի վրա։ Այս է պատճառը, նշում է Կնունյանցը, որ նրանք 1907 թվականին «սողոսկեցին ինտերնացիոնալի մեջ»։ Մի շարք հոդվածներում նա ցույց է տալիս, թե ինչպես ռեակցիայի տարիներին դաշնակներն իրենց սոցիալիստներ ձևացնելով, էսեռների և մենշևիկների հետ միասին միանգամայն բացասական դեր կատարեցին Բաքվի բանվորների մղած պայքարում՝ օգնելով բուրժուազիային և պետական օրգաններին՝ կազմալուծելու բանվորական շարժումը։ Այնուամենայնիվ այդ դեպքում էլ դաշնակները չեն մոռանում ձևացնել իրենց հայ բանվորի բարեկամներ։

«Դաշնակցականները շատ և շատ վատ սովորություն ունեն,— գրում է Կնունյանցը,— նրանք սիրում են իրենց միաձուլել հայ պրոլետարիատի հետ։ Եթե որևէ մեկը համարձակվում է քննադատել նրանց տակտիկան, խիստ կերպով արտահայտվել նրանց գործունեության դեմ, կամ նույնիսկ չցանկանալ նրանց հետ գործ ունենալ, նրանք իսկույն իրենց վիրավորանքը տարածում են ամբողջ հայ պրոլետարիատի վրա։ Իսկույն բարձրանում է «ազգային երկ-

պառակտությունների», «պրովոկացիայի», «կոտորածի» հարցը և այլն։ Այդ բոլորից վատ հոտ է փչում...» (նույն տեղը, էջ 419)։ Այդ վատ հոտը դաշնակների պրովոկատորական, տեռորիստական գործունեության հոտն է։ Պրոլետարիատի այդ «բարեկամները» դեմ էին դուրս գալիս պրոֆմիությունների ակտիվ գործունեությանը, նրանց ընդլայնմանն ու ամրապնդմանը, ժխտում էին պարտիայի ղեկավար դերը այդ կազմակերպության մեջ։ Քննադատելով նրանց դիրքավորումը՝ Կնունյանցը գրում է. «Անպարտիական միության քաղաքականությունը, եթե դա բանվոր դասակարգի քաղաքականությունն է, չի կարող չլինել սոցիալ-դեմոկրատական։ Դրա մեջ է սոցիալ-դեմոկրատական գաղափարների ուժը։ Սակայն դրա մեջ է դաշնակցականների և նմանների գաղափարների թուլությունը»։ Բացահայտելով դաշնակների այդպիսի դիրքավորման նպատակը, Կնունյանցն ավելացնում է, որ նրանց համար «ընդունելի չէ ինքնուրույն բանվորական քաղաքականությունը, ընդունելի չէ խորհրդակցությունը, կազմված Բաքվի ամբողջ պրոլետարիատի ընտրյալներից։ Այստեղ և միայն այստեղ է թաղված շան գլուխը» (նույն տեղը, էջ 422)։

Ներկայացնելով հայ բուրժուազիայի շահերը, տոգորված նացիոնալիզմի գաղափարախոսությամբ, դաշնակցությունը չունեցավ և չէր կարող պահպանել իր ազդեցությունը ժողովրդի, մանավանդ բանվոր դասակարգի վրա։ Նրան չհաջողվեց անջատել հայ պրոլետարիատին իր այլազգի եղբայրներից և Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժումից։ Հաղթեցին բոլշևիկները։ Դաշնակները պարտվեցին։

Բոգդան Կնունյանցը քննադատել է ո՛չ միայն հայ բուրժուազիային և նրա պարտիաների նացիոնալիզմը, այլև բուրժուական նացիոնալիզմն ընդհանրապես։ Իր հոդվածներից մեկում նա ցույց է տալիս, որ բանվոր դասակարգի դասակարգային գիտակցությունը մթագնելու համար նացիոնալիզմը բուրժուազիայի ձեռքին հանդիսանում է ամենահզոր զենքերից մեկը։

«Համաձայն պատմական տվյալ մոմենտի,—գրում է նա,—և սոցիալ քաղաքական այն մթնոլորտի, որի մեջ նա զարգանում է, նացիոնալիզմը բանվոր դասակարգի թշնամիների ձեռքում միշտ և ամենուրեք մի խնդիր ունի. բանվորական մասսաներին ներշնչել, թե «ազգային» շահերը բարձր են դասակարգային շահերից, որ միևնույն ազգի տարբեր դասակարգերի միջև կապն ու ազգակցությունն ավելի սերտ են, քան տարբեր ազգությունների պրոլետարիատի շահերի համերաշխությունը, որ «ազգային ընդհանուր թշնամու դեմ» բանվորները պետք է բուրժուազիայի հետ ընթանան ձեռք-ձեռքի» (նույն տեղը, էջ 51)։

Ինչպես նշում է հոդվածի հեղինակը, այդ հարցում բուրժուազիային օգնում է այն հանգամանքը, որ տնտեսական հակասությունները զուգորդվում են քաղաքական գործոններով և ազգերի շահերը բախվում են տարբեր ուղղություններով։ Այստեղ ազգային իրավունքների սահմանափակումն է, լեզվի, կրոնի հետապնդումը և այլ հանգամանքներ, որ կպչում են ո՛չ միայն բուրժուազիայի, այլև գյուղացիների, բանվորների շահերին, ամբողջ «ազգի» շահերին։

Բ. Կնունյանցը ցույց է տալիս, թե ինչպես բուրժուազիան և նրա նացիոնալիստական պարտիաները օգտագործում էին այդ հանգամանքը, օրինակ, 1903 թվականի հունիսի 12-ի օրենքի դեմ սկսված ժողովրդական շարժումը, հակապետական ցույցերը և այլն։



Ստոլիպինյան ռեակցիայի տարիներին իդեոլոգիայի ֆրոնտում բուրժուական հետադեմ գաղափարների, միստիցիզմի, անկումայնության հետ մեկտեղ ուժեղ կերպով պրոպագանդվում էր նաև նացիոնալիզմը իր տարբեր երանգներով։ Ռուսական բուրժուազիայի շրջանում, մասնավորապես մեծ տարածում էր գտել պանսլավիզմը։ Կադետները և բուրժուական այլ պարտիաներ աղմուկ էին բարձրացնում այն մասին, որ անհրաժեշտ է պաշտպանել սլավոն ժողովուրդների, այն է՝ չեխերի, սերբերի և Ռուսաստանից դուրս գտնվող այլ սլավոնների շահերը, թեև այդ ժողովուրդներին ոչ մի առանձին վտանգ չէր սպառնում։

Իր «Նեոսլավոնական կեղծիք» հոդվածում Կնունյանցը խոսելով այս մասին, գրում է, որ հիշյալ աղմուկը անհրաժեշտ է բուրժուազիային, որպեսզի ժողովրդի ուշադրությունը հեռացնի քաղաքական սուր հարցերից ու դասակարգային պայքարից։

Կադետները, շարունակում է հոդվածի հեղինակը, խոսում են քաղաքացիական պարտականությունների մասին ուրիշ երկրներում, երբ իրենց մոտ դրանք իրականում գոյություն չունեն։ Խոսվում է կուլտուրայի զարգացման մասին, երբ ժողովուրդների կուլտուրական զարգացումը երկրի ներսում ճնշվում է ամեն կերպ։ Այս բոլորը արվում է նրա համար, գրում է Կնունյանցը, որպեսզի «ժողովրդի ամենաակտիվ տարրերի ուշադրությունը շեղի դեպի ոչ հրատապ, արտաքին, կամ նույնիսկ ներքին կյանքի հարցերը։ Կազմակերպել հրեական ջարդ, սկսել արտաքին պատերազմ, քարոզել «պանսլավիզմ», «պանգերմանիզմ» կամ ինչ-որ նման բան—այս բոլորը վաղուց փորձված միջոցներ են»։

Տիրող դասակարգերը, այսպիսով, ցանկանում են ցույց տալ, որ ռևոլյուցիան տապալելուց հետո երկրում ամեն ինչ խաղաղվել է, և ժողովուրդը իբր պահանջում է նոր հոգեկան սնունդ՝ նացիոնալիզմ։ Իրենց հեղինակությունը բոլորովին կորցրած կադետները անմիջապես դարձան սլավոնական նացիոնալիզմի ամենաակտիվ քարոզիչներ։ Բայց այս բոլորը չեն կարող փոխել պատմության ընթացքը։ Ժողովուրդների փոխադարձ անվստահությունը չի կարող լինել հարատև, նա կոչնչանա տիրող հասարակարգի, ցարիզմի հետ։ Դրա ամենաանհրաժեշտ պայմանը պետք է լինի բոլոր ազգերի բանվորների ինտերնացիոնալ միասնությունը։

«Սոցիալ-դեմոկրատները,— գրել է Վ. Ի. Լենինը,— միշտ էլ կանգնած են եղել և կանգնած են ինտերնացիոնալիզմի տեսակետի վրա» (Երկեր, հ. 19, էջ 122)։

Պարտիայի այս քաղաքականությունը հիմք է ծառայել բոլոր լենինյանների համար նրանց պայքարի բոլոր էտապներում։

Բ. Կնունյանցն իր աշխատություններում և ճառերում բազմաթիվ անգամ անդրադառնում է այս հարցին, պայքարելով Վ. Ի. Լենինի ցուցումների անշեղ իրագործման համար։

Պարտիայի երկրորդ համագումարում իր ելույթների մեջ նա մի քանի առիթով խոսում է պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնության, նրա շահերի միատեսակության մասին։ «Բունդի տեղը պարտիայի մեջ» հարցի մասին իր ելույթներում նա քննադատում է բունդի սեպարատիզմը և սկզբունքա-

յին սխալը ազգային հարցում, ցույց տալով, որ հրեա պրոլետարիատը բոլորովին կարիք չունի յուրահատուկ, ազգային պարտիայի, որ նրա շահերը ոչնչով չեն տարբերվում ռուս, ուկրաինացի, վրացի, հայ և այլ ազգերի բանվորների շահերից: Իսկ ազգային պարտիաների կազմակերպումը կարող է միայն դժվարացնել բանվորների մեջ տարվող միասնական անհրաժեշտ աշխատանքը, ստեղծել անհամաձայնություն, թուլացնել պարտիական կազմակերպությունները:

Ելնելով Կովկասի ինտերնացիոնալ կազմակերպությունների փորձից, Կնունյանցը նշում է. «Ես հաճույքով եմ ընդգծում այն փաստը, որ մեզանում միանգամայն բացակայում է կազմակերպական սեպարատիզմը, որ վերջին ժամանակներս այնքան ուժեղ է արտահայտվում բունդի մեջ: Մեր քաղաքներից յուրաքանչյուրում գոյություն ունեն պարտիական կոմիտեներ, որոնք գործում են մի քանի լեզուներով, մինչև այժմ միայն երեք (ռուսերեն, վրացերեն և հայերեն), իսկ եթե հարկ լինի նաև չորս լեզվով (նաև թաթարերեն): Եվ չնայած դրան, մինչև այժմ դրանից ոչ մի անհարմարություն առաջ չի եկել և շարժման հաջողությունը Կովկասում չի թուլացել: Ըստ իս, ներկայումս բունդում տիրապետող տենդենցը սոցիալիզմի հետ ոչ մի ընդհանուր բան չունի» (Б. М. Кнунянц, Избранные произведения, էջ 17):

Կնունյանցի կարծիքով հրեա բանվորները հաջողությամբ կարող են պայքարել «բացառիկ օրենքների» դեմ, եթե միանան մյուս ազգերի բանվորների հետ: Փոխադարձ օգնությունն անհրաժեշտություն է պրոլետարիատի դասակարգային պայքարի համար:

Այնուհետև նա համագումարում պաշտպանում է տերիտորիալ-ինտերնացիոնալ պարտիական կազմակերպությունների ստեղծման լենինյան գաղափարը և պահանջում, որ Կովկասյան Միութենական Կոմիտեն ճանաչվի որպես այդպիսին, որը և հետագայում ընդունվում է համագումարի կողմից: Այս հարցի հետ կապված, Կնունյանցն առաջարկում է պարտիական լրագրերը միավորել, ստեղծելու համար մի ուժեղ օրգան, թողնելով միայն ազգային լեզուներով լույս տեսնող թերթերը: Բ. Կնունյանցը պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբման վճռական ուժը համարում է ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի առկայությունը: Միայն պարտիան է ի վիճակի ղեկավարել պրոլետարիատի միասնական պայքարը, նրա ինտերնացիոնալ դաստիարակությունը և պահպանել նրա շարքերը ամեն տեսակի վնասակար, մասնավորապես նացիոնալիստական գաղափարների վարակից:

Այս հարցին վերաբերող իր հոդվածներից մեկը Կնունյանցը վերջացնում է հետևյալ խոսքերով. «Ռուսաստանի պրոլետարիատը միայն կազմակերպվելով միասնական, լիովին ինքնուրույն պարտիայի մեջ, առանց ազգային տարբերությունների, կարող է հանդիսանալ այն զորեղ ուժը, որ ընդունակ կլինի դառնալու երկրի բոլոր ռևոլյուցիոն ուժերի իսկական ավանգարդը և ի վերջո կխորտակի միապետությունը» (նույն տեղը, էջ 56):

1905 թվականի մարտին դատարանում արտասանած իր հայտնի ճառում, «Ով է մեղավոր», «Կազմակերպվեցեք» և այլ թռուցիկներում ու բրոշյուրներում Բոգդան Կնունյանցը խոսում է պրոլետարիատի ինտերնացիոնալ միավորման մասին համաշխարհային մասշտաբով:

Միջազգային պրոլետարիատի շահերի միասնությունը, ասում է նա, ճանգեցնում է բոլոր երկրների սոցիալ-դեմոկրատական պարտիաների ծրագրի



և տակտիկայի միասնությանը, որ հիմնված են միևնույն գաղափարախոսության՝ մարքսիզմի վրա:

Վերոհիշյալ ճառում, պատասխանելով դատախազին, որը նրա հակապետական գործունեությունը կապում է նրա հայկական ծագման հետ, Կնունյանցն ասում է, «որ մեզ, սոցիալ-դեմոկրատներիս համար ազգային տարբերությունները ոչ մի դեր չեն խաղում, որ մենք մեր ձգտումներում ելնում ենք ոչ թե այս կամ այն ազգային մոտիվներից, այլ պրոլետարիատի ճիշտ հասկացված շահերից, որոնք մեր համոզմունքով միասնական են ամբողջ աշխարհի պրոլետարիատի համար» (նույն տեղը, էջ 83): Այս տեսակետից բնորոշ և հետաքրքրական է նրա «Նոր ինտերնացիոնալի VII կոնգրեսը» հոդվածը, որը պատմում է II Ինտերնացիոնալի Շտուտգարդի կոնգրեսի և այն ընդհանուր տակտիկական հարցերի մասին, որոնք բխում են պրոլետարիատի դասակարգային պայքարի պայմաններից իմպերիալիզմի ժամանակաշրջանում (պատերազմի վտանգի, գաղութային քաղաքականության և այլ միջազգային խնդիրներ):

Քննադատելով աջ սոցիալիստներին, նրանց սոցիալ-պատրիոտիզմը, բուրժուական հայրենիքի պաշտպանության նրանց ձգտումը, մյուս կողմից Էրվեյի նման անարխիստների ապատրիոտիզմը, Բ. Կնունյանցը ելնելով Մարքսի—Լենինի դրույթներից՝ գրում է, որ կապիտալիզմի պայմաններում պրոլետարիատը հայրենիք չունի: Բայց եթե տվյալ երկրի բանվոր դասակարգը տեսնում է, որ վտանգ է սպառնում ո՛չ միայն բուրժուական հայրենիքին, այլև իր շահերին, նա չի կարող մնալ անտարբեր:

«Միայն այն դեպքում,— շարունակում է Կնունյանցը,— երբ մենք կտեսնենք, որ ազգային կյանքը ենթարկվում է այնպիսի վտանգի, որը լուրջ կերպով կարող է անդրադառնալ պրոլետարիատի շահերի վրա, մենք ելնում ենք հանուն «հայրենիքի» պաշտպանության: Բայց և այս դեպքում մենք շարունակում ենք մնալ, որպես «լավ» սոցիալ-դեմոկրատներ և ոչ մի վայրկյան անգամ չենք խառնվում նացիոնալիստների հետ» (նույն տեղը, էջ 408):

Ահա այսպիսին են Բ. Կնունյանցի այնքան ճիշտ ըմբռնված մտքերը պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնության և հայրենիքի հանդեպ բանվոր դասակարգի ունենալիք դիրքի մասին:

Բ. Կնունյանցը սկզբից մինչև վերջ պաշտպանել է ազգային հարցի լենինյան լուծումը, մասնակցելով պարտիայի ծրագրի քննարկմանը և ընդունմանը:

Բոգդան Կնունյանցն ապրեց, պայքարեց և ընկավ որպես պրոլետարիատի հարազատ զավակը, նրա շարքերի, նրա պարտիայի ինտերնացիոնալ միասնության համար մղված պայքարի ակտիվ մարտիկը: Որպես այդպիսին, լենինյան ազգային քաղաքականության տարածման և իրագործման գործում նա մտցրեց իր լուման, ամբողջ կյանքով իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստի և այդ գաղափարների ակտիվ պրոպագանդիստի օրինակ ծառայելով:

# ՄԵԾ ՎԻՊԱՍԱՆՆ ՈՒ ԴՐԱՄԱՏՈՒՐԳԸ

(Ալ. Շիրվանզադեի ծննդյան 100-ամյակի առթիվ)

*Գ. ՍԱՐԳՍՅԱՆ*

Լրացավ հայ դասական գրականության խոշորագույն վարպետներից մեկի՝ ականավոր վիպասան ու դրամատուրգ Ալեքսանդր Շիրվանզադեի ծննդյան հարյուրամյակը։ Այդ տարելիցը ջերմ սիրով ու երախտագիտությամբ են նշում մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդները, որոնց կողմից ճանաչված ու գնահատված կլասիկների շարքում իր պատվավոր տեղն ունի նա որպես մեծ ռեալիստ ու բուրժուական իրականության անողոք քննադատ։

Շիրվանզադեն պատկանում է անցյալի այն խոշոր արվեստագետների թվին, որոնց ստեղծագործությունն ունի պատմա-ճանաչողական, էսթետիկական բարձր արժեք։ Կյանքի շունչ և մարդկային սրտի ջերմ բաբախում կա նրա գեղարվեստական երկերում, որոնցից հոգևոր առատ սնունդ են քաղել ո՛չ միայն ժամանակակիցները, այլև, մանավանդ, հետնորդ սերունդները։ Այդ երկերը օգնել են ժողովրդին պայքարելու սոցիալական ու ազգային ճնշման դեմ և մեծապես նպաստելու նրա կուլտուրական առաջընթացին։ Իր ստեղծագործությամբ անվանի գրողը նոր ավանդ մուծեց մեր գրականության հարուստ գանձարանը, խոր հետք թողնելով նրա բոլոր ոլորտներում։

## 1

Հատկանշական է, որ այն ժամանակ, երբ արևմտաեվրոպական գրականության մեջ ռեալիզմն ապրում էր վայրէջք, և մոդայական էին դառնում հակաժողովրդական, անկումային գրական ուղղությունները (նատուրալիզմ, սիմվոլիզմ, ֆորմալիզմ և այլն), Շիրվանզադեն և նրա երախտավոր գրչակիցները ապահովեցին ռեալիզմի հաղթանակը մեզանում։ Գրական-պատմական մի խոշոր առաջընթաց էր այդ, որ տեղի ունեցավ շնորհիվ ռուս գրականության բարերար ազդեցության։

Յուրացնելով նախընթաց շրջանի հայ գրականության լավագույն տրադիցիաները և օգտագործելով խոշոր ռուս վարպետների ստեղծագործական փորձը՝ Շիրվանզադեն պատմա-հասարակական կյանքի նոր պայմաններում շարունակեց ու առաջ տարավ ռեալիստական արվեստը, որն իր էությամբ քննադատական էր ու մերկացնող։ Նրա ուշադրության առանցքը դարձավ արդի կյանքն իր բազմապիսի երևույթներով, որոնց համարձակ գեղարվեստական բնութագրությամբ նա բացահայտեց կապիտալիստական աշխարհի խոցերն ու հակասությունները, այդ աշխարհի սոցիալական տարբեր խավերի պատկանող մարդկանց կենսահայեցողությունը, նրանց բնավորության ու հո-



գեբանության գծերը։ Շիրվանզադեի երկերում բացառիկ խորությամբ արտացոլվեցին հայ բուրժուազիայի ծագման, զարգացման ու անկման պրոցեսները և դրանցով պայմանավորված փոփոխությունները հասարակական գիտակցության մեջ։ Մեծ ռեալիստի խորաթափանցությամբ նա պատկերեց բուրժուական հասարակարգի գիշատիչ էությունը, նրա էգոիստական բարոյախոսությունն ու սեփականատիրական մոլուցքը, որ հիմն ի վեր խորտակում էր նահապետական կյանքը։

Այդ թեմայի գեղարվեստական բացահայտման առումով հետաքրքրական է թեկուզ «Գործակատարի հիշատակարանից» վիպակը, որը լինելով Շիրվանզադեի վաղ շրջանի գործերից, միաժամանակ դրսևորում է ծավալուն կտավների անցնելու նրա կարողությունը։ Այստեղ, գավառական կյանքի ֆոնի վրա հեղինակը նկարագրել է առևտրա-վաշխառուական բուրժուազիայի նողկալի պրակտիկան և ցուցադրել հարստանալու մոլուցքով տարված նրա ներկայացուցիչների միջև ծավալվող մրցակցությունը։ Տասնյոթամյա Խաչին ընկնելով Գուլամյանցների «մագազինը»՝ յուրացնում է իր շրջապատի այլանդակ բարքերը և հետևելով մանրավաճառ Թորոսի խորհուրդներին՝ խարդախությամբ ու խաբեությամբ հարթում իր վերելքի ճանապարհը։ Ժամանակի ընթացքում նա ձեռք է բերում իր տերերի հարստությունն ու գեղեցիկ աղջկան և դառնում նրանցից ավելի գիշատիչ ու հզոր մի դրամատեր։ Հեղինակը ճիշտ է նկատել, որ վաճառականության միջավայրում ազնիվ մարդ չի կարող լինել. «Վաճառականությունը մի այնպիսի գործ է, որ ինքը սովորեցնում է սիրողին փող աշխատելու հնարը»,— ասում է նույն Թորոսը, որի համոզմամբ խաբեբայությունը սրբագործված օրենք է այդ կյանքում։

Ճիշտ է, առևտրա-վաշխառուական բուրժուազիայի մերկացման թեման նորություն չէր հայ գրականության մեջ, մանավանդ, եթե նկատի ունենանք Սունդուկյանի և Րաֆֆու որոշ երկերը, բայց տվյալ դեպքում կարևորն այն է, որ շարունակելով իր նախորդների քննադատական վերաբերմունքը՝ Շիրվանզադեն ցուցադրում է կապիտալի կուտակման «հերոսների» բնությունը և նրանց զարգացման ուղին՝ գավառից մինչև արդյունաբերական կենտրոն։ Նա մերկացնում է բարեգործությամբ քողարկված բուրժուական կեղծիքն ու շահամոլությունը, ինչպես և գավառական հետամնացությունը, որոնց զոհն են դառնում ազնիվ մարդիկ։ Պատահական չէ, որ իր ստեղծագործական կյանքի առաջին շրջանում Շիրվանզադեն հաճախ է անդրադառնում գավառական կյանքին։ Նրան խոր ցավ է պատճառում այն հանգամանքը, որ հինավուրց սովորություններն ու նախապաշարումները կաշկանդում են մարդու անհատականությունը և ի վերջո հասցնում կործանման։

Դրա գեղարվեստական ցայտուն արտահայտություններից է հանրածանոթ «Նամուս» վեպը (1885 թ.), որով հեղինակը հռչակվեց իբրև տաղանդավոր վիպասան։ Այստեղ, ինչպես և մի փոքր ուշ գրված «Ֆաթման և Ասադը» և «Ցավագարը» երկերում Շիրվանզադեն հումանիզմի և հասարակական պրոգրեսի դիրքերից սուր քննադատության է ենթարկում իրենց դարն ապրած նահապետական բարքերն ու հասկացողությունները։ Հենվելով իր մանկապատանեկան տարիների հարուստ տպավորությունների ու հիշողությունների վրա՝ նա անմոռաց գույներով վերակենդանացրել է գավառական մռայլ իրականությունը, որը լի է տրագիզմով։ Այդ երկերում Շիրվանզադեն անողոքաբար դատապարտում է տիրող «խավարի թագավորությունը»։

*Մեծ է այդ երկերի պատմա-ճանաչողական ու գեղարվեստական արժեքը. հեղինակը կարողացել է ստեղծել մի ամբողջ շարք ռեալիստական ցայտուն կերպարներ, որոնք ազգային կոլորիտով հանդերձ մոտ ու հարազատ են նաև մյուս ժողովուրդներին: Դրանց մեջ բացահայտված են կյանքի այնպիսի կողմեր, խառնվածքի ու հոգեբանության այնպիսի նրբերանգներ, որոնցով այդ կերպարները ձեռք են բերում համամարդկային նշանակություն: Ահա թե ինչու Սուսանի և Սեյրանի սիրո ողբերգությունը նույնքան հասկանալի է ադրբեջանցիներին, որքան Ֆաթմայի ու Ասադի պոետիկ սիրո սրտառուչ երգը՝ հայերին:*

*Լինելով խորապես ազգային գրող՝ Շիրվանզադեն իր ստեղծագործության հարուստ բովանդակությամբ բարձրանում է մինչև համամարդկության աստիճանը: Նրա երկերում առաջ են քաշված սոցիալական կյանքի այնպիսի կարևոր հարցեր, որոնց գեղարվեստական մեկնաբանությունը, մանավանդ այն ժամանակ, ուներ հասարակական լուրջ նշանակություն: Այս ևս անվանի գրողի ստեղծագործական մեծության փայլուն ցուցանիշներից է. նա կարողացել է խորամուխ լինել արդիականության մեջ և բացահայտել կյանքի այնպիսի երևույթներ ու տենդենցներ, որոնք դուրս գալով տեղական շրջանակից, ձեռք են բերում լայն, ընդհանուր նշանակություն:*

*Այդ վերաբերում է Շիրվանզադեի ո՛չ միայն գավառական կյանքը պատկերող գործերին, այլև նրա այն երկերին, որոնց թեման կազմում են հատկապես ընտանիքն ու ինտելիգենցիան: Ինչպես միշտ, այս դեպքում ևս հեղինակը քննադատական ռեալիզմի դիրքերից անողոքաբար մերկացրել է մերկ շահի վրա խարսխված բուրժուական ընտանիքի այլանդակությունները և ցուցադրել բուրժուական մտավորականության խոսքի ու գործի աղաղակող հակասությունները: Հիշենք «Արամբին», «Մելանիա», «Արսեն Դիմաքսյան», «Կրակ» և ուրիշ գործեր, որոնք վերակենդանացնում են մեր անցյալ կյանքի մի ամբողջ պատմաշրջան: Դրանց մեջ հեղինակը յուրահատուկ ձևով բացահայտել է իրականության հակասությունները, մարդկային փոխհարաբերություններում տիրող կեղծիքն ու շահամոլությունը և այլն:*

*Շիրվանզադեին առանձնապես շատ է զբաղեցրել բուրժուական ընտանիքի թեման, որի պատկերումը տրված է սոցիալական խոր պատճառաբանվածությամբ: Հեղինակը կենսական փաստերի գեղարվեստական ընդհանրացմամբ հաստատում է այն ճշմարտությունը, որ բուրժուական ընտանիքը կառուցված է «կեղծիքի, ստի ու խաբեբայության վրա», որ այնտեղ չկա սեր ու համերաշխություն: «Կինը ստրուկ է, մարդը՝ ստրկատեր»,— ահա բուրժուական մտածողությունը, որի դեմ օբյեկտիվորեն ծառանում է ռեալիստ արվեստագետը և ցույց տալիս, որ այն պայմանավորված է կնոջ և տղամարդու նյութական ու իրավական անհավասար վիճակով: Կինը ստրուկ է դեռևս հոր տանը՝ աղջիկ ժամանակ (Սուսան, Սոնա), երբ նրա բախտը տնօրինում են ծնողները: Նրա վիճակը ավելի է բարդանում, երբ, Հերսիլեի խոսքերով ասած՝ «մի կտոր հացի» համար բռնի ամուսնացնում ու նետում են «գեհենի մեջ»: Այս դեպքում արդեն ամուսինն է հանդես գալիս իբրև տեր, դառնալով մի կատարյալ բռնակալ, որն ինչպես ցանկանում, այնպես էլ վարվում է իր «զոհի» հետ: Ուստի միանգամայն հասկանալի է, թե ինչու Շիրվանզադեի երկերում կարևոր տեղ է գրավում կնոջ ազատագրման հարցը. հոգեբանական խոր վերլուծություններով նա ցույց է տալիս կնոջ ո՛չ միայն անմխիթար կացու-*



*թյունը, այլև նրա համառ ջանքերը ինքնուրույնության ու անհատական երջանկության հասնելու համար: Այդպիսի կանանցից է, օրինակ, «Ունե՞ր իրավունք» դրամայի հերոսուհի Հերսիլեն, որը չհաշտվելով իր ծանր վիճակի հետ՝ թողնում է ամուսնու հարկը և փախչում բուրժուական նվաստացուցիչ միջավայրից: Դա ինքնին մի համարձակ քայլ է, որը կատարում է նաև Վարվառան («Արամբին»), ըմբոստանալով տիրող դաժան օրենքների ու բարքերի դեմ: Սակայն ամբողջ խնդիրն այն է, որ դրանից հետո, ինչպես համոզիչ կերպով ցույց է տալիս հեղինակը, կնոջ դրությունն է՛լ ավելի է ծանրանում: Նա չի կարող նոր կյանք սկսել, որովհետև տիրող մտայնության համաձայն, ամուսնացած կինը օրենքով կապված է ամուսնու հետ, ուստի և հասարակական կարծիքի ճնշման տակ նա վերջիվերջո կործանվում է:*

*Պաշտպանելով կնոջ մարդկային իրավունքները, նրա անհատական ինքնուրույնության ձգտումը՝ արվեստագետ Շիրվանզադեն խստորեն քննադատել է նաև բուրժուական բարոյախոսությունը, որի կրողն ու արտահայտիչն է ինտելիգենցիան: Պատահական չէ, որ նա բուրժուական մտավորականներին բնութագրել է որպես «կրթված բարբարոսներ», որոնք անձնական շահի համար պատրաստ են դիմելու ամեն տեսակ ստոր գործարքների: Այդպիսի «կուլտուրական վայրենիներից» են՝ հարուստ կանանց «հանցանքները» անհետևանք դարձնող բժիշկ Մելիք-Բարսեղյանը («Ջուր հույսեր»), արկածախնդիր իրավաբան Վեքիլյանը, գաղափարազուրկ Բարաթյանը («Արսեն Դիմաքսյան»), այլասերված ուսանող Ջարիֆյանը («Կրակ») և, վերջապես, մարդկային կյանքը աճուրդի հանող Սմբատ Ալիմյանը և իր ժամանակի «հզոր ֆինանսական սյուն» դարձող Բագրատ Էլիզբարյանը, որոնց միջոցով հեղինակը մերկացրել է բուրժուական ինտելիգենցիայի հասարակական վարքագիծն ու հոգե-բարոյական սնանկությունը: Խոր համոզչականությամբ նա ցույց է տվել, որ այդ ինտելիգենցիան իր մեջ մարմնավորում է բուրժուական միջավայրին բնորոշ բոլոր արատները և ըստ էության դարձել է հակաժողովրդական ուժ:*

*Մեզանում ոչ ոք այնպես բազմակողմանիորեն չի պատկերել ինտելիգենցիայի վիճակը կապիտալիզմի պայմաններում, ինչպես Շիրվանզադեն: Այդ հատկապես այն պատճառով, որ նա հասարակական վերանորոգումների գործում միամտաբար մեծ դեր էր վերապահում բարոյապես զորեղ ու գիտակից անհատներին, որոնք, հեղինակի խոսքերով ասած՝ կոչված են «այդ վերանորոգությունը իրենց ուսերի վրա պահել»: Այս հանգամանքը որոշ իմաստով ռոմանտիկական երանգ է մտցրել նրա առանձին ստեղծագործությունների մեջ, ուր պատկերելով բարոյական արատներից զերծ, ազնիվ ու անձնազոհ անհատների՝ Շիրվանզադեն փորձել է նրանց միջոցով բարեփոխել հասարակությունը, որը, իհարկե, անկարելի է: Հենց ինքն իսկ ռեալիստական մերկացումներով ծառայել է այդ կեղծ մտայնության դեմ և օբյեկտիվորեն հանգել տիրող իրականության բացասմանը:*

*Այդ իմաստով խիստ նշանակալից է «Քաոս» վեպը, որ հանդիսանում է ո՛չ միայն հեղինակի գլուխգործոցը, այլև հայ ռեալիստական վիպագրության բարձրակետը: Այդ երկում արտասովոր լայնությամբ ու խորությամբ բացահայտված է կապիտալիզմի տնտեսական ու հոգևոր նեխման պրոցեսը, բուրժուական աշխարհի քաոսը, որի խտացված արտահայտությունն է Ալիմյանների ընտանիքը: Հեղինակը կարողացել է ստեղծել այնպիսի հետաքրքիր վի-*

*պական սյուժե, որն ինքնին տիպական է տիրող իրականության համար և արտացոլում է տվյալ հասարակարգի աղաղակող հակասությունները, փողի կործանարար իշխանությունը, տիրող դասակարգի շահամոլությունն ու անբարոյականությունը: Դեպքերի ծավալման ընթացքում հրապարակ են գալիս քաղաքային բնակչության տարբեր խավի, սեռի ու սերնդի պատկանող բազմաթիվ ներկայացուցիչներ, որոնց փոխհարաբերությունների ու գործողությունների ճշմարտացի պատկերմամբ Շիրվանզադեն տվել է բուրժուական հասարակարգի սպառիչ նկարագիրը: Մեր մտադաշտից անցնում են կապիտալիստներ, բանվորներ, ինժեներներ, հոգևորականներ, բժիշկներ, տարբեր ազգի ու պրոֆեսիայի տեր զանազան մարդիկ, որոնք իրենց վարքագծով ու հոգեբանությամբ դրսևորում են շրջապատող կյանքի գիշատիչ էությունը, նրա գահավեժ անկումը:*

*Ապականված բուրժուական շրջապատին Շիրվանզադեն հակադրել է աշխատանքի մարդկանց ազնվությունն ու հոգու գեղեցկությունը, նրանց արհամարհանքն ու ատելությունը տերերի հանդեպ: Այդ տեսակետից ուշագրավ է վեպի այն հատվածը, ուր նկարագրված է, թե ինչպես անառակ խրախճանքից լուսաբացին վերադարձող պարազիտ մեծատունների խմբին «գործավորները» նայում են արհամարհանքով. «Հարստահարվածի ու ընկճվածի անզոր կատաղության հետ նրանց գունատ ու վտիտ դեմքերն արտահայտում են մի տեսակ արհամարհանք, ազնիվ աշխատանքի արհամարհանքը, դեպի ծրիակերությունը»,— գրում է հեղինակը:*

*Դատապարտելով պարազիտային ու ցոփ կյանքը՝ Շիրվանզադեն այս և ուրիշ երկերում նուրբ մանրամասներով բացահայտել է ստեղծարար աշխատանքի վեհությունը, աշխատավոր մարդկանց բարձր արժանապատվությունն ու հոգու ռոմանտիկան: Ժողովրդական խառնվածքի գեղեցկությամբ են օժտված եղբայրական սիրով իրար հետ կապված Կարապետը, Զուբրովը և Ռասուլը, Լևոնը և նրա ընկերները՝ բանաստեղծ Զաուշենկոն ու գրավաճառ Մարգուլիսը («Արտիստը»), որոնց միջոցով հեղինակն արտահայտել է անսահման սեր դեպի տարբեր ազգերի պատկանող բախտակից երիտասարդները: Կյանքից մերժված այդ մարդկանց տիպականացմամբ Շիրվանզադեն դրսևորել է իր ռեալիստական արվեստի ժողովրդայնությունը:*

## 2

*Շիրվանզադեի ստեղծագործական նորարարությունը արտահայտվել է ո՛չ միայն հայ գեղարվեստական արձակի, այլև դրամատուրգիայի ասպարեզում:*

*Սունդուկյանից հետո նա մեր ամենախոշոր դրամատուրգն է, որը նոր էտապ նշանավորեց մեր թատերգության զարգացման պատմության մեջ: Նրա անվան հետ է կապված գրական լեզվով սկզբնավորված հայ ռեալիստական դրամատուրգիան, որն այնուհետև դարձավ ուրիշ հեղինակների զարգացման ճանապարհը: Բացի այդ, նա մեծապես ընդլայնեց դրամատուրգիայի թեմատիկայի շրջանակները, մի կողմից խորացնելով բուրժուազիայի նեխման ու վերջնական անկման նկարագիրը, մյուս կողմից՝ առաջ քաշելով այնպիսի նոր խնդիրներ, որոնք մինչ այդ համարյա չէին շոշափվել տվյալ ժանրի սահմաններում: Այսպես, օրինակ, արդյունաբերական կապիտալի մերկացումը, բուրժուական ազգայնական գաղափարախոսության քննադատությունը և այլն,*



*առաջին անգամ իրենց բարձրորակ գեղարվեստական արտացոլումը գտան Շիրվանզադեի դրամատուրգիայում:*

*Սոցիալ-քաղաքական սուր կոնֆլիկտների վրա կառուցած իր պիեսներով նա առաջ մղեց հայ ռեալիստական թատրոնն ու դրամատուրգիան և այդ ասպարեզում ևս ստեղծեց իր սեփական արվեստը, որը կյանքի կոչեց դերասանական նոր և թարմ ուժերի: Շիրվանզադեի կերտած տիպերի բեմական մարմնավորմամբ դաստիարակվել են բազմաթիվ դերասաններ:*

*Ճիշտ է, Շիրվանզադեի դրամատուրգիական գրիչը բուռն թափ ստացավ հատկապես ընթացիկ դարասկզբին, երբ մեկը մյուսի հետևից նա հրապարակ հանեց «Եվգինե», «Ունե՞ր իրավունք», «Պատվի համար» և այլ գործեր, բայց պետք է նկատել, որ նախքան դրամատուրգ դառնալը՝ անվանի գրողը շատ մոտ էր կանգնած թատրոնին:*

*Խորապես գիտակցելով թատրոնի հասարակական-դաստիարակչական դերը՝ Շիրվանզադեն իր գործունեության սկզբից ևեթ բուռն հետաքրքրություն է ցուցաբերել դեպի թատերական արվեստը և սերտ կապ պահպանել թատրոնի և դերասանների հետ:*

*Որպես դրամատուրգ Շիրվանզադեն առաջին անգամ հանդես եկավ 1891 թվականին, երբ երեսունհինգ տարեկան հեղինակը բեմ հանեց «Իշխանուհի» խորագրով դրաման, որն ակնհայտ թերությունների պատճառով «տապալվեց» և առիթ դարձավ սուր հարձակումների:*

*Այդ է պատճառը, որ «Իշխանուհի» դրամայից հետո Շիրվանզադեն երկար ժամանակ պիես չգրեց. շուրջ մի տասնամյակի ընթացքում բեմական արվեստը ավելի խոր ուսումնասիրելուց հետո միայն նա վերսկսեց իր դրամատուրգիական գործունեությունը, որն այս անգամ պսակվեց լիակատար հաջողությամբ: 1901 թվականին նա հանդես եկավ «Եվգինե» դրամայով, որին անմիջապես հաջորդեց «Ունե՞ր իրավունք»-ը: Դրանց մեջ ևս հեղինակը ղարվեստորեն ցուցադրում է բուրժուական ընտանիքի բարոյական անկումը, կնոջ ստրկական վիճակը սեփականատիրական հասարակության պայմաններում, ուր ամեն քայլափոխում ոտնահարվում է նրա մարդկային արժանապատվությունը: Չնայած իր աշխարհայացքի ակնհայտ սահմանափակության, որ դրսևորվել է առանձին կերպարների վարքագիծն ու հոգեբանությունը ներկայացնելու մեջ և, մանավանդ, «Եվգինե»-ի վերջում, հեղինակը կարողացել է բացահայտել կնոջ ներքնաշխարհում կուտակված բողոքն ու ցասումն ընդդեմ այն հասարակարգի, որտեղ շղթայված է կնոջ անհատականությունը և նա դատապարտված է հավիտենական ստրկության:*

*Բուրժուական իրականության նկատմամբ Շիրվանզադեի ռեալիստական արվեստի մերկացնող ուժը առավել ցայտունությամբ դրսևորվել է «Պատվի համար» դրամայում, որը նրա այդ ժանրի երկերի պսակն է և միաժամանակ մեր ազգային դրամատուրգիայի հոյակապ գործերից մեկը:*

*Ռուսական առաջին ռևոլյուցիայի նախօրյակին (1904 թ.) գրված այդ պիեսը համարձակորեն պատռում է խոշոր բուրժուազիայի դիմակը և օգնում ժողովրդին՝ ճանաչելու իր իսկական թշնամիներին՝ արյան ու կողոպուտի ապետներին: Ղեկավարվելով «մարդը մարդուն գայլ է» սկզբունքով՝ գիշատիչների այդ ոհմակը պատրաստ էր ոտնահարելու ամեն մի ազնիվ զգացում, կանգ չառնելով նույնիսկ հարազատների դիակի առաջ, եթե այն պահանջում էր մերկ շահը: Ինչպես «Քաոս»-ում, այնպես էլ այստեղ հեղինակը*

բացառիկ ուժով վերարտադրել է կապիտալիստական հասարակարգի սոցիա-
լական հակասությունները, միլիոններ կուտակելու կեղտոտ ուղիները, որոնք
անհերքելիորեն ցույց են տալիս այդ հասարակարգի բարոյական քայքայման
ու լիակատար այլասերման պրոցեսը։ Դրա լավագույն արտահայտությունն է
հենց էլիզբարյանների ընտանիքը, որի գեղարվեստական բնութագրմամբ հա-
մոզիչ կերպով բացահայտված է բուրժուական կյանքի ու գործունեության
հրեշավոր բնույթը։ Զեխ ու ցոփ կյանք, խաբեբայություն, հարստահարու-
թյուն, թալան, արհամարհանք մարդու նկատմամբ, էգոիստական կրքերի
բուռն բախումներ, արյունակցական ու ազգակցական կապերի ոտնահա-
րում,— ահա թե ինչով է բնութագրվում միլիոնատիրոջ ընտանիքը, որի ան-
դամների ու մերձավորների ցայտուն տիպականացմամբ հեղինակը ամբող-
ջացրել է բուրժուական միջավայրի նկարագիրը։

Սոցիալական հարուստ բովանդակություն ունեցող այս պիեսը, որ աչքի
է ընկնում դինամիկ գործողություններով, տիպական հանգամանքներում
կերտված տիպական խարակտերներով ու հոգեբանական նուրբ վերլուծում-
ներով, հայ քննադատական ռեալիզմի խոշորագույն նվաճումներից է և իրա-
վամբ լայն ժողովրդականություն է վայելում։ Այն թարգմանված է մի շարք
լեզուներով և ջերմ ընդունելություն է գտել նաև մեր երկրից դուրս։ Ավելաց-
նենք և այն, որ նշված կերպարների բեմական մարմնավորման վրա աշխա-
տել են դերասանական մի քանի սերունդներ, որոնց համար ստեղծագործա-
կան վարպետության հիանալի դպրոց է եղել Շիրվանզադեի դրամատուրգիան
առհասարակ։

Հարկ է նշել, սակայն, որ մեծանուն գրողի ստեղծագործական կյանքն
ընթացել է ոչ թե ուղղագիծ, այլ գաղափարական-գեղարվեստական բարդ
ելևէջներով։ Իր գրական գործունեության հետագա տարիներին Շիրվանզադեն
ապրեց գաղափարական լուրջ հակասություններ, որոնք ավելի խորացան
ռուսական առաջին ռևոլյուցիային հաջորդած ռեակցիայի տարիներին։ Չըմ-
բռնելով ռևոլյուցիայի էությունը՝ 1905 թվականին նա հեռացավ հայրենի
հողից և ապրեց արտասահմանում, ուր և շրջապատող բուրժուական ինտե-
լիգենցիայի ազդեցությամբ որոշակիորեն դրսևորեց լիբերալ պատրանքներ։
Այդ են վկայում Փարիզում գրած «Ավերակների վրա», «Շառլատանը», «Կոր-
ծանվածը» և ուրիշ երկեր, որոնց մեջ հեղինակը ո՛չ միայն չկարողացավ
շարունակել քննադատական ռեալիզմի իր վաղեմի գիծը, այլև կորցրեց գա-
լիքի հեռանկարը՝ անզոր եղավ ըմբռնելու իրականության զարգացման տեն-
դենցները։ Ավելին, նա նույնիսկ անիմաստ էր համարում ցարիզմի դեմ ոտ-
քի ելած ուժերի պայքարը, ուստի և Արտաշեսին ու նրա ընկերներին ներկա-
յացրեց որպես կործանվածներ, իսկ մյուս կողմից՝ խորտակվող հասարա-
կարգի փլատակների վրա փորձեց բարձրացնել արդյունաբերական կապիտալի
գրական ներկայացուցչի՝ Արամազդի մտացածին կերպարը, որին իբր թե
պատկանում է ապագան։ Ի դեպ, խիստ բնորոշ է, որ «Կործանվածը» ժամա-
նակին այնքան ջերմ գրվատանքի արժանացավ բուրժուական մամուլի ու
քննադատության կողմից։

Շիրվանզադեի այս շրջանի երկերում արծարծվող գաղափարները, ինչ-
պես ճիշտ կերպով նկատել է Ս. Սպանդարյանը, «դուրս չեն գալիս ամենա-
սովորական մեշչանական լիբերալիզմի սահմաններից»։ Դրանով էլ պետք է
բացատրել նրա մի շարք ստեղծագործությունների, այդ թվում և նշված դրա-



մանների գեղարվեստական թերությունները։ Դրանց մեջ բավականին ուժեղ է
քարոզչությունը և ընդհակառակը՝ թույլ է գործողությունը, երբեմն կեղծ են
դրամատիկ բախումները և դրանցով պայմանավորված տիպերի փոխհարա-
բերությունները։

Սակայն արտասահմանից վերադառնալուց հետո Շիրվանզադեն 1911—
1912 թթ. դրամայի վերածեց «Նամուս» և «Ցավագար» («Չար ոգի») երկերը։
Դրանցով նա աշխուժություն հաղորդեց հայ դրամատուրգիային՝ վերականգ-
նելով իր ռեալիստական արվեստի լավագույն տրադիցիաները, որոնք այն-
քան արգասավոր եղան մեր թատրոնի համար։

Այս և հետագա տարիները անվանի գրողի ստեղծագործական կյանքում
նշանավորվեցին մի շարք նոր երկերով, որոնք ցույց են տալիս հեղինակի
խոր հետաքրքրությունը դեպի իր ժամանակի հասարակական-քաղաքական
իրադարձությունները։ Այդ վերաբերում է մանավանդ այն երկերին, որոնք
գրված են առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ հայ ժո-
ղովուրդն ապրում էր աննախընթաց ողբերգություն։

Մեր ժողովրդի կրած այդ մեծ աղետն իր գեղարվեստական արձագանքը
գտավ Շիրվանզադեի դրամատուրգիայում ևս։ 1915—1916 թթ. նա գրեց
«Արհավիրքի օրերին» դրաման, ուր պատկերելով թուրքական բարբարոսների
դաժան լծի տակ տառապող իր հայրենակիցների ծանր դրությունը՝ նա մեր-
կացրեց հայ նացիոնալիստների ու նրանց իմպերիալիստական տերերի ժո-
ղովրդասպան քաղաքականությունը։ Դրամայում միաժամանակ ցույց է տըր-
ված բազմատանջ ժողովրդի անսասան հավատը դեպի մեծ ու հզոր Ռուսաս-
տանը, որի հետ կապելով իրենց փրկության հույսը՝ պապենական հողերից
տեղահան արված և յաթաղանից մի կերպ ազատված հայերը շարժվում են
դեպի հյուսիս...

Լավատեսական այդ հայացքը, որ նոր երանգ է մտցնում Շիրվանզադեի
գրական վաստակի մեջ, արդյունք էր անշուշտ մեր իրականության մեջ օր-
ավուր աճող ու հզորացող պրոգրեսիվ ուժերի ազդեցության։ Այդ հանգամանքը
ևս վկայում է, որ չնայած առանձին շեղումներին, մեծ գրողը միշտ էլ ձգտել
է քայլել կյանքի հետ, ապրել ժողովրդի շահերով։

3

Մեր ժողովրդի կյանքում այնքան վճռական դեր խաղացած Հոկտեմբեր-
յան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան չէր կարող չանդրադառնալ նաև Շիր-
վանզադեի հետագա գործունեության վրա։ Սկզբում նա չկարողացավ ըմ-
բռնել ռևոլյուցիայի էությունը և միանգամից անցնել նրա դրոշի տակ. որոշ
ժամանակ նա ապրեց խոր հակասություն, և տուրք տվեց քաղքենիական
տրամադրություններին։ Բայց դրա հետ միաժամանակ նա արտասահմանից
ուշադիր հետևում էր Անդրկովկասում տեղի ունեցող իրադարձություններին և
սովետական սիստեմի բարերար ազդեցությամբ աստիճանաբար զգաց պատ-
մական շրջադարձի անխուսափելիությունը։ Բազմավաստակ գրողը շուտով
եկավ այն ճիշտ համոզման, որ միայն սովետական կարգերը կարող են փըր-
կել հայ ժողովրդին ֆիզիկական ոչնչացման սպառնալիքից և վերջ տալ ազ-
գամիջյան այն արյունահեղ ընդհարումներին, որ կազմակերպում էին դաշ-
նակներն իրենց իմպերիալիստական տերերի թելադրանքով։ Այդ իմաստով

*չափազանց ուշագրավ է 1920 թվականի հուլիսին Մ. Գորկուն գրած Շիրվանզադեի հայտնի նամակը, որը ցույց է տալիս նրա աշխարհայացքի մեջ տեղի ունեցող բեկումը, այն խոր համակրանքն ու հավատը, որ դեռ այն ժամանակ նա տածում էր Սովետական իշխանության նկատմամբ։ Պատմական նշանակություն ունեցող այդ նամակում արտահայտելով իր մտահոգությունը իր հարազատ ժողովրդի ճակատագրի նկատմամբ՝ նա գրել է. «...Ես հավատում եմ, որ Սովետական կառավարությանը կհաջողվի խաղաղություն հաստատել անմորեն իրար հետ թշնամացած ծայրամասերի ժողովուրդների մեջ և ենթարկել նրանց մի ընդհանուր օրենքի՝ սիրո, եղբայրության, ճշմարտության և արդարության օրենքին»։*

*Ժողովուրդների սիրո և եղբայրության հիմքը տեսնելով Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության մեջ, մեծանուն գրողը հուսավառ հայացքով դիմում է իր խոսքերով ասած՝ «ազնիվ և բարի ռուս ժողովրդի իսկական զավակ» Մաքսիմ Գորկուն, որ նա բարձրացնի իր «ազդու ձայնը բազմաչարչար և կիսով չափ ոչնչացված հայ ժողովրդի օգտին։ Դա կլինի մեկը ամենալավ գործերից, որ երբևէ կատարել է մարդը»,— գրել է Շիրվանզադեն և դրանով իսկ հավաստել իր հարգանքն ու սերը Սովետական Ռուսաստանի հանդեպ՝ նրա հանճարեղ արվեստագետի միջոցով։*

*Մեծ եղավ Շիրվանզադեի ուրախությունը, երբ նա լսեց Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելու լուրը։ Պատմական այս ակտի մեջ նա տեսավ մեր ժողովրդի ազգային վերածնության ու խաղաղ կյանքի միակ հնարավորությունը և անվերապահորեն կանգնեց նոր, Սովետական Հայրենիքի պաշտպանության դիրքերի վրա։*

*1926 թվականի մարտին Շիրվանզադեն վերադարձավ հայրենիք, այրելով հին աշխարհի հետ իրեն կապող բոլոր կամուրջները. «Իմ կյանքի ամենաերջանիկ օրը,— ասաց նա Թբիլիսիում մամուլի ներկայացուցիչների հետ ունեցած զրույցի ժամանակ,— ես համարում եմ Խորհրդային Անդրկովկաս մտնելուս օրը։ Ես ինձ ամբողջապես տրամադրում եմ Խորհրդային իշխանությանը՝ իմ հայրենիքի շինությանը մասնակցելու համար»։*

*Եվ արդարև, ալեզարդ գրողը հայրենիք էր վերադառնում նրա վերաշինությանը ակտիվորեն մասնակցելու բուռն ցանկությամբ։ Տրջապատված հարազատ ժողովրդի սիրով և սոցիալիստական պետության ջերմ հոգատարությամբ՝ Շիրվանզադեն ապրեց բուռն ոգևորություն։ Դրա փայլուն արտահայտություններից է Հայաստանում սովետական կարգերի հաստատման վեցերորդ տարեդարձի առթիվ նրա գրած խոսքը՝ «Նոր սերնդին» վերնագրով, ուր գնահատելով «Հայ պատմության մեջ եղած մեծ օրն ազատության», ականավոր գրողը ասաց. «Նոյեմբերի քսանինը Հոկտեմբերյան հեղափոխության ծնունդն է։ Սակայն մի ծնունդ, որ ըստինքյան մարդկային պատմության գմայլելի էջերից մեկն է։ Մի անգամ ևս թերթենք մեր երկհազարամյա անցյալի ժամանակագրությունները և մի անգամ ևս համոզվենք, որ հայ ժողովուրդը երբեք չի ունեցել այն ազատությունը, որ ունի այժմ։ Եվ թող մեր նոր սերունդն այս գիտակցությամբ տոգորված և իրեն պարգևած լիուլի հնարավորությամբ ոգևորված՝ կրկնապատկե իր եռանդը հայրենիքի վերաշինության համար»։*

*Սոցիալիստական ազատ Հայաստանը երիտասարդական ավյուն ներշնչեց նաև իրեն՝ Շիրվանզադեին։ Ոգեշնչված ժողովրդի ստեղծարար աշխատանքով*



*նա լծվեց նոր կյանքի կառուցման ու կուլտուրայի զարգացման գործին և իր անխոնջ գրիչն ու հեղինակավոր խոսքը նվիրաբերեց սոցիալիստական շինարարությանը։ Նա հանդես եկավ բանավոր ու գրավոր մի շարք ելույթներով, գրեց նոր գործեր, որոնցով նվաճեց Սովետական ժողովրդի հարգանքն ու սերը։*

*1926 թվականին Շիրվանզադեն հրապարակ հանեց «Մորգանի խնամին» կատակերգությունը, որը նրա ապրած գաղափարական շրջադարձի ամենացայտուն վկայությունն է։ Այստեղ հեղինակը սուր երգիծանքով բացահայտել է ժողովրդի կամքով երկրից դուրս շպրտված մեր թշնամիների բարոյա-քաղաքական սնանկությունը և մերկացրել նրանց անասնական ատելությունը Սովետական Հայրենիքի հանդեպ։ Գեղարվեստական խոր համոզչությամբ նա ցույց է տվել, թե ինչպես կործանման դատապարտված ալիմյանների ու էլիզբարյանների սերունդն իր վերջին օրերն է քարշ տալիս իմպերիալիզմի ետնաբակերում և պատրաստ է դիմելու ամեն տեսակ ստոր գործարքների՝ հին օրերի «փառքն» ու «վսեմությունը» վերականգնելու համար։ Հենց այդպիսին է Փարիզ փախած նախկին նավթարդյունաբերող Պյոտր Մենթոևը, որը հավատալով իր փչացած որդուն՝ Ժորժին, կարծում է թե կարող է դառնալ միլիարդատեր Մորգանի խնամին և ամերիկյան դոլլարներով հասնել իր կորցրած դիրքին։ Բայց իրականությունն անողոք է, նրա այդ հույսերը հօդս են ցնդում և առհասարակ արտասահմանում ապաստանած սպիտակ էմիգրանտները վխտում են անկման ու այլասերման մի այնպիսի ճահճում, որից դուրս գալն այլևս աննհար է։ Այդ գիտակցությամբ էլ հեղինակը դաժան դատավճիռ է կարդում մեր երեկվա ու այսօրվա թշնամիների նկատմամբ և գեղարվեստական խոսքի միջոցով հավաստում նրանց անդառնալի կործանումը։*

*Դարձյալ այստեղ, Սովետական Հայաստանում էր, որ Շիրվանզադեն վերամշակեց «Կյանքի բովից» մեմուարային երկի առաջին մասը և գրեց նրա շարունակությունը՝ ամբողջացնելով իր բազմաբովանդակ կյանքի տարեգրությունը։*

*Սովետական շրջանում Շիրվանզադեն, հիրավի, ապրեց բեղուն ստեղծագործական կյանք։ Նա տվեց ինքնուրույն նոր գործեր և մեր գրականությունը հարստացրեց ռուսերենից կատարած իր թարգմանություններով։*

*Իր կյանքի վերջին տարիներին մեծատաղանդ ռեալիստը, ինչպես հայտնի է, Հայկինոյի պատվերով գրում էր «Վերջին շատրվանը» կինոսցենարը։ Ներշնչված նոր կյանքի գեղեցկությամբ՝ նա ձգտում էր լայնորեն պատկերել բուրժուական աշխարհի մայրամուտը և օրավուր աճող ռեոլյուցիոն ուժերի ակտիվացումը։*

*Ստեղծագործական աշխատանքին զուգընթաց Շիրվանզադեն ակտիվորեն մասնակցում էր նաև մեր երկրի կուլտուրական-քաղաքական կյանքին, հասարակական ձեռնարկումներին։ Սովետական ժողովուրդը նրան պատասխանեց անհուն վստահությամբ՝ ընտրելով Անդրկենտգործկոմի անդամ։ Որպես այդպիսին խոսքի ականավոր վարպետը եռանդուն մասնակցություն էր ցուցաբերում նոր կյանքի կառուցման գործին, արձագանքում ռեսպուբլիկայի և Անդրկովկասի կյանքում կատարվող գրեթե բոլոր միջոցառումներին։ Պատահական չէ, որ հենց նա գլխավորեց մեր գրողների փոխադարձ այցելությունները Սովետական Վրաստան և Ադրբեջան և իր հեղինակությամբ մեծապես*

նպաստեց եղբայրական ժողովուրդների բարեկամության և կուլտուրական համագործակցության ամրապնդման ազնիվ գործին:

Ո՛չ միայն հայ, այլև ադրբեջանական և վրաց գրողներն ու կուլտուրական գործիչները սիրում ու բարձր են գնահատում Շիրվանզադեին, որի կյանքը մի տեսակ խորհրդանշան էր այդ երեք ժողովուրդների դարավոր եղբայրության:

Բարձր գնահատելով մեծ վիպասանի ու դրամատուրգի գրական-հասարակական բեղմնավոր գործունեությունը, նրա մատուցած ծառայությունը հայրենի գրականության ու կուլտուրայի զարգացման գործին՝ Հայաստանի և Ադրբեջանի կառավարությունները Շիրվանզադեին շնորհեցին ժողովրդական գրողի պատվավոր կոչում, իսկ Անդրկենտգործկոմը՝ Անդրկովկասի կուլտուրայի վաստակավոր գործչի կոչում:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ջերմ հոգատարության պայմաններում Շիրվանզադեն ապրեց երջանիկ ծերություն: Նա անսահմանորեն հպարտ էր, որ ինքը ապրում ու ստեղծագործում էր Սոցիալիստական Հայրենիքում, մասնակցում իր վերածնված ժողովրդի պայքարին ու շինարարությանը: Հայաստանի Կոմպարտիայի IX համագումարին ուղղած իր ողջույնի խոսքի մեջ մեծ գրողը սովետական ջերմ հայրենասերի հպարտությամբ գրել է. «Լրանում է ութերորդ տարին, որ ես Խորհրդային Հայաստանումն եմ, և այդ ութը տարվա ընթացքում մի վայրկյան անգամ չեմ մտածել, թե հայ մարդը Խորհրդային Միությունից դուրս որևէ մի ուրիշ տեղ կարող է զգալ իրեն այնքան տրամադիր ապրելու և աշխատելու, որքան իր այս նորաստեղծ հայրենիքում»:

Նորաստեղծ այս Հայրենիքում հոգեպես վերածնված ծերունազարդ գրողը երիտասարդացավ և լցվեց ստեղծարար աշխատանքի բուռն եռանդով: Դրա լավագույն ապացույցն է նաև սովետական գրողների Համամիութենական առաջին համագումարում նրա արտասանած պատմական ճառը, որ ներթափանցված է հայրենասիրական խանդավառությամբ: Իր ճառի վերջում Շիրվանզադեն ասաց. «Մարդիկ հաճախ ինձ հարցնում են ինչո՞վ եք սնվում ի՞նչ եք ուտում, որ չեք ծերանում... Ես չեմ ծերանում նրա համար, որ ապրում եմ Խորհրդային իշխանության ժամանակ...:

Այդ թևավոր խոսքերով էլ մեր պարտիայի կենտրոնական օրգան «Պրավդան» սկսեց իր առաջնորդող հոդվածը գրողների համագումարի մասին, ընդգծելով, որ «այդ խոսքերի մեջ ցոլանում է մեր վեհ ժամանակի առանձնահատկությունը»:

Անցյալից եկող, ժողովրդի հետ միշտ կապված առաջավոր ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչների նման Շիրվանզադեն էլ ըմբռնեց մեր վեհ ժամանակի այդ առանձնահատկությունը և իր ալեզարդ գլուխը խոնարհեց մեծ Լենինի ուսմունքի առաջ. «Առաջին անգամ չէ, որ ես խոնարհվում եմ այդ զմայլելի վարդապետության առաջ, այսօր թող թույլ տրվի ինձ մի անգամ էլ կոչել բարձրաձայն.

Կեցցե Հոկտեմբերյան հեղափոխությունը:

Կեցցե լենինիզմը»:

Այս խոսքերի մեջ արտահայտված է հայ ժողովրդի սոցիալիստական վերածնության բերկրանքը, որի ականատեսն ու մասնակիցը եղավ մեծ արվեստագետ Ալ. Շիրվանզադեն իր կյանքի վերջին տարիներին:

# ՀԱՆՈՒՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ, ԱՆԿԱԽ, ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿՈՐԵԱՅԻ

*Վ. ՍԱՐԳՍՅԱՆ*

Ջոսոն: Այդպես են անվանում կորեացիներն իրենց երկիրը, որ թարգմանաբար նշանակում է «Առավոտյան թարմության երկիր»: Կորեան գտնվում է համանուն թերակղզու և նրան հարակից մոտ երեք ու կես հազար կղզիների ու կղզյակների վրա:

Գեղեցիկ է Կորեան, ինքնօրինակ է նրա բնանկարը: Տերիտորիայի համեմատաբար ոչ մեծ տարածության վրա (220.792 քառ. կմ.) խիստ բազմազան ու հակադիր են նրա բնական պայմանները. լեռնաժայռերին ու անտառապատ լեռներին հաջորդում են արգավանդ դաշտավայրերը, անանցանելի տայգային՝ մերձարևադարձային ճոխ բուսականությունը: Հարուստ է կորեական ընդերքը. այստեղ կան արժեքավոր ու հազվագյուտ մետաղներ, օգտակար հանածոներ: Բարեբեր է նրա հողը: Կորեայի ափերը ողողող Դեղին ու Ճապոնական ծովերը հարուստ են ձկով, ծովային կենդանիներով: Լեռնային գետերի ջուրը կարևոր աղբյուր է հիդրոէլեկտրաէներգիայի և ոռոգման համար:

Իր բնական հարստությունների ու աշխարհագրական նպաստավոր դիրքի շնորհիվ դեռևս անցյալ դարի երկրորդ կեսից Կորեան իր վրա է բևեռել իմպերիալիստական գիշատիչների ուշադրությունը: Ամերիկյան գաղութարարները բազմիցս փորձել են զավթել կորեական հողը, փորձել են շատ անգամ նաև ճապոնացիները: 1910 թվականին ճապոնական միլիտարիստներն անեքսիայի ենթարկեցին Կորեան. նրանք զավթեցին վարելահողերի մեկ քառորդը ու անտառների մեծ մասը, իրենց ձեռքը վերցրին երկրի էկոնոմիկան: Գաղութակալության ծանր լուծ դրվեց կորեական ժողովրդի վզին: Ճապոնական գաղութարարները վայրագ կերպով կողոպտում էին երկրի հարստությունները, քամում կորեական աշխատավորների կենսահյութերը:

35 տարի շարունակ կորեական ժողովուրդը տնքում էր ճապոնական զավթիչների գարշապարի տակ: Ազատասեր ժողովուրդը երկարատև ու համառ պայքար է մղել իր հայրենիքի ազատության ու անկախության համար, ընդվզել օտար և ներքին հարստահարիչների դեմ:

Վերջապես կորեական հողի վրա ճառագեց ազատության ու բարի հույսերի արշալույսը: Սովետական Բանակը ջախջախելով ճապոնական զորքերը, 1945 թվականի օգոստոսի 15-ին կորեական բազմաչարչար ժողովրդին ազատագրեց գաղութակալության լծից: Դա վճռական դեր խաղաց Կորեայում ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի գործում: Իրականացան

ժողովրդի դարավոր ակնկալությունները, նրա առջև բացվեցին ազգային անկախության ու դեմոկրատական զարգացման լայն հորիզոններ:

Բայց այն պահին, երբ Սովետական Բանակը պարտության էր մատնել ճապոնական միլիտարիստներին, 1945 թվականի սեպտեմբերին Հարավային Կորեայում ափ հանվեցին ամերիկյան զորքեր: Ճապոնական զինված ուժերի կապիտուլյացիան իրականացնելու նպատակով, երկիրը 38-րդ զուգահեռականով ժամանակավորապես բաժանվեց երկու մասի, ստեղծվեցին սովետական ու ամերիկյան ռազմական երկու զոնալ գոտիներ: Դա պետական սահման չէր, այլ բացառապես կրում էր ժամանակավոր բնույթ: Հավատարիմ իր ստանձնած պարտավորություններին, խորապես հարգելով կորեական ժողովրդի իրավունքները, իր միսիան կատարելուց հետո Սովետական Զինված Ուժերը դուրս բերվեցին երկրից: Ամերիկյան զորքերը ճապոնական զորքերի կապիտուլյացիայից հետո մնացին երկրի հարավում: Ոտնահարելով միջազգային բոլոր համաձայնագրերն ու իրենց հանդիսավոր պարտավորությունները, ԱՄՆ-ը օկուպացրին ռեսպուբլիկայի հարավային հատվածը: Ամերիկյան իմպերիալիստների հանցանքով այդ ժամանակավոր դեմարկացիոն գծով Կորեան արհեստականորեն երկու մասի բաժանվեց, մասնատվեց:

Ազատագրումից հետո կորեական ժողովրդի կյանքը, քաղաքական ու տնտեսական զարգացումը երկրի հյուսիսային ու հարավային հատվածներում գնաց միանգամայն իրար հակադիր ճանապարհներով: Հյուսիսային Կորեայում քաղաքական իշխանությունը և տնտեսությունն իրենց ձեռքը վերցրին քաղաքի ու գյուղի աշխատավորները. իր բազմադարյան պատմության մեջ աշխատավոր մարդն այստեղ դարձավ երկրի լիիրավ տերը, իր կյանքի ու բախտի տնօրինողը: Կատարվեցին ռևոլյուցիոն մեծ վերափոխումներ, փշրվեցին գաղութակալության, շահագործման ու ճնշման կապանքները: Խաղաղություն ու երջանկություն հաստատվեց կորեական հողի այս հատվածում:

Այլ կերպ դասավորվեց կյանքը Հարավային Կորեայում: Քաղաքական ու տնտեսական կյանքում այստեղ ամեն ինչ մնաց նույնը, շարունակվեցին ժողովրդի տառապանքներն ու ըկանքները: Մնաց գաղութակալության լուծը, փոխվեցին միայն գաղութարարները: Տմարդի կերպով ոտնահարելով ամբողջ կորեական ժողովրդի ազգային ձգտումները, խորացնելով երկրի արհեստական բաժանումը, ամերիկյան ագրեսորները 1948 թվականի մայիսին Հարավային Կորեայում անցկացրին սեպարատ ընտրություններ: Բայց ժողովրդի մեծամասնությունը բոյկոտի ենթարկեց այդ ընտրությունները. քվեատուփերին մոտեցավ ընտրողների միայն 30 տոկոսը: Դա չխանգարեց ամերիկյան ագրեսորներին իշխանության գլուխ կանգնեցնել իրենց մարիոնետ, ազգային շահերի դավաճան Լի Սին Մանին ու նրա կլիկին:

Երկրի աշխատավորական մասսաները, հայրենասիրական բոլոր ուժերը վճռականորեն հանդես եկան ամերիկյան զավթիչների անօրինական գործողությունների դեմ: Ի հակակշիռ սեպարատ ընտրությունների, Փխենյանում հրավիրված քաղաքական պարտիաների ու հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների համընդհանուր խորհրդակցությունը որոշեց 1948 թվականի օգոստոսի 25-ին անցկացնել համակորեական Գերագույն ժողովի ընտրություններ: Այդ ընտրություններին մասնակցեց Հյուսիսային Կորեայի բնակչության 99,97 տոկոսը և, չնայած կատաղի հետապնդումներին ու



հալածանքներին, Հարավային Կորեայի բնակիչների՝ 77,52 տոկոսը: Համազգային ընտրությունների հիման վրա 1948 թվականի սեպտեմբերի 2-ին բացվեց Կորեայի Գերագույն Ժողովրդական Ժողովի I սեսիան, որի 572 դեպուտատներից 360-ը հարավից էին: Այդ սեսիայում կազմվեց դեմոկրատական միասնական կառավարություն և սեպտեմբերի 9-ին հռչակվեց Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան (ԿԺԴՌ): Դա կորեական ամբողջ ժողովրդի պատմական մեծագույն հաղթանակն էր, նրա իղձերի ու ձգտումների վառ դրսևորումը:

Անտեսելով կորեական ժողովրդի արմատական շահերը, չունկնդրելով ամբողջ աշխարհի հասարակայնության ողջախոհ ձայնին, ԱՄՆ-ի կառավարող շրջանները սկսեցին տենդագին կերպով արշավանքի նախապատրաստվել դեպի Հյուսիս, նպատակ ունենալով զավթել Հյուսիսային Կորեան, ոչնչացնել ԿԺԴՌ-ն՝ կորեական աշխատավորների հայրենիքը:

1950 թվականի հունիսի 25-ին լիսինմանական զորքերը ԱՄՆ-ի կառավարության հրամանով դավադրաբար խախտեցին դեմարկացիոն գիծը և ներխուժեցին հյուսիս: Սկսվեց ամերիկյան իմպերիալիստների կողմից կորեական ժողովրդի դեմ սանձազերծված պատերազմը: ԱՄՆ-ը կորեական ժողովրդի դեմ նետեցին մեծ քանակությամբ զինված ուժեր, ռազմական տեխնիկա. Նրանց թելադրանքով, ՄԱԿ-ի քողածածկույթի տակ, կորեացիների դեմ հանդես եկան իմպերիալիստական մի շարք պետությունների զինված ուժեր: Պատերազմը ավերիչ էր, ծանր ու անհավասար: Բայց հանուն իր հայրենիքի ազատության ու անկախության, կորեական ժողովուրդն Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ, հենված սոցիալիզմի ճամբարի բարոյական աջակցության վրա, մարտնչեց հերոսաբար, ջախջախիչ հարվածներ հասցնելով թշնամու գերազանց ռազմական ուժերին: Նրա կողմն էին աշխարհի խաղաղասեր բոլոր մարդիկ: Կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը, պատերազմի այդ ծանր օրերին կորեացիներին եղբայրական օգնության հասան չին մեծ ժողովրդի կամավորները:

Պատերազմը, որը տևեց երեք տարի, ավարտվեց կորեական ժողովրդի, բոլոր խաղաղասեր ուժերի փայլուն հաղթանակով: Չնայած պատերազմի արհավիրքներին, անհամար աղետներին ու դաժանություններին, ամերիկյան ագրեսորները չկարողացան ծնկի բերել ազատատենչ ժողովրդին. ժողովրդադեմոկրատական կարգը պատվով բռնեց այդ ծանր փորձությունը: Պատերազմն ավարտվեց ամերիկյան իմպերիալիստների պարտությամբ: Ագրեսիվ պատերազմի վրա ծախսելով հսկայական միջոցներ, կրելով կենդանի ուժի ու ռազմական տեխնիկայի մեծ կորուստներ, ԱՄՆ-ը ստիպված եղան 1953 թվականի հուլիսի 27-ին ստորագրել զինադադարի համաձայնագիրը:

## ԱԶԱՏ, ԽԱՂԱՂ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԵՐԿՐԱՆՔԸ

Հյուսիսային Կորեայում հաստատված է ժողովրդա-դեմոկրատական կարգ, իսկական ժողովրդական իշխանություն, որը հենվում է բնակչության բանվորական խավերի միասնական ճակատի վրա: Այդ ճակատի հենարանը բանվորների ու գյուղացիների դաշինքն է: Կորեական ժողովրդի քաղաքական առաջնորդն ու ղեկավարը Կորեական Աշխատանքային պարտիան է, որը ստեղծվել

*է 1946 թվականին, մարքսիզմ-լենինիզմի հիմքի վրա Կոմունիստական և Նոր ժողովրդական պարտիաների միավորումից։*

*Ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիան արթնացրեց Կորեայի ստրկացված ժողովրդի ստեղծագործական, շինարար ուժերը, որոնք կարճ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի հյուսիսային հատվածում իրականացրին դեմոկրատական արմատական վերափոխումներ։ Ճապոնացիների օրոք գյուղացիների 80 տոկոսը զրկված էր սեփական հողից կամ ուներ շատ փոքր հողակտորներ։ Հողի վարձակալման դիմաց տրվող վճարը երբեմն հասնում էր ստացված բերքի մինչև 70—80 տոկոսին։ Ագրարային ռեֆորմի իրականացումով բռնագրավվեց ավելի քան մեկ միլիոն տենբո հող (1 տենբո=0,99 հեկտարի), որը պատկանում էր ճապոնական գաղութարարներին, կորեական կալվածատերերին և հայրենիքի դավաճաններին. այդ հողը համարյա ամբողջությամբ որպես սեփականություն տրվեց 17 հազ. բատրակներին ու 702 հազ. հողազուրկ և սակավահող գյուղացիներին։ Ազգայնացվեցին արդյունաբերության ու տրանսպորտի արտադրության հիմնական միջոցները, բանկերը։ Այդ վերափոխումները սոցիալ-տնտեսական անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին ժողովրդական տնտեսության արագ վերականգնման ու զարգացման, աշխատավորների կենսապայմանները բարելավելու, ինչպես նաև աստիճանաբար սոցիալիզմին անցնելու խնդիրները լուծելու համար։*

*Պատերազմի պատճառով ընդհատվեց խաղաղ ստեղծագործ աշխատանքը։ Անդրօվկիանոսյան գիշատիչները ծանր վնասներ պատճառեցին Հյուսիսային Կորեայի տնտեսությանը, նրա ժողովրդին։ Ավերվեցին ավելի քան 8700 գործարանային շենքեր, 5000 դպրոց, 1000 կուլտուր-լուսավորական հիմնարկ, 600 հազար բնակելի տուն և այլն։ Փխենյանի 73,5 հազար շենքերից քանդվեց 64 հազարը։ Մեծ վնաս հասցվեց գյուղատնտեսությանը՝ կրճատվեցին ցանքատարածությունները, անասունների գլխաքանակը, փչացան այգիները, քանդվեցին ջրանցքները։*

*Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների եղբայրական օգնությամբ կորեական աշխատավորները ձեռնամուխ եղան երկրի ավերված տնտեսության, քաղաքների ու գյուղերի վերականգնմանը։ Կարճ ժամանակում ավերակներից վեր խոյացան քաղաքներն ու գյուղերը՝ ավելի գեղեցիկ ու է՛լ ավելի շեն, բարձրացավ ժողովրդի նյութական ու կուլտուրական կենսամակարդակը։*

*Կորեական Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ աշխատավորները 2 տարի 8 ամսում կատարեցին ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման եռամյա պլանը (1954—1956 թթ.)։ Պետական և կոոպերատիվ արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը 1956 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճեց 2 անգամ, իսկ հացահատիկի արտադրությունը գերազանցեց մինչպատերազմյան մակարդակը։ Ծավալվեցին ջրաշինական մեծ աշխատանքներ։ Պատերազմից հետո մեծապես ընդլայնվեցին արդյունաբերության մի շարք ճյուղեր։*

*Արագորեն վերականգնելով տնտեսությունը, կորեական ժողովուրդը հերոսական ջանքեր է գործադրում զարգացնելու իր արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և կուլտուրան։ Գործողության մեջ է ԿԺԴՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 1957—1961 թթ. առաջին հնգամյա պլանը, որի հիմքում դրված է ծանր արդյունաբերության առաջնահերթ զարգացումը։ Հնգամյա պլանի կենսագործմամբ ռեսպուբլիկան կդառնա ինդուստրիալ-ագրարային երկիր, էլ ավելի կամրապնդվեն սոցիալիզմի տնտեսական հիմքերը, կլիկվիդացվեն երկրի էկոնոմիկայի գաղութային միակողմանի զարգացման մնացուկները, կհաղթահարվի արդյունաբերության տեխնիկական հետամնացությունը։*



*Հնգամյակի վերջում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը 1956 թվականի համեմատությամբ կավելանա 2,6 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 2,9 անգամ։ 1961 թվականին պետք է արտադրվի 3,7 անգամ ավելի շատ չուգուն ու գլանվածք, 3,5 անգամ ավելի շատ պողպատ, 1,9 անգամ էլեկտրաէներգիա, 2,9 անգամ շատ ցեմենտ, մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը կավելանա 2,6 անգամ, քիմիականը՝ 3,6 անգամ և այլն։ Ծանր արդյունաբերության ճյուղերի արագաթափ զարգացման բազայի վրա մեծապես աճելու է թեթև ու սննդի արդյունաբերությունը, հնգամյակի տարիներին լայն սպառման առարկաների արտադրությունը կավելանա 2,2 անգամ։ Աշխատավորները կստանան մեծ քանակությամբ կոշկեղեն, գործվածքներ, պարենամթերքներ։*

*Մեծ զարգացում կապրի գյուղատնտեսությունը։ Կլուծվի հացահատիկի պրոբլեմը, որով և ամուր բազա կստեղծվի գյուղատնտեսության մյուս ճյուղերի բուռն զարգացման համար։ Բամբակի արտադրությունը կավելանա 6 անգամ, վուշինը՝ 14 անգամ, մսինը՝ 6,7 անգամ և այլն։ Հնգամյակի տարիներին 2,2 անգամ կավելանա ազգային եկամուտը, մեծապես կբարելավվեն աշխատավորների կենսապայմանները։*

*Հաջողությամբ են կատարվում հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները։ Հնգամյակի առաջին տարում, 1957 թվականին, արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականի համեմատությամբ ավելացավ 44 տոկոսով. անցյալ տարի ստացվեց հացահատիկի ռեկորդային բերք՝ արտադրվեց 3,2 միլիոն տոննա հացահատիկ։*

*Երկրում հաստատվել են սոցիալիստական արտադրական հարաբերություններ, ամրապնդվում է սոցիալիզմի հիմքերի նյութական-տեխնիկական բազան։ Հաղթանակել է սոցիալիստական կացութաձևը տնտեսության բոլոր ճյուղերում։ 1957 թվականին արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ սոցիալիստական սեկտորի բաժինը կազմեց 98,7 տոկոս, ներքին առևտրի մեջ՝ 87,9 տոկոս։ Սոցիալիստական վերափոխման է ենթարկվել կորեական գյուղը. ներկայումս կոոպերացված է գյուղացիական տնտեսությունների 98,6 տոկոսը, կոոպերատիվների ձեռքում է գտնվում վարելահողերի 99,1 տոկոսը։ Գյուղացիների արտադրական կոոպերացումը Կորեայում ունի զարգացման իր առանձնահատկությունները, կազմակերպական-տնտեսական իր ձևերը, տեմպերը։*

*Պետական սեկտորը գյուղատնտեսության մեջ ներկայացված է 300 պետական գյուղատնտեսական տնտեսություններով և ավելի քան 50 մեքենավարձակալական կայաններով։ Ժողովրդական կառավարությունը տարեցտարի հսկայական միջոցներ է ներդնում գյուղատնտեսության զարգացման համար, օգնում է գյուղացիներին մեքենաներով, սերմացուով, պարարտանյութերով։*

*Ազատագրումից հետո երկրում հսկայական աշխատանք է կատարվում*

կուլտուրայի ու արվեստի զարգացման, աշխատավորական մասսաների նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Եվ դա հասկանալի է, քանի որ պարտիայի ու կառավարության քաղաքականությունն ու պրակտիկ գործունեությունն ամբողջովին ուղղված են այդ վեհ նպատակին։ ԿԺԴՌ-ում իրականացվել է կուլտուրական ռևոլյուցիա, վերացվել է անգրագիտությունը, հանրակրթական դպրոցներում մայրենի լեզվով սովորում են 2 միլիոն աշակերտ, իսկ բուհերում՝ 29 հազար երիտասարդներ։ Երկրում ստեղծված են ինժեներա-տեխնիկական, գիտական ու բանվորական ազգային որակյալ կադրեր։ Ծաղկում են ազատագրված ժողովրդի արվեստն ու կուլտուրան, գիտությունը։ Լայն ծավալ է ստացել բնակարանային շինարարությունը. բավական է ասել, որ Փխենյանում ամեն 16 րոպեն մեկ նոր բնակարան է շահագործման հանձնվում աշխատավորների համար։

Սոցիալիստական լագերի երկրների հետ միասին, նրանց օգնությամբ ու փոխադարձ համագործակցությամբ, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները հաստատ ու աներեր ընթանում են սոցիալիզմի կառուցման ուղիով։ ԿԺԴՌ-ն կորեական ողջ ժողովրդի հույսն ու ապավենն է, երկրի վերամիավորման դեմոկրատական հուսալի բազան։

## ԴՈԼԼԱՐԻ ԳԱՐՇԱՊԱՐԻ ՏԱԿ

Այլ կերպ դասավորվեց կյանքը 38-րդ զուգահեռականից հարավ։ Հենց օկուպացման առաջին օրերից ամերիկյան իմպերիալիստներն իրենց ձեռքը վերցրին այն ամբողջ սեփականությունը, գույքն ու կայքը, որ կորեական ժողովրդից իր ժամանակին հափշտակել էին ճապոնական գաղութարարները։ Ամերիկացիները «սեփականացրին» Հարավային Կորեայի էկոնոմիկայի մոտ 90 տոկոսը։ Ալան-Թալանի մատնվեցին քաղաքներն ու գյուղերը։

Այսպես սկսվեց երկրի կողոպուտը, օկուպացիոն այն դաժան ռեժիմը, որ շարունակվում է արդեն տասներեք տարուց ի վեր։ Զինադադարից անմիջապես հետո, 1953 թվականին ԱՄՆ-ը լիսինմանական ֆաշիստական կլիկի հետ կնքեցին, այսպես կոչված, «Ամերիկա-կորեական փոխադարձ պաշտպանության» պայմանագիրը, որով հավերժացվում է օկուպացիոն ռեժիմը, Հարավային Կորեայի նկատմամբ ԱՄՆ-ի քաղաքական ու տնտեսական տիրապետությունը։

Ամերիկյան սվինների վրա պահվող Լի Սին Մանի մարիոնետային «կառավարությունը», որը չի ներկայացնում կորեական ժողովրդին, անդրօվկիանոսյան տերերի հլու կամակատարն է։

Մռայլ ու մղձավանջային է կյանքը Հարավում։ Այստեղ աշխատավոր մարդը զրկված է քաղաքական ու դեմոկրատական տարրական իրավունքներից, ազատությունից։ Տիրում են կամայականությունն ու անօրինականությունը, կոպիտ կերպով ոտնահարվում են մարդկային իրավունքները, ծաղր ու ծանակի ենթարկվում մարդու արժանապատվությունը։ Գաղութակալության լծի տակ, սովի ու աղքատության ճիրաններում տնքում է կորեացին։ Միայն 1945 թվականի հոկտեմբերից մինչև 1955 թվականի մայիսը առանց դատ ու դատաստանի բանտ են նետվել և գազանաբար սպանվել մոտ 160 հազար կորեացի։

Անկում է ապրում հարավի էկոնոմիկան, օրեցօր վատթարանում է աշ-



խատավորների տնտեսական վիճակը։ Այդ դրությունն ավելի խորացավ հատկապես Հյուսիսային Կորեայի դեմ մղված պատերազմում ու նրանից հետո։ Արդյունաբերության ամենազարգացած ճյուղի՝ տեքստիլ արդյունաբերության արտադրությունը նախապատերազմյան տարիների համեմատությամբ 1953 թվականին կրճատվել էր 65 տոկոսով, իսկ սննդի արդյունաբերությունը՝ 70 տոկոսով։ Երկրում եղած յոթ հիդրոէլեկտրակայաններից ու ջերմաէլեկտրակայաններից աշխատում էր միայն մեկը։ Պատերազմական ծանր վերքերը չեն բուժվել, ավերվածները վերին աստիճանի դանդաղ են վերականգնվում։

Ռեսպուբլիկայի հարավը գերազանցապես գյուղատնտեսական շրջան է։ Նախկինում այն հանդիսանում էր երկրի գյուղատնտեսական մթերքների արտադրության շտեմարանը։ Բարեբեր է նրա հողը, ժրաջան են նրա մարդիկ։ Բայց ինչպես առաջ, այնպես էլ հիմա աշխատավոր գյուղացին քաղցում է, չի կարող դուրս գալ կարիքից։ Լի Սին Մանի «կառավարության» կողմից անցկացված, այսպես կոչված, ագրարային ռեֆորմից հետո էլ հողի մեծ մասը մնում է կալվածատերերի, կուլակների, կոմպրադորական բուրժուազիայի ձեռքում։

Գյուղատնտեսությունը գտնվում է կատաստրոֆիկ վիճակում։ ԱՄՆ-ի վարած տնտեսական քաղաքականությունն արգելակում է գյուղատնտեսական կուլտուրաների զարգացումը։ Բարձր են հողի վարձակալության վճարը, հարկերը։ Հացահատիկի բերքի 58—70 տոկոսը զանազան պատրվակներով խլվում է գյուղացիներից։ Տարեցտարի կրճատվում են ցանքատարածությունները, իջնում է բերքատվությունը։ Նույնիսկ ճապոնացիների օրոք Հարավային Կորեայում արտադրվում էր մոտ երկու անգամ ավելի հացահատիկ, քան թե երկրի հյուսիսային մասում, իսկ այժմ այստեղ արտադրվում է այնքան, ինչքան հյուսիսում։

Հարավային Կորեայում համարյա գոյություն չունի ծանր արդյունաբերություն, հատկապես բացակայում են մեքենաշինության և մետաղաձուլության ճյուղերը։ Վերջին երկու տարում այստեղ փակվել են հարյուրավոր միջին ու փոքր արդյունաբերական ձեռնարկություններ, իսկ գոյություն ունեցող ձեռնարկությունների մեծ մասում աշխատանքը դադարեցված է կամ աշխատանքի ծավալը կրճատվել է։

Հարավային Կորեան վերածվել է մի մեծ զորանոցի, այն ԱՄՆ-ի ռազմաստրատեգիական բազաներից մեկն է Հեռավոր Արևելքում։ Հետպատերազմյան տարիներին երկրի բյուջեի 64—70 տոկոսը հատկացվում է ռազմական նպատակներին. այստեղ զենքի տակ է 700 հազար մարդ, կան մեծ թվով ոստիկանական ու պահնորդական ջոկատներ, որոնք կլանում են բյուջեի մեծ մասը։

Հակաժողովրդական քաղաքականության հետևանքով ժողովուրդը տնքում է հարկերի ծանրության տակ։ 1957 թվականին բնակիչներից հավաքված հարկերի ընդհանուր գումարը 2,7 անգամ ավելի շատ էր, քան այն եղել է 1955 թվականին. անցյալ տարվա հավաքված հարկի ընդհանուր գումարը կազմել է Լի Սին Մանի «կառավարության» եկամուտների 85 տոկոսը։

Ցածր է աշխատավորների գնողունակության մակարդակը։ Ներկայումս երկրում կա մոտ 4 միլիոն անգործ և կիսագործազուրկ։ Այս տարվա փետրվարին 3 միլիոն գյուղացիներ մնացել էին առանց պարենամթերքի։ Աճում է մահացությունը, ավելանում են տարափոխիկ հիվանդությունները։ Ռեսպուբլիկայի հարավում բնակչության մեծամասնությունը մնում է անգրագետ, մի

քանի հարյուր հազար մանուկներ ու պատանիներ չեն հաճախում դպրոց։ Չնչին թվով դպրոցական շենքերի հսկայական պահանջին, այդ շենքերի զգալի մասը վերածվել է զորանոցների։ Անդրօվկիանոսյան բարբարոսները խեղդում են ազգային կուլտուրան ու արվեստը։ Ռազմական ծախսերի ավելացումը, էկոնոմիկայի անկումը քայքայել են ֆինանսները, ուժեղացրել ինֆլյացիան։

Աճում են ժողովրդի ատելությունն ու ցասումը օտարերկրյա զավթիչների ու լիսինմանական կլիկի դեմ, ուժեղանում է նրա ընդդիմադրությունը սովի ու աղքատության, պատերազմի քաղաքականության դեմ։ Կորեացիները չեն ուզում թնդանոթի միս դառնալ օտարների համար։ Զորակոչի ենթակա 80 հազար երիտասարդներ խուսափելով զինվորական ծառայությունից, թաքնըվում են մարիոնետային ոստիկանությունից։ Աճում է գործադուլային շարժումը։ Չնայած արտակարգ ռեպրեսիաներին, շանտաժին ու բռնությանը, աշխատավորների զգալի մասը չմասնակցեց ընթացիկ տարվա մայիսի 2-ին տեղի ունեցած «ազգային ժողովի» ընտրությունների կատակերգությանը։

## ԱՄԵՐԻԿՅԱՆ ԳԱՆԳՍՏԵՐՆԵՐԻ ԽԺԴԺՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Որքա՜ն վիշտ ու արյուն, որքա՜ն տառապանքներ են պատճառել ու պատճառում են ամերիկյան իմպերիալիստները Հարավային Կորեայի բնակչությանը։ Եթե այսօր Կորեան անդամահատված է, նրա հարավում դրությունը ծանր է ու ողբերգական, ապա դրանում հանցավոր են միայն ու միայն ամերիկյան գաղութարարները։

Ագրեսորները չեն հանդարտվում։ Դաս չառնելով ոչ հեռու անցյալի խայտառակ պարտությունից, ամերիկյան զավթիչները նորից զենք են շաչեցնում, հրահրում Լի Սին Մանի կլիկին արշավելու «դեպի Հյուսիս»։ Կոպիտ կերպով խախտելով զինադադարի համաձայնագիրը, ԱՄՆ-ը անցած հինգ տարիների ընթացքում անօրինական կերպով Հարավային Կորեա են բերել մեծ քանակությամբ տարբեր տրամաչափի թնդանոթներ, ականանետներ, ռազմանավեր, հրթիռային տեղակայումներ, ինքնաթիռներ, այդ թվում նաև հրթիռային ինքնաթիռներ, գնդացիրներ, հրացաններ և այլն։ Նրանք լիսինմանական բանակին զինում են ատոմային զենքով, կազմակերպվել է «ատոմային դիվիզիա»։ Պրովոկացիոն նպատակներով ամերիկյան և լիսինմանական ռազմա-օդային ուժերը խախտում են ԿԺԴՌ-ի օդային սահմանները. ոչ լրիվ տվյալներով զինադադարից հետո 1281 ռազմական ինքնաթիռներ 616 անգամ խախտել են այդ սահմանները։ Դեմարկացիոն գծի սահմանագծում տեղի են ունեցել ավելի քան 166 պրովոկացիոն զինված հարձակումներ։ 1958 թվականի հունվարի 20—25-ը չեզոք գոտու շրջակայքում կազմակերպվեցին ամերիկյան և լիսինմանական զորքերի համատեղ ատոմային ամենամեծ զորախաղերը։ Ամերիկյան կառավարությունը չարամտորեն խանգարում է զինադադարի գծով միջազգային Չեզոք հանձնաժողովի գործունեությունը։

Հարավային Կորեայի օկուպացիայի սկզբից չկա մի օր, որ այստեղ ամերիկյան բռնադատիչները չսպանեն կորեական անմեղ մարդկանց, չկողոպտեն և ծաղր ու ծանակի չենթարկեն նրանց։ Ահա մի քանի փաստեր։

1957 թվականի սեպտեմբերի 15-ին ամերիկյան երկու ժանդարմներ Թեյլորը և Յանգը, առանց որևէ պատճառի կրակ բացեցին դաշտում աշխա-



տող յոթ կորեացի աղջիկների վրա, որոնցից մեկը սպանվեց, մեկը վիրավորվեց։ 1958 թվականի ապրիլի 1-ին Պուսանի նավահանգստում ամերիկյան ժամապահ Մակկենին բռնաբարեց մի կորեացի աղջկա և ապա հետքերը կորցնելու նպատակով՝ գնդակահարեց նրան։ 1957 թվականի հոկտեմբերի 3-ին Պխադյու գյուղում 60 տարեկան մի կին, որն աշխատում էր բրնձի դաշտում, ամերիկյան եֆրեյտոր Ուդինգի կողմից սպանվեց. այդ կապակցությամբ ամերիկյան զինվորական իշխանությունները ցինիկաբար հայտարարեցին, որ ներքոհիշյալ զինծառայողը թռչունի փոխարեն սխալմամբ սպանել է այդ կնոջը։ Անցյալ տարի մայիսի 16-ին երկու ամերիկյան զինվորներ Ունչինում փորձեցին օրը ցերեկով անարգել երկու տեղացի կանանց. հանդիպելով նրանց համառ դիմադրությանը, չարագործները կանանցից մեկին բարձունքից ցած նետելով սպանեցին, իսկ մյուսին ծեծեցին՝ հասցնելով մարմնական ծանր վնասվածքներ։ Այդ նույն հողի վրա Տոկչոնրի գյուղում 1957 թվականի մարտի 11-ին սպանվեց մի կին։ Կամ մի այլ փաստ. 1956 թվականի ապրիլի 8-ին Ինչոն քաղաքում ամերիկյան ժամապահը բռնի կերպով պահականոց ներս քաշելով տեղական ուսուցչուհիներից մեկին, որը հղի էր, տեղն ու տեղը գնդակահարեց։

Ամերիկյան զինվորականության կողմից կորեական կանանց նկատմամբ ծաղր ու ծանակի, անարգանքի դեպքերը բազմաթիվ են։ Դրանք մերկացնում են ժամանակակից գանգստերների սոսկ կերպարանքը։ Ավելին, ամերիկյան զինծառայողների կողմից մանուկների ու պատանիների նկատմամբ կատարված գազանությունններն անցնում են մարդկային հրեակայության ամեն մի սահման։

Հարավկորեական մամուլի էջերում հաղորդագրություններ են թափանցում ամերիկյան զինծառայողների կողմից տեղական բնակիչների մասսայական կողոպուտի, ծեծի ու սպանության դեպքերի մասին։ Անցյալ տարվա ապրիլի 16-ին, օրը ցերեկով, Ենդյուգոն գյուղի վրա հարձակում գործեցին ամերիկյան 80 ժանդարմներ, որոնք խուզարկեցին 184 գյուղացիների տներ, հափշտակելով նրանցից 2324 զանազան իրեր։

Կորեական խաղաղ բնակչության նկատմամբ ամերիկյան բարբարոսների հրեշավոր չարագործությունները շատ և շատ են։ Նրանք առաջ են բերում ոչ միայն կորեացիների, այլև աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց բուռն զայրույթն ու արդարացի վրդովմունքը։ Նրանք պահանջում են վերջ դնել ամերիկյան գանգստերների խժդժություններին Հարավային Կորեայում։

## ԽԱՂԱՂ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ ՎԵՐԱՄԻԱՎՈՐԵԼ ԵՐԿԻՐԸ

Ամերիկյան մոնոպոլիստների հանցանքով Կորեական Ռեսպուբլիկան մնում է մասնատված, կորեական ազգը՝ պառակտված։ Երկրի արհեստական բաժանումը խոշոր չափով հարվածում է կորեական ողջ էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացմանը։ Ռեսպուբլիկայի հյուսիսում են գտնվում ընդերքի հարստությունների, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների, այդ թվում մետաղաձուլության, մետաղամշակման գործարանների գերակշռող մասը. երկրի հարավը գերազանցապես գյուղատնտեսական շրջան էր՝ իր բերքառատ դաշտերով ու այգիներով, զարգացման որոշ աստիճանի հասած թեթև ու սննդի արդյունաբերությամբ։ Մի ամբողջություն են կազմում հա-

զորդակցության միջոցները, էներգետիկան ու ոռոգման սիստեմը։ Որքա՜ն մեծ և իրոք հոյակապ կլինեին կորեական ժողովրդի նվաճումները տնտեսության ու կուլտուրայի զարգացման ասպարեզներում, եթե մասնատված չլիներ երկիրը, եթե վերջ տրված լիներ ամերիկացիների սանձարձակ տիրապետությանը ռեսպուբլիկայի հարավում։ ԱՄՆ-ը առաջվա նման համառորեն արգելակում են երկրի միավորմանը, հանցավոր կերպով միջամտում են կորեական ժողովրդի ներքին գործերին, նոր դավեր նյութում նրա դեմ։ Նրանք իրենց քաղաքականությամբ ու գործելակերպով օրավուր նոր վիշտ ու տանջանքներ են պատճառում այդ ժողովրդին։

Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը մեծ ջանքեր է գործադրել ու գործադրում է առանց արտաքին որևէ միջամտության խաղաղ ճանապարհով վերամիավորելու երկիրը։ Այդ նպատակով որպես նախնական քայլ, նա առաջարկություն մտցրեց Հյուսիսի ու Հարավի միջև հաստատել ու զարգացնել տնտեսական ու կուլտուրական կապերը, նրանց միջև ստեղծել գործարար համագործակցություն։ Վերամիավորման համար պահանջեց երկրից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը։ Արձագանքելով ԿԺԴՌ-ի կառավարության 1958 թվականի փետրվարի 5-ի հայտարարությանը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը ռեսպուբլիկայի հյուսիսային մասից լրիվին դուրս բերեց չինական ժողովրդական կամավորներին։ Սակայն ամերիկյան զավթիչները արհամարհելով կորեական ժողովրդի արդարացի պահանջը՝ փոխանակ Հարավային Կորեայից դուրս բերելու իրենց զորքերը, է՛լ ավելի են ուժեղացնում ռազմական նախապատրաստությունները, սպառնում են խաղաղությանը և սաստկացնում լարվածությունը Կորեայում։

Ամերիկյան ագրեսիվ զորքերը դուրս բերել Հարավային Կորեայից, վերջ դնել նրանց սանձարձակություններին։ Այս է կորեական 30 միլիոնանոց ժողովրդի արդարացի ու միանգամայն օրինական պահանջը։ Դա Հարավային Կորեայի փրկության միակ ուղին է։

Կորեական ժողովուրդն իրավունք ունի վայելելու ազատագրության պտուղները, խաղաղ ու երջանիկ ապրելու միասնական մեկ ընտանիքում։ Նա լի է վճռականությամբ՝ պաշտպանելու իր սրբազան հողը ամերիկյան զավթիչներից, եթե նրանք փորձ անեն ձեռք բարձրացնելու իր երկրի վրա։

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՐՏՇԱՐՔԵՐԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԵՐԻ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԵՎ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՁԵՎԱԿԵՐՊՄԱՆ ՄԱՍԻՆ

Համաձայն ՍՄԿՊ Կանոնադրության, սովետական յուրաքանչյուր քաղաքացի, որի 18 տարին լրացել է և ցանկանում է ընդունվել Կոմունիստական պարտիայի շարքերը, պարտավոր է համապատասխան սկզբնական պարտիական կազմակերպությանը ներկայացնել իր ձեռքով գրած դիմում, ինքնակենսագրություն, ինչպես նաև երեք երաշխավորություն պարտիայի այն անդամներից, որոնք ունեն առնվազն երեք տարվա պարտիական ստաժ ու պարտիայի շարքերն ընդունվողին ճանաչում են ոչ պակաս, քան մեկ տարվա համատեղ աշխատանքից։ Իսկ այն քաղաքացիները, որոնք ՀամԼԿԵՄ անդամ են, պետք է մեկ երաշխավորություն ներկայացնեն ՀամԼԿԵՄ քաղաքային կամ շրջանային կոմիտեից, որը հավասարեցվում է պարտիայի մեկ անդամի երաշխավորության հետ։

Սկզբնական պարտկազմակերպության քարտուղարը նախքան երաշխավորությունը հաստատելը, պարտավոր է ստուգել, թե արդյոք երաշխավորողը ճանաչո՞ւմ է դիմողին ոչ պակաս, քան մեկ տարվա համատեղ աշխատանքից, ունի՞ արդյոք կանոնադրությամբ սահմանված երեք տարվա պարտիական ստաժ, ճի՞շտ է արդյոք ցույց տրված պարտտոմսի համարը և այլն։ Մի խոսքով, նա պետք է ստուգի երաշխավորության համապատասխանությունը կանոնադրության պահանջներին։

Եթե կազմակերպության քարտուղարը գտնում է, որ երաշխավորությունը չի համապատասխանում կանոնադրությանը (ասենք թե համատեղ աշխատանքից լրիվ չի ճանաչում, պարտստաժը չի ներում և այլն), այդպիսի դեպքերում նա չպետք է հաստատի տվյալ երաշխավորությունը տվող կոմունիստի ստորագրությունը։

Երաշխավորություն տվող պարտանդամի ստորագրությունը, նրա պարտիական ստաժի իսկությունը և տոմսի համարը պետք է անպայման հաստատվի այն կազմակերպության քարտուղարի կողմից, որի անդամն է երաշխավորողը. իսկ եթե երաշխավորողը և երաշխավորվողը աշխատում են տարբեր կազմակերպություններում, ապա երաշխավորողի ստորագրությունը պետք է հաստատվի ինչպես պարտկազմակերպության, այնպես էլ քաղկոմ-շրջկոմի քարտուղարի կողմից։

Երբ քարտուղարը համամիտ չի լինում երաշխավորող կոմունիստի տված բնութագրին, միևնույն է, նա պետք է դարձյալ հաստատի կոմունիստի ստորագրությունը, բայց այդ մասին նա կարող է հայտնել իր կարծիքը պարտկազմակերպության ժողովին, ինչպես նաև համապատասխան քաղկոմ-շրջկոմի բյուրոյին։ Դիմումի, ինքնակենսագրության և երաշխավորությունների հետ միասին, նա պետք է կազմակերպությանը ներկայացնի նաև ՍՄԿՊ Կենտկոմի կողմից սահմանված ձևի ընդունելության լրացված անկետա։

*Բացի այս հիշյալ փաստաթղթերից, պարտիայի շարքերն ընդունվողից չպետք է պահանջել այլ տեղեկանքներ, բնութագրեր և փաստաթղթեր, որոնց անհրաժեշտությունը բոլորովին չի զգացվում: Կարևորը այն չէ, թե գործում քանի տեղեկանք և տարբեր թղթեր են հավաքված ընդունվողի մասին, այլ այն, որ պարտկազմակերպությունը լավ ճանաչի պարտիայի շարքերն ընդունվողին ու բազմակողմանիորեն իմանա նրա քաղաքական ու գործնական հատկանիշները, համոզված լինի, որ նա իրոք արժանի է պարտիայի անդամի բարձր կոչմանը: Եթե տվյալ անձի ստուգման համար անհրաժեշտ են լրացուցիչ տեղեկություններ, ապա դրանով պետք է զբաղվի ու համապատասխան հիմնարկներից դրանք պահանջի ինքը՝ սկզբնական պարտիական կազմակերպությունը:*

*Երբ պարտիայի շարքերն ընդունվողը սկզբնական պարտկազմակերպությանն է ներկայացնում բոլոր անհրաժեշտ փաստաթղթերը, քարտուղարը պարտավոր է մանրամասն ստուգել, թե ներկայացված բոլոր փաստաթղթերը ճի՞շտ են լրացված և օրինակա՞ն են: Նրա պարտականությունն է անկետայում լրացնել երաշխավորողների անունը, ազգանունը, հայրանունը, գրել պարտստաժը, պարտտոմսի համարը, ցույց տալ աշխատանքի վայրը, պաշտոնը և նշել այն մասին, թե երաշխավորողը երբվանից է ճանաչում դիմում տվողին:*

*Այդ բոլորից հետո այն պարտիական կազմակերպությունները, որոնք ունեն բյուրո, ընդունելության հարցը նախնական քննության են դնում բյուրոյի նիստում. բյուրոն տալիս է իր կարծիքը, թե արժանի է դիմում տվողը պարտիայի շարքերն ընդունվելու, թե՞ ոչ: Դրանից հետո հարցը ներկայացվում է սկզբնական պարտկազմակերպության ընդհանուր ժողովի քննարկմանը:*

*Այն պարտկազմակերպություններում, որտեղ կան պարտիական կոմիտեներ, և ցեխային պարտկազմակերպություններն օգտվում են սկզբնական պարտկազմակերպության իրավունքներից, ցեխային պարտկազմակերպությունների ընդհանուր ժողովի որոշումը պետք է հաստատվի տվյալ պարտիական կոմիտեի կողմից: Այն ցեխային պարտկազմակերպությունները, որոնք չեն օգտվում սկզբնական պարտիական կազմակերպության իրավունքներից, չեն կարող որոշել ընդունելության հարցը: Բայց նկատի ունենալով այն հանգամանքը, որ տվյալ ցեխի կոմունիստներն ավելի մոտիկից են ճանաչում իրենց ցեխից պարտիայի մեջ ընդունվողին, կարող են հարցը քննության դնել ցեխային կազմակերպության ժողովում, իրենց կարծիքը ընդհանուր ժողովին ներկայացնելու նպատակով:*

*Պարտիական այն կազմակերպություններում, որտեղ չկա ցեխային պարտիական կազմակերպություն կամ բյուրո, պարտիայի շարքերն ընդունվողի դիմումը պետք է քննության առնել կազմակերպության ընդհանուր ժողովում: Հարցի քննարկման ժամանակ պարտադիր չէ, որ երաշխավորողները ներկա լինեն պարտիական կազմակերպության ժողովին: Պարտիական ժողովներում պետք է քննության առնել բոլոր դիմումները, նույնիսկ այն դիմումները, որոնց մասին ցեխային պարտկազմակերպությունը և պարտբյուրոն տվել են բացասական կարծիք: Ինչպես հայտնի է, համաձայն պարտիայի Կանոնադրության, պարտիայի շարքերն ընդունվելու հարցը քննության է առնվում ու որոշում է ընդունվում պարտիական սկզբնական կազ-*



*մակերպության ընդհանուր ժողովի կողմից, որի որոշումը ուժի մեջ է մտնում պարտիայի քաղկոմ-շրջկոմի հաստատելուց հետո: Բայց եթե պարտկազմակերպության ժողովը որոշում է մերժել այս կամ այն քաղաքացու դիմումը պարտիայի շարքերն ընդունվելու մասին, ապա դա համարվում է վերջնական և ընդունելության գործը այլևս չի ներկայացվում քաղաքային կամ շրջանային կոմիտե:*

*Պարտիայի շարքերի ընդունելությունը կարելի է կատարել ինչպես դռնփակ, այնպես էլ դռնբաց պարտիական ժողովներում: Դռնբաց պարտիական ժողովների դերը չափազանց մեծ է: Դռնբաց ժողովների հրավիրումը առավել կարևոր է պարտիայի շարքերի ընդունելության հարցերի քննարկման ժամանակ, որտեղ անպարտիականները շատ բանով կարող են օգնել պարտիական կազմակերպությանը՝ ճիշտ ճանաչելու պարտիայի մեջ ընդունվողի արժանիքներն ու թերությունները: Բացի դրանից, դռնբաց ժողովների հրավիրման դեպքում անպարտիականները միաժամանակ հնարավորություն են ստանում ծանոթանալու այն պահանջներին, որ ներկայացվում է պարտիայի շարքերն ընդունվողին: Պարտիական դռնբաց ժողովները ո՛չ միայն կոմունիստների, այլև անպարտիականների դաստիարակման լավագույն դպրոց են, նրանք ամրապնդում են կապը մասսաների հետ, նպաստում նրանց քաղաքական և աշխատանքային ակտիվության բարձրացմանը, պարտիայի առաջադրած խնդիրների անշեղ իրագործմանը, ուստի ցանկալի է, որ ընդունելության հարցերը քննարկվեն դռնբաց ժողովներում, ինչպես այդ անում են շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ:*

*Քննարկելով պարտիայի շարքերի ընդունելության հարցը՝ կոմունիստները պետք է բազմակողմանիորեն ծանոթանան դիմում տվողի հետ: Պարտիական կազմակերպության ժողովում պարտիայի շարքերն ընդունվողի մասին մանրամասն կերպով զեկուցում է պարտկազմակերպության քարտուղարը կամ բյուրոյի անդամներից որևէ մեկը: Հարցի նման քննարկումը հնարավորություն է տալիս յուրաքանչյուր կոմունիստի կազմելու իր անձնական կարծիքը տվյալ անձնավորության մասին: Որպեսզի կոմունիստները կարողանան բազմակողմանիորեն ծանոթանալ պարտիայի մեջ ընդունվողի քաղաքական և գործնական հատկանիշների հետ, կարող են հարցեր տալ, ելույթների միջոցով ասել իրենց խոսքը և անել համապատասխան առաջարկություններ:*

*Սկզբնական պարտկազմակերպության ժողովի արձանագրության մեջ, բացի որոշման բովանդակությունից, պետք է մտցնել նաև ռոլոր ելույթ ունեցողների առաջարկությունները: Սակայն ժողովի որոշման քաղվածքը հանել և կցել ընդունելության գործին՝ պարտադիր չէ, քանի որ որոշման բովանդակությունը անկետայում ձևակերպվում է: Քաղվածք կարելի է հանել միայն անհրաժեշտության դեպքում:*

*Ժողովի որոշումից հետո պարտկազմակերպության քարտուղարը պարտավոր է անկետայում գրանցել ժողովի որոշման բովանդակությունը, դնել ամսաթիվը և 3—4 օրվա ընթացքում այն ներկայացնել պարտիայի քաղաքային կամ շրջանային կոմիտե: Նախքան բյուրոյի նիստում հարցի քննարկելը, շրջկոմի քարտուղարը նախնական զրույց է ունենում դիմում տվողի հետ, որոշում նրա սոց․ դրությունը և ապա հարցը ներկայացնում բյուրոյի նիստի քննարկմանը: Դիմում տվողի և կազմակերպության քարտուղարի*

*մասնակցությունը բյուրոյի նիստին պարտադիր է։ Որպես կանոն շրջանային
քաղաքային կոմիտեի բյուրոյի նիստում պարտիայի շարքերն ընդունվողի
մասին պետք է զեկուցի պարտկազմակերպության քարտուղարը։*

*Կոմունիստի պարտիական ստաժը հաշվվում է պարտկազմակերպության
ժողովի որոշման օրվանից, ուստի պարտիական բոլոր փաստաթղթերի
«ՍՄԿՊ-ի շարքերն անցնելու ժամանակը» սյունակում պետք է ցույց տալ
ընդունման ամիսը, տարեթիվը, գրել այն պարտիական օրգանի անունը, որի
կողմից հաստատվել է կազմակերպության որոշումը ընդունելության մասին։*

*Պարտիական փաստաթղթերը, համաձայն «Պարտիական տոմսերի և
թեկնածուական քարտերի հաշվառման և հանձնման մասին» նոր հրահանգի,
որպես կանոն ստորագրվում է և պարտտոմսը կամ թեկնածուական քարտը
հանձնվում է ՍՄԿՊ շարքերն ընդունվածին քաղկոմ-շրջկոմների առաջին
կամ, նրա բացակայության դեպքում, երկրորդ քարտուղարի կողմից։*

*Նրանց ստորագրությունների նմուշները այլևս չի պահանջվում ուղարկել
վերադաս օրգաններին հաստատելու համար։ Նրանք պարտիական փաստա-
թղթերը ստորագրելու իրավունք են ստանում հենց Կենտկոմի բյուրոյի հաս-
տատումից անմիջապես հետո։*

*Համաձայն գործող հրահանգի, պարտիայի անդամության թեկնածունե-
րի համար, նախքան նրանց պարտիական փաստաթղթերի ձևակերպումը,
լրացվում էր ռեգիստրացիոն բլանկ՝ բլանկը կազմողի ստորագրությամբ,
որից հետո այն ստուգվում էր քաղկոմ-շրջկոմի բյուրոյի որևիցէ անդամի
կողմից ու ապա առաջին կամ, նրա բացակայության դեպքում, երկրորդ
քարտուղարի եզրակացությամբ լրացվում էր պարտիական փաստաթղթերի
լրիվ կոմպլեկտը։*

*Ի տարբերություն այդ հրահանգի այս պահանջի, համաձայն ՍՄԿՊ
Կենտկոմի նոր ցուցումի, պարտիայի անդամության թեկնածուների համար
այլևս չի պահանջվում նախօրոք, պարտիական փաստաթղթերը ձևակերպե-
լուց առաջ, կազմել ռեգիստրացիոն բլանկ, նկատի ունենալով, որ թեկնա-
ծուական ռեգիստրացիոն բլանկի գործածության ժամկետը որոշ ժամանակից
հետո անցնում է։ Այսինքն՝ այն ժամանակ, երբ նա պարտիայի անդամու-
թյան թեկնածությունից ընդունվում է անդամ, նրա համար կազմվում է
անդամակցական ռեգիստրացիոն բլանկ, որը և մտնում է գործածության
մեջ, իսկ թեկնածուական ռեգիստրացիոն բլանկը հենց այդ պահից կորց-
նում է իր ուժը և հանվում է գործածությունից։*

*Եթե նախկինում ՍՄԿՊ Կենտկոմ էր ներկայացվում պարտիայի թեկնա-
ծուի հաշվետու քարտը և ռեգիստրացիոն բլանկը, ապա այժմ պահանջվում
է ՍՄԿՊ Կենտկոմ ներկայացնել միմիայն նրա հաշվետու քարտը։*

*Պարտիական փաստաթղթերի ձևակերպման անմիջական հիմքը եթե
մինչև հիմա հանդիսանում էր ռեգիստրացիոն բլանկում քաղկոմ-շրջկոմի
քարտուղարի տված եզրակացությունը, ապա այսուհետև հիմք պետք է լինի
ՍՄԿՊ անդամության թեկնածուի ընդունելության անկետան։ Անկետայի
«ՍՄԿՊ քաղկոմ-շրջկոմի որոշումը ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունե-
լու մասին» հարցադրման պատասխանը հենց հիմք կծառայի պարտիական
կոմպլեկտը ձևակերպելու համար։*

*Դրա համար էլ պահանջվում է, որպեսզի ընդունելության անկետայի
այս սյունակում ցույց տրվեն համապատասխան քաղկոմ-շրջկոմի բյուրոյի*



*նիստի արձանագրության համարը, ժամանակը և ՍՄԿՊ անդամության թեկ-
նածու ընդունելու մասին բյուրոյի որոշման բովանդակությունը։ Ընդունելու-
թյան անկետայի այդ գրանցումը պետք է ստորագրված լինի քարտուղարի
կողմից և հաստատված լինի տվյալ քաղկոմ-շրջկոմի կնիքով։ ՍՄԿՊ անդա-
մության թեկնածուի հաշվառման և հաշվետու քարտերի «հանձնման հիմքը»
բաժինը ևս այսուհետև պետք է լրացվի համաձայն ընդունելության անկե-
տայի վերոհիշյալ ձևակերպման։*

*Պարտիական փաստաթղթերի ձևակերպումից ու հանձնումից հետո,
ՍՄԿՊ անդամության թեկնածուի ընդունելության անկետայի վրա պետք է
ցույց տալ հանձնված թեկնածուական քարտի համարը։*

*Պարտիայի անդամության թեկնածուի համար ռեգիստրացիոն բլանկի
ձևակերպման դադարեցումը քաղկոմ-շրջկոմների հաշվառման սեկտորների,
կազմբաժինների, հրահանգիչների վրա հատուկ պարտականություն է դնում՝
ավելի ուշադիր լինել ու միանգամայն ճիշտ կազմել ՍՄԿՊ անդամության
թեկնածու ընդունվողների գործերը։*

*Առանձնապես հատուկ զգուշությամբ պետք է լրացվեն ընդունելության
անկետաները։ Ընդունելության անկետաներում ընդգրկված բոլոր հարցերին
պետք է տրվեն ճիշտ, հակիրճ, կոնկրետ պատասխաններ։ Չպետք է թույլա-
տրվեն ջնջումներ, ուղղումներ, բառերի անթույլատրելի կրճատումներ և
այլն։ Անկետայում ընդգրկվող հարցերի պատասխանները պետք է լրիվ
համընկնեն ինքնակենսագրության և գործում եղած մյուս բոլոր փաստաթղ-
թերի մեջ եղած տվյալներին։ Անկետային հարցերի բոլոր բացասական պա-
տասխանները պետք է լրացնել բառերով, օրինակ, «չեմ մասնակցել», «չեմ
ծառայել», «չեմ ենթարկվել», «չեմ եղել» և այլն։*

*Եթե ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվողը չունի անհրաժեշտ կըր-
թություն կամ չունի լավ ձեռագիր և չի կարողանում լրացնել անկետան,
ապա այդ դեպքում ընդունելության անկետան կարող է լրացվել նաև ուրիշի
կողմից, բայց այն պարտադիր կարգով պետք է ստորագրվի ՍՄԿՊ անդամու-
թյան թեկնածու ընդունվողի կողմից։*

*Այն բոլոր դեպքերում, երբ պարտիական կոմպլեկտի մեջ մտնող որևիցէ
փաստաթղթում թույլ է տրվում սխալ ձևակերպում, ջնջում կամ ուղղում,
ապա ամբողջ կոմպլեկտը պետք է չեղյալ համարել և նորը ձևակերպել։ Ան-
թույլատրելի է սխալ ձևակերպումներով, ուղղումներով, անընթեռնելի կնի-
քով, դեֆեկտավոր պարտիական փաստաթղթեր կոմունիստներին հանձնելը։*

Ա. ԶԱԼԻՆՅԱՆ

## ՃՇՏՈՐԵՆ ՎԱՐԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

*Պարտիական բյուջեն հիմնականում գոյանում է պարտիական անդամա-
վճարների մուտքից և թերթերի, ամսագրերի ու գրականության պարտիական
հրատարակությունից ստացվող եկամուտներից։ Պարտիական բյուջեի միջոց-
ները ծախսվում են պարտիական օրգանների պահպանման, պարտիական
պրոպագանդայի և ագիտացիայի, նոր շինարարության և այլ միջոցառումների
համար։ Պարտիական վերադաս օրգանները մեր առաջ միշտ խնդիր են դնում
սիստեմատիկաբար բարձրացնել պարտիական բյուջեի եկամտաբեր մասը՝ ի
հաշիվ անդամավճարների գանձման աշխատանքները լավացնելու, պարտիա-*

կան օրգանների հրատարակչական գործունեության ընդարձակման, ինչպես նաև ի հաշիվ վարչա-տնտեսական ծախսումների կրճատման։ Այդ կապակցությամբ այն պարտիական աշխատողները, որոնք պատասխանատվություն են կրում պարտիական բյուջեն ճիշտ ծախսելու համար, պարտավոր են խստորեն պահպանել ֆինանսական կարգապահությունը, թույլ չտալ խախտումներ և գերածախսեր, օրինակ ծառայել շրջանի, քաղաքի և ռեսպուբլիկայի մյուս կազմակերպությունների համար։

Մեր ռեսպուբլիկայի պարտիական օրգանների մեծ մասը խիստ հետևում է գոյություն ունեցող կանոններին և ճիշտ է կատարում պարտիական բյուջեի միջոցների ծախսումները։ Այդպիսիներից են՝ Բասարգեչարի, Կալինինոյի, Հոկտեմբերյանի, Շամշադինի և էջմիածնի պարտիայի շրջկոմները։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան այնպիսի պարտիական օրգաններ, որոնք կոպիտ կերպով խախտում են ֆինանսական կարգապահությունը, սիստեմատիկաբար թույլ տալով առանձնացված միջոցների գերածախս՝ պարտիական բյուջեի առանձին հոդվածների գծով։ Նրանք ներկայացնում են ոչ ճիշտ հաշվետվություններ, անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում առանձնացված միջոցների ճիշտ ծախսման և գույքի պահպանման նկատմամբ։

Պարտիական անդամավճարները լրիվ և ժամանակին մուծելու հարցում մեր պարտկազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել։ Այդ են ցույց տալիս տարեկան հանրագումարային թվերը։ Այսպես, օրինակ, պարտիական անդամավճարների մուտքի պլանը 1957 թվականին կատարված է 106,2 տոկոսով, իսկ ընթացիկ տարվա ինն ամսվա ընթացքում՝ 98,5 տոկոսով։ Սակայն, եթե ըստ ամիսների վերլուծենք տարվա ընթացքում անդամավճարների մուտքը կազմակերպություններում, ապա պարզվում է, որ դեռևս քիչ չեն այնպիսի պարտիական կազմակերպությունները, որոնք հարկ եղած նշանակությունը չեն տալիս անդամավճարների գանձման ճիշտ դրվածքին և բավարար ուշադրություն չեն հատկացնում աշխատանքի այդ բնագավառի վրա։ Օրինակ, Երևան քաղաքի Կիրովյան, 26 կոմիսարների, Սպանդարյան շրջանների, Ալավերդու, Ղափանի, Ազիզբեկովի, ինչպես և Կիրովական քաղաքի պարտիական կազմակերպություններում, որպես կանոն, պարտիականների 10—26 տոկոսը ժամանակին չեն մուծում ամենամսյա անդամավճարները։

Առանձին կոմունիստներ մոռանալով պարտիայի կանոնադրությունը և իրենց պարտականությունները՝ 3-ից մինչև 6 ամսվա անդամավճար չեն մուծում։ Դրանցից են՝ Ա. Գրիգորյանը, Ս. Քոչարյանը, Մ. Մարգարյանը՝ Կիրովականի մորթու-մուշտակի ֆաբրիկայի կազմակերպությունից, Մ. Շահբազյանը՝ գորգամանածագործական արտելի պարտկազմակերպությունից։

Ոչ բոլոր սկզբնական պարտկազմակերպություններում է պահպանվում պարտիայի անդամներից և թեկնածուներից հավաքված անդամավճարները խնայողական դրամարկղները հանձնելու մասին սահմանված կարգը։ Սպիտակի, Աղինի, Կրասնոսելսկի, Վեդու, Աշտարակի շրջանների մի քանի պարտիական կազմակերպություններ գանձած անդամավճարները 3—4 ամիս ուշացումով են հանձնում դրամարկղ, այն էլ ոչ ամբողջ գումարը։ Կան առանձին պարտիական կազմակերպությունների քարտուղարներ, որոնք խախտում են անդամավճարների գանձման սահմանված կարգը։ Օրինակ, Կիրովականի նավթի բազայի սկզբնական պարտկազմակերպության քարտուղար Բարսեղյա-



նը կոմունիստներից երկու ամիս անդամավճար չէր գանձել և վերջում նրանց փոխարեն ամբողջ գումարը մուծել էր իր միջոցներից, որպեսզի ժամանակին հաշվետվություն ներկայացներ պարտիայի քաղկոմ։ Նման փաստեր կան նաև կոլտնտեսային մի քանի պարտիական կազմակերպություններում։

Հայտնի են դեպքեր, երբ որոշ կոմունիստներ անդամավճար են մուծում ոչ իրենց ամբողջ վաստակից։ Այստեղ, իհարկե, պետք է հաշվի առնել, որ այնքան կարևոր չէ գործի դրամական կողմը, որքան կոմունիստին ազնվության ոգով դաստիարակելը։ Այդպիսի դեպքեր եղել են Արթիկի, Նոր-Բայազետի, Թալինի, Սպիտակի, Աղինի պարտիայի շրջկոմների պարտկազմակերպություններում և պարտիայի Կիրովականի քաղկոմում։

Պարտիական անդամավճարները ժամանակին չմուծող կազմակերպություններին և պարտիականներին կարելի է հիշեցնել Մ. Կալինինի այդ առթիվ ասած խոսքերը. «Իհարկե, կարելի է պարզապես հայհոյել մարդկանց, ցույց տալ, որ նրանք անկարգապահ, վատ պարտիականներ են և այլն։ Բայց այդ նույն հարցը կարելի է դնել և սկզբունքորեն։ Մարդկանց ասել. «Դուք ինքներդ հասկանում եք, որ եթե երկարաձգեք գանձումները պարտիայի մեջ մեկ կամ երկու ամիս, պարտիայի համար այդ էական նշանակություն ունենալ չի կարող, դրանից նրա դրամարկղը չի տուժի։ Մեր պարտիան հիմա աղքատ պարտիա չէ։ Եվ մենք ձեզ հետ այդ առթիվ խոսում ենք ոչ նրա համար, որ ձեր գանձումների ուշացման պատճառով մենք չկարողացանք իր ժամանակին ուղարկել պարտիական հաշվետվություն։ Բանը դրանում չէ։ Այլ բանն այն է, որ եթե դուք պարտիական անդամավճարները ժամանակին չեք մուծում, ապա այդ նշանակում է, որ դուք չեք մտածում պարտիայի մասին, որ դուք պարտիական պարտականություններին վերաբերվում եք թեքներդ իջեցրած։ Ով պարտիական պարտականություններին, այն էլ դեռ այնպիսի պարզ, խիստ կազմակերպական պարտականության, ինչպիսին պարտիական անդամավճարների մուծումն է, վերաբերվում է այդ ձևով, նշանակում է նա խոր պարտիական չէ։ Չէ՞ որ պարտիայի մասին մտածողի համար պարտիական անդամավճարներ մուծելը բավականություն է, որովհետև նա դրանով նյութական կապ է հաստատում պարտիայի հետ, կարծես թե նրա հետ շփվում է»... Եթե այդպես մոտենանք գործին, ապա պարտիական անդամավճարների մասին հասարակ հարցը վերածվում է քաղաքականության»։

Այդ խոսքերը խոր և համոզիչ կերպով բացահայտում են անդամավճարները ժամանակին հանձնելու դաստիարակչական մեծ նշանակությունը։ Դա անհրաժեշտ է յուրաքանչյուր պարտիականի, յուրաքանչյուր պարտիական աշխատողի։ Ցավոք սրտի, պարտիայի մի քանի շրջկոմներ իրենք են խախտում այդ կարգը՝ անդամավճարների հավաքման վիճակի մասին Կենտկոմ ներկայացնելով ոչ լիարժեք հաշվետվություններ։ Ահա դրանցից մի քանիսը. ընթացիկ տարվա հուլիս ամսին պարտիայի Սպիտակի շրջկոմը 53 սկզբնական պարտկազմակերպություններից միայն 29-ից է հաշվետվություն հավաքել, բայց համարեցնելով թվերը, Կենտկոմ է ներկայացրել հաշվետվություն շրջանի բոլոր կազմակերպությունների համար։ Այդպիսի ոչ ճիշտ հաշվետվությունների դեպքեր են նկատվել նաև պարտիայի Թալինի և Վեդու շրջկոմների կողմից։ Այդ թերությունները և խախտումները զգալիորեն կպակասեին, եթե պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները մեծ ուշադրություն դարձ-

*ների անդամավճարների գանձման վրա և այն չհամարեին տեխնիկական աշխատանք։*

*Պարտիական բյուջեի հաշվին մեզ մոտ հրատարակվում են «Սովետական Հայաստան» թերթը և «Ոզնի» ամսագիրը։ Նրանց հրատարակությունից ստացվող բոլոր շահույթները որպես եկամուտ մտնում են պարտիական բյուջե։ Այժմ, երբ խիստ իջել է «Ոզնի» ամսագրի տիրաժը, այն սկսել է աշխատել վնասով, դրանով իսկ իջեցնելով պարտիական բյուջեի եկամտի մասը։ Անհրաժեշտ է մտածել «Ոզնի» ամսագրի տիրաժի ավելացման մասին։*

*Ինչպես ասվեց վերևում, պարտիայի մի քանի շրջկոմներ պարտիական բյուջեի միջոցների ծախսման ժամանակ թույլ են տալիս առանձին հոդվածների կոպիտ խախտումներ։*

*Պարտիայի շրջկոմների և քաղկոմների որոշ քարտուղարներ թույլ տըրված գերածախսերը ծածկում են այլ հոդվածներով նախատեսված ծախսերի հաշվին, որը միանգամայն անթույլատրելի է. պարտիայի այդպիսի շրջկոմներից են՝ Աղինի, Ապարանի, Արթիկի, Ղուկասյանի, Սևանի, Սիսիանի, Վեդու, Թալինի, Մարտունու, Նոյեմբերյանի, Երևանի Սպանդարյան, Լենինյան, Շահումյան շրջկոմները։ Օրինակ, պարտիայի Սևանի շրջկոմը տրանսպորտի պահպանման և վառելիքի ձեռքբերման համար նախատեսված գումարից ավելի է ծախսել և թույլ տված գերածախսը ծածկել է ինվենտարի ձեռքբերման համար տրված գումարից։ Պարտիայի Սիսիանի շրջկոմը տրանսպորտի պահպանման համար կատարված գերածախսը ծածկել է շենքի վերանորոգման համար տրված գումարի հաշվին։ Պարտիայի Նոյեմբերյանի, Ախտայի, Ապարանի, Արթիկի, Թալինի շրջկոմները փոստ-հեռագրային միջոցների գերածախսը, որպես կանոն, փոխանցում են շենքերի ընթացիկ վերանորոգման համար հատկացված միջոցներից։ Պարտիայի Ղուկասյանի շրջկոմը ավելի հեռու է գնացել. 1957 թվականի վերջին թաքցնելով վառելիքի գծով եղած փաստական ծախսը, մնացած միջոցները փոխանցել է շրջառմիությանը և 1958 թվականի հունվարին ցույց չտալով դեբիտորը, գումարը ետ է ստացել։*

*Անթույլատրելի երևույթներ կան նաև ինվենտարի և գրականության հաշվառման ու պահպանման գործում։ Մի քանի գրադարաններում անբավարար է գրականության հաշվառումը, որի հետևանքով շատ գրքեր են կորչում։ Պարտիայի Արտաշատի շրջկոմում վերջին տարիներին երեք անգամ փոխվել է գրադարանային աշխատողը, ընդ որում այդ տեղի է ունեցել առանց գրքային ֆոնդի ստուգման, առանց ընդունման ու հանձնման համապատասխան ակտ կազմելու, որի հետևանքով մինչև այսօր այդ գրադարանում պակասում է ավելի քան չորս հազար ռուբլու գրականություն։*

*Վերջին երկու տարվա ընթացքում ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումով պարտօրգանների շենքերի կապիտալ վերանորոգման և ինվենտարի ձեռքբերման համար նախատեսված հատկացումները խիստ կրճատված են և ազատված միջոցները գործադրվում են պարտիական աշխատողների բնակարանային շինարարության համար։ Ուստի անհրաժեշտ է խնայողաբար վերաբերվել ինչպես շենքերի, այնպես էլ ինվենտարի պահպանմանը։ Բայց պարտիայի մի քանի շրջկոմներ, չնայած այն հատուկ ցուցումին, որով արգելվում է պարտիայի շրջկոմների և քաղկոմների ինվենտարը անձնական կարիքների համար օգտագործել, շարունակում են ինվենտարը ժամանակավոր օգտագործման հանձնել ո՛չ միայն պարտիայի շրջկոմների առանձին աշխատողների, այլ նաև բոլորո-*



*վին կողմնակի անձանց։ Այդպիսիներից են՝ պարտիայի Մարտունու, Նոր-Բայազետի, Ստեփանավանի, Նոյեմբերյանի, Ապարանի, Սիսիանի շրջկոմները, Կիրովականի քաղկոմը և այլն։ Ներկայումս առանձին մարդկանց մոտ կա պարտիայի շրջկոմների 50 հազար ռուբլու ինվենտար, և այդ այն ժամանակ, երբ պարտիայի առանձին շրջկոմներ ինվենտարի կարիք ունեն։ Բոլոր պարտիական օրգանները պետք է այս խնդրում անհրաժեշտ կարգ մտցնեն։*

*Մի քանի խոսք պարտիական աշխատողների հանգիստը կազմակերպելու մասին։ Մենք ունենք շատ ուղեգրեր և հնարավորություն պարտիական աշխատողների մի մասին ապահովելու սանատորիայի ուղեգրերով։ Սակայն արձակուրդների կայուն գրաֆիկը չպահպանելը և առանձին աշխատողների՝ նշված ժամկետին արձակուրդ գնալուց հրաժարվելը (հատկապես ձմեռը) դըժվարացնում են աշխատողների հանգիստը լավ կազմակերպելու գործը։ Համարյա բոլոր աշխատողները ցանկանում են արձակուրդ գնալ հուլիս, օգոստոս ամիսներին, որի հետևանքով շատ հաճախ իրոք բուժման կարիք ունեցող որոշ ընկերներ զրկվում են սանատորիական ուղեգրերից։ Պետք է նշել պարտիայի Լենինականի և Կիրովականի քաղկոմների, ինչպես նաև պարտիայի գյուղական շրջկոմների լավ օրինակը, որ նրանց մոտ 1958 թվականին շատ լավ է կազմվել արձակուրդների գրաֆիկը և տարվա ընթացքում բոլոր աշխատողները ժամանակին են արձակուրդ գնացել։ Այդ գործը վատ է կազմակերպված պարտիայի Երևանի քաղաքային շրջկոմներում։ Յուրաքանչյուր պարտիական աշխատող իրավունք ունի և պարտավոր է ամեն տարի հանգըստանալ։ Բայց մեզ մոտ կան այնպիսի աշխատողներ, որոնք իրենց սեփական մեղքով մի քանի տարի արձակուրդ չեն գնում։*

*Պարտիայի շրջկոմներում ֆինանսական գործը ճիշտ վարելու և կոպիտ խախտումներից խուսափելու համար անհրաժեշտ է վերանայել շրջկոմներում հաշվային աշխատողների պաշտոնները վերականգնելու հարցը, նույնիսկ համատեղության կարգով։ Խախտումների դրսևորման և դրանք ժամանակին վերացնելու գործում պարտիայի շրջկոմներին մեծ օգնություն պետք է ցույց տան պարտիայի քաղկոմների և շրջկոմների վերստուգիչ հանձնաժողովները։ Սիստեմատիկ ստուգումները, ստուգման արդյունքների քննարկումը բյուրոյի նիստերում մեծ չափով կօգնեն պարտիայի շրջկոմների ֆինանսա-տնտեսական գործի բարելավմանը։*

Ի. ՊԱՊԻԵՎ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՏԵՂԱՄԱՍԸ

*Պարտիայի Երևանի քաղկոմի քաղաքական լուսավորության տունը պրոպագանդիստական ակտիվի հետ իր երկարամյա գործունեության ընթացքում ձեռք է բերել զգալի փորձ։ Նա իր տրամադրության տակ ունի հսկայական գրքային ֆոնդ, մեթոդական և տեղեկատու շատ նյութեր։ Քաղաքական լուսավորության տան գրադարանը ստանում է 23 անուն թերթ և 61 ամսագիր։ Ամեն օր այստեղ են գալիս պրոպագանդիստներ, ագիտատորներ, պարտիական կազմակերպությունների քարտուղարներ, պարտիայի քաղկոմի և շրջկոմների աշխատողներ, բարձրագույն ուսումնական հաստատությունների դասախոսներ։ Այստեղ նրանց համար կազմակերպվում է անհրաժեշտ տեսական ու մե-*

*թողական օգնություն։ Ընդառաջելով պրոպագանդիստների ու ագիտատորների պահանջներին՝ առանձնացվում է անհրաժեշտ գրականություն՝ ուսումնասիրվող թեմաների, զեկուցումների, ռեֆերատների, ագիտացիոն զրույցների համար։*

*Սակայն սրանով չի ավարտվում աշխատանքը դասախոսների, պրոպագանդիստների և ագիտկոլեկտիվների ղեկավարների հետ։ Երևանի քաղկոմի քաղաքական լուսավորության տունը կենսագործելով ՍՄԿՊ ԿԿ-ի ցուցումները՝ պրոպագանդիստական աշխատանքը կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ շաղկապելու մասին, նրանց համար կազմակերպում է նաև դասախոսությունների ցիկլ՝ Երևան քաղաքի զարգացման հեռանկարների, Հայկական ՍՍՌ լեռնահանքային արդյունաբերության, էներգետիկ ռեսուրսների ու նրանց օգտագործման և այլ հարցերի մասին։ Հետաքրքրականն ու օգտակարն այն է, որ այդ զեկուցումների հետ միասին լայնորեն ցուցադրվում են քարտեզներ, մակետներ, դիագրամներ, սխեմաներ և այլ դիտողական նյութեր, որոնք ցույց են տալիս հնգամյակի ընթացքում արդյունաբերության նվաճումները և նրա զարգացման հեռանկարները մոտակա տարիներում։*

*Կասկած չի կարող լինել, որ եթե պրոպագանդիստները և ագիտատորները խմբակների պարապմունքների և ագիտացիոն զրույցների ժամանակ խոսեն տեղական կյանքից վերցրած փաստերով, ապա դրանով նրանք կնպաստեն ունկնդիրների քաղաքական ու արտադրական ակտիվության բարձրացմանը։*

*Քաղաքական լուսավորության տան աշխատանքում որոշակի տեղ է գրավում ցուցահանդեսների կազմակերպումը նվիրված առանձին խոշոր իրադարձություններին, Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության պատմության ու կյանքի հոբելյանական տարեթվերին։ Վերջին տարիներս կազմակերպվել են ցուցահանդեսներ՝ նվիրված Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակին, առաջին ռուսական ռևոլյուցիայի 50-ամյակին և մի շարք այլ ցուցահանդեսներ՝ նվիրված ժողովրդական դեմոկրատիայի երկրներին։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակին նվիրված ցուցահանդեսը օգնեց պրոպագանդիստական ակտիվին՝ հավաքելու և ճշգրտելու Երևան քաղաքի, ռեսպուբլիկայի և ՍՍՌ Միության կյանքից վերցրած տեղական նյութերը։ Ցուցահանդեսում ակնառու կերպով ցույց տրվեց, թե ինչպես Երևան քաղաքը Սովետական իշխանության տարիներին աճեց ու դարձավ Սովետական Միության խոշոր արդյունաբերական-կուլտուրական կենտրոններից մեկը, թե ինչքան ձեռնարկություններ, հիվանդանոցներ, դպրոցներ, տեխնիկումներ, բարձրագույն ուսումնական հաստատություններ են կառուցված Սովետական իշխանության տարիներին, թե ինչքան է ընդարձակվել առևտրական և կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ցանցը և այլն։ Վերջերս քաղաքական լուսավորության տունը պատրաստեց ցուցահանդես՝ նվիրված Բաքվի 26 կոմիսարների չարանենգ գնդակահարման 40-ամյակին, Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության ականավոր գործիչ Ստեփան Շահումյանի ծննդյան 80-ամյակին։*

*Քաղաքական լուսավորության տունը պատրաստվում է հրատարակել ՍՄԿՊ ԿԿ-ի Մայիսյան պլենումի որոշումներին նվիրված պլակատների մի սերիա։ Այդ պլակատները պարտիայի Երևանի քաղկոմն ուղարկելու է քաղաքի բոլոր շրջաններին, ձեռնարկություններին, հիմնարկություններին, ուսում-*



*նական հաստատություններին, ինչպես նաև կուլտուր-լուսավորական օջախներին։*

*Ստ. Շահումյանի անվան քաղաքական լուսավորական տան աշխատանքներում այս տարի որոշակի տեղ գրավեց բանավոր ամսագրերի և բազմազան թեմատիկայով հարց-պատասխանների երեկոների կազմակերպումը խոշոր սկզբնական պարտիական կազմակերպություններում, ինչպես նաև Ջեյթուն, Նորք, Զարբախ ավաններում, որտեղ զեկուցումներով հանդես եկան և հարցերին պատասխանեցին Երևանի քաղկոմի քարտուղարներ՝ Հ. Բաղդասարյանը, Գ. Արզումանյանը, Ս. Ոսկանյանը, աշխատավորների դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ Գ. Փահլևանյանը, Հայկ. ՍՍՌ Առևտրի մինիստր Ա. Փիրուզյանը, գրողներ՝ Գ. Սարյանը, Ս. Խանզադյանը, կոմպոզիտորներ՝ Վ. Տիգրանյանը, Վ. Կոտոյանը և շատ ուրիշներ։*

*Պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի որոշ փորձ են կուտակել նաև պարտիայի Երևանի շրջկոմների քաղաքական լուսավորության կաբինետները։ Ագիտատորներին օգնություն կազմակերպելու գործում օրինակ կարող է ծառայել 26 կոմիսարների անվան շրջանի քաղաքական լուսավորության կաբինետը։ Այստեղ արդեն երկրորդ տարին է, ինչ օրինակելիորեն աշխատում է ագիտատորների դպրոցը, որտեղ զեկուցումներ են տրվում Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի, շրջանի, քաղաքի, ռեսպուբլիկայի կյանքից վերցրած թեմաների շուրջը, ինչպես նաև ուսումնասիրվում է ագիտացիոն զրույցներ անցկացնելու մեթոդիկան։ Օրինակ, ընթացիկ տարվա հուլիս ամսում կարդացվել են հետևյալ դասախոսությունները և զեկուցումները՝ «ՍՍՌՄ միջազգային դրության մասին» (զեկուցող լեկտոր Ս. Պապյան), «Երևան քաղաքի զարգացման հեռանկարները» (զեկուցող ճարտարապետ Մ. Մազմանյան), «ՍՄԿՊ ԿԿ-ի Մայիսյան պլենումը և Հայկ. ՍՍՌ քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարները» (զեկուցող Հայկ. ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Օրգանական քիմիայի ինստիտուտի դիրեկտոր Ա. Գասպարյան)։ Դասախոսություններն ու զեկուցումները կազմակերպվում են ամեն շաբաթ, երկուշաբթի օրերը։*

*Պարտիայի Ստալինյան շրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետը խելացիորեն կազմակերպեց աշխատանքը շրջանի պարտիական-տնտեսական ակտիվի հետ։ 1957/58 ուսումնական տարվա ընթացքում շրջկոմին կից գործել է քիմիական, մեքենաշինական, էլեկտրատեխնիկական, թեթև արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող 8 սեմինար։ Սեմինարների աշխատանքում ներգրավված էին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, գլխավոր ինժեներները, մեխանիկները, պարտիական կազմակերպությունների քարտուղարները և ուրիշներ։*

*Քիմիական արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարում մասնակցում էր ավելի քան 60 մարդ։ Անցյալ ուսումնական տարում սեմինարներում լսվել ու քննարկվել են հետևյալ հարցերը՝ «Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության զարգացման խնդիրներն ու հեռանկարները» (սեմինարի ղեկավար ռեսպուբլիկայի ժողտնտխորհի քիմիական արդյունաբերության վարչության պետի տեղակալ Է. Հակոբյան), «Արտադրական պրոցեսների ավտոմատացումը քիմիական արդյունաբերության մեջ» (սեմինարի ղեկավար Կիրովի անվան գործարանի վերահսկող-չափիչ պրիբորների*

ցեխի պետ Ա. Դորոգով), «Քիմիական արդյունաբերության արտադրական-տնտեսական գործունեության պլանավորումը» (սեմինարի ղեկավար Մինիստրների Սովետին կից Սովետական վերահսկողության հանձնաժողովի արդյունաբերության բաժնի վարիչ Կ. Պապյան)։ Սեմինարները կազմակերպվել են հետևյալ սկզբունքով. սկզբում սեմինարի ղեկավարը կարդում էր ներածական դասախոսություն նախատեսված թեմայի շուրջը և տալիս էր այդ կապակցությամբ անհրաժեշտ գրականություն. իսկ հետո, երկու շաբաթ անց, ունկնդիրները հավաքվում էին այն քննարկելու համար։ Վերջում սեմինարի ղեկավարը հանրագումարի էր բերում պարապմունքի արդյունքները։

Լենինյան շրջկոմի պարտիական-տնտեսական ակտիվի մշտապես գործող սեմինարում ներգրավված էին մոտ 150 մարդ։ Սեմինարը ղեկավարում էր տնտեսագիտական գիտությունների թեկնածու Դ. Հարությունյանը։ Սեմինարներում ուսումնասիրվել են հետևյալ թեմաները՝ «Ապրանքային արտադրությունը և արժեքի օրենքը սոցիալիզմի օրոք», «Միջին շահույթը և արտադրության գինը», «Տնտեսական հաշվարկ», «Արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը և գինը» և այլն։

Մեծ հետաքրքրությամբ և բարձր մակարդակով էին անցնում սեմինար պարապմունքները. ձեռնարկությունների դիրեկտորները, գլխավոր ինժեներները, արտադրական բաժինների պետերը և մյուսները հանդես գալով խելացի ելույթներով, մեծ աշխուժություն էին մտցնում պարապմունքների մեջ։ «Սոցիալիստական ձեռնարկության ինքնարժեքը և շահույթը» թեմայով ելույթ ունեցավ № 1 հացի գործարանի դիրեկտոր Ս. Այվազյանը։ Նա հանգամանորեն ցույց տվեց, որ ինքնարժեքը արտադրական ձեռնարկության հիմնական ու գլխավոր ցուցանիշներից մեկն է, քանի որ այն սերտորեն կապված է արտադրության տեխնիկական հագեցվածության, աշխատանքի արտադրողականության հիմնական և շրջանառու ֆոնդերի օգտագործման, աշխատանքի կազմակերպման և այլ հարցերի հետ։ Հետաքրքրական էր նաև «Աշխատանքի կազմակերպումը արտադրության պրոցեսում» թեմայով անցկացված սեմինար պարապմունքը։ Սեմինարում տարբեր ձեռնարկությունների արտադրության և ինքնարժեքի իջեցման հետ կապված հարցերի շուրջը զեկուցումներով հանդես եկան շատ ընկերներ։

Կիրովյան շրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետն անցյալ ուսումնական տարում սիստեմատիկ աշխատանք է կատարել պրոպագանդիստների հետ. նրանց համար կազմակերպել է բարձրորակ դասախոսություններ ու զեկուցումներ, սեմինարներ, կոնֆերանսներ, ինչպես նաև պրոպագանդիստական աշխատանքների փորձի փոխանակություն։

Քաղաքական լուսավորության տան ու կաբինետների աշխատանքում որոշակի տեղ է գրավում լեկցիոն պրոպագանդան։ Պարտիայի քաղկոմի և շրջկոմների դասախոսական խմբերի ուժերով սիստեմատիկ կերպով կարդացվում են լեկցիաներ ու զեկուցումներ՝ մարքսիստական-լենինյան թեորիայի ու պարտիայի պատմության առավել ակտուալ թեմաներով։ Վերջին ժամանակներս զգալիորեն բարձրացել է կարդացվող դասախոսությունների որակը, ընդարձակվել է դասախոսությունների ու զեկուցումների թեմատիկան։ Լեկցիոն պրոպագանդայի ծանրության կենտրոնը փոխադրվել է անմիջականորեն քաղաքի ձեռնարկությունները, հիմնարկությունները և ուսումնական հաստատությունները։ Միմիայն պարտիական կոմիտեների դասախոսական խմբերի ուժերով՝



1957/58 ուսումնական տարում քաղաքում կարդացվել է ավելի քան երկու հազար դասախոսություն ու զեկուցում։

Քաղկոմի, շրջկոմների, ինչպես նաև Երևան քաղաքի առանձին սկզբնական պարտիական կազմակերպությունների քաղաքական լուսավորության տան ու կաբինետների աշխատանքներում կան նաև թերություններ։ Հազվադեպ է կազմակերպվում կաբինետների վարիչների միացյալ խորհրդակցություն։ Հաճախ մի կաբինետի աշխատանքի դրական փորձը չի դառնում մյուսների սեփականությունը։ Կաբինետների գրադարաններում գրեթե չի կազմակերպվում նոր գրքերի քննարկում, չի կազմվում մարքսիստական-լենինյան թեորիայի, ինչպես նաև միջազգային կոմունիստական և բանվորական շարժման թեմատիկ նյութերի կատալոգը։

Քաղաքական լուսավորության կաբինետների աշխատանքի փորձի ընդհանրացման համար Երևանի քաղկոմը նշել է մի շարք միջոցառումներ։ Նա-
խատեսված է կաբինետների աշխատողների միացյալ խորհրդակցություննե-
րում կազմակերպել փորձի փոխանակություն, ինչպես նաև ամսվա պլանների
քննարկում, կազմակերպել էքսկուրսիա դեպի Մոսկվա, Լենինգրադ, Կիև,
Խարկով, Ռոստով՝ պարտիական պրոպագանդայի ու ագիտացիայի առաջավոր
փորձը ուսումնասիրելու համար։

Լեկցիոն պրոպագանդայի հետագա բարելավման և ունկնդիրների աճող
պահանջները լիովին բավարարելու համար անհրաժեշտ է դասախոսություն-
ների ու զեկուցումների հետ զուգակցել դոկումենտալ և գեղարվեստական կի-
նոնկարների ցուցադրումներ։ Իսկ այդ բանի համար անհրաժեշտ է պարտիա-
կան կաբինետների լեկտորիումները հարմարեցնել ցուցադրվող կինոֆիլմերին։
Օրինակ, կարդալով զեկուցում Վ. Ի. Լենինի կյանքի ու ռևոլյուցիոն գործունե-
ության մասին, կարելի է ցուցադրել գեղարվեստական և դոկումենտալ կինո-
ֆիլմեր, որոնք կնպաստեն համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդի
կերպարը ավելի խոր ըմբռնելուն։ Կամ թե զեկուցում կարդալով ժողովրդական
դեմոկրատիայի երկրների մասին, կարելի է ցուցադրել խրոնիկալ կինոֆիլմեր,
որոնք ցույց են տալիս նրանց հաջողությունները սոցիալիզմի շինարարության
բնագավառում։ Լեկցիոն պրոպագանդան կարելի է զուգակցել նաև ցուցա-
հանդեսներ հաճախելու, էքսկուրսիաներ կազմակերպելու և ուրիշ ձեռնար-
կումների հետ։ Քաղաքական աշխատանքներում որքան շատ է բազմազանու-
թյունը, այնքան մեծ է հետաքրքրությունը նրա նկատմամբ։ Քաղաքական
պրոպագանդայի ձևերի ու մեթոդների շաբլոնը մեծ չափով կարող է վնասել
գործին։

Երևանի քաղաքական լուսավորության տունը ու կաբինետներն զգալի
աշխատանք կատարեցին պարտիական լուսավորության ցանցի նոր ուսումնա-
կան տարվա նախապատրաստման գործում։ Հայաստանի Կոմպարտիայի
Կենտկոմի կողմից Կիրովականում կազմակերպված պրոպագանդիստներ
պատրաստելու միամսյա դասընթացներում սովորեցին քաղաքի 40 կոմու-
նիստներ։ Միամսյա դասընթացներն անցած ոչ մի պրոպագանդիստ չի մնա-
ցել առանց խմբակի կամ սեմինարի։

1958/59 ուսումնական տարում պարտիական լուսավորության ցանցի աշ-
խատանքների ավելի լավ կազմակերպման և անցկացման նպատակով կազմ-

ված է քաղաքական լուսավորության տան աշխատանքի պլան: Նախատեսված է հետագայում ավելի ուժեղացնել պրոպագանդիստական կադրերին ցույց տըրվող օգնությունը, բարձրացնել նրանց տեսական մակարդակը և մեթոդական պատրաստությունը, ապահովել պարապմունքները ծրագրերով, դիտողական նյութերով, գրականությամբ: Պլանում հատկապես մեծ տեղ է տրված ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի հրավիրման կապակցությամբ տարվող նախապատրաստական աշխատանքներին: Պրոպագանդիստների սեմինարների համար մշակված թեմատիկայով անց են կացվում տեսական սեմինարներ, հրահանգչական-մեթոդական զեկուցումներ: Սեմինարների ղեկավարներին և կոնսուլտանտներին օգնելու համար կազմակերպվել են դասախոսություններ ու զեկուցումներ հետևյալ թեմաներով՝ «Մարքսիստական-լենինյան ուսմունքը սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարական դիկտատուրայի մասին և նրա նշանակությունը ժամանակակից էտապում», «Կոմունիզմի կառուցման մասին լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացումը ՍՄԿՊ XX համագումարի և պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումներում», «Պայքարը ընդդեմ ռևիզիոնիզմի և դոգմատիզմի՝ ժամանակակից էտապում», «Կապիտալիստական երկրների տնտեսական և քաղաքական դրությունը» և այլն:

Երևանի քաղկոմի և շրջկոմների Քաղաքական լուսավորության տունը և կաբինետները ունեն բոլոր հնարավորությունները այսուհետև ավելի ուժեղացնելու իրենց աշխատանքը:

Ջ. ՊԱՊՅԱՆ

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 08940 Պատվեր 2723 Տիրաժ 10000
Տպ. 8 մամուլ, մամուլում 68.840 նիշ: Ստորագրված է տպագրության 25/XI 1958 թ.:
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:

Գինը 2 ռ. 50 կ.